ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
ԱՊՐԻԼ
1961 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Ժողովուրդների բարեկամությունը և նրանց սերտ համերաշխությունը դարերի ընթացքում եղել են բոլոր երկրների աշխատավոր մարդկանց նվիրական երազանքն ու ցանկությունը: Այդ վեհ գաղափարները ժողովուրդն իմաստավորել ու գեղարվեստորեն մարմնավորել է իր երգերում, հեքիաթներում, ժողովրդի հավաքական հանճարն արտահայտող բազմաթիվ էպոսներում: Բոլոր առաջավոր մտածողները, արտահայտելով այդ ցանկությունը, երգել և պրոպագանդել են ժողովուրդների բարեկամությունը:

Պրոլետարիատը, մարդկային հասարակության ամենապրոգրեսիվ ուժը, համամարդկային մեծ գաղափարների և անցյալի կուլտուրական արժեքների օրինական ժառանգորդը, ծնունդ տալով մարքսիզմ-լենինիզմին, խտացնելով նրա մեջ մարդկության վեհ ձգտումները, բոլորովին նոր աստիճանի բարձրացրեց ժողովուրդների բարեկամության գաղափարը, դնելով նրա հիմքում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը: Մարքսիզմ-լենինիզմը ժողովուրդների բարեկամության և համագործակցության կենսատու գաղափարախոսությունն է:

Խոսելով սոցիալիստական հասարակության մասին, բացահայտելով ժողովուրդների փոխհարաբերությունների այն նոր սկզբունքները, որոնք բնորոշ են սոցիալիզմին, Մարքսը գրում էր, որ «Ի հակադրություն հին հասարակության՝ նրա տնտեսական աղքատությամբ և քաղաքական խելացնորությամբ, ծնունդ է առնում նոր հասարակություն, որի միջազգային սկզբունքը կլինի խաղաղությունը, որովհետև ժողովուրդներից յուրաքանչյուրը կունենա միևնույն տիրակալը՝ ա շ խ ա տ ա ն ք ը»:

Վ. Ի. Լենինը, մշակելով միջազգային բանվորական ռևոլյուցիոն շարժման թեորիան և այն գործադրելով պրակտիկայում, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարը զարգացրեց պատմական նոր պայմաններում: Նա ո՛չ միայն տեսականորեն մշակեց ազգային հարցը և պարտիայի ծրագիրն այդ հարցում, այլև բազմազգ ցարական Ռուսաստանի պայմաններում կոփեց Ռուսաստանի պրոլետարիատի ինտերնացիոնալ համերաշխությունը, որն ապահովեց մեր երկրի ժողովուրդների հաղթանակը սոցիալիզմի համար մղվող պայքարում: Վ. Ի. Լենինը հանդիսացավ առաջին սոցիալիստական բազմազգ պետության հիմնադիրը, նրա ազգային քաղաքականության տեսության և պրակտիկայի ոգեշնչողն ու ղեկավարը, մեր Հայրենիքի ժողովուրդների անխախտ բարեկամության մեծ կերտողը:

Բնորոշելով Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ազգային քաղաքականության հիմնական սկզբունքը՝ Վ. Ի. Լենինը գրում էր. «Մենք ազգերի կ ա մ ա վ ո ր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը

ո՛չ մի բռնություն չքույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա»:

Լենինյան այս սկզբունքը լիովին իրականացվել է մեր Հայրենիքում, որը հանդիսանում է ժողովուրդների բարեկամության և փոխադարձ օգնության, ազգային հարցի ճիշտ լուծման փայլուն օրինակ ամբողջ աշխարհի համար: Այդ բարեկամությունը խարսխվում է միասնական նպատակի՝ կոմունիզմի կառուցման և միասնական գաղափարախոսության՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի վրա:

Մեր երկրի ժողովուրդների լենինյան բարեկամությունը, ժողովուրդների փոխադարձ օգնությունը ապահովեցին Սովետական Միության բոլոր ժողովուրդների սոցիալական և ազգային վերածնությունը, նրանց տնտեսության և կուլտուրայի աննախընթաց վերելքն ու ծաղկումը, որը հենց լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության քաղաքականության փայլուն հաղթանակն է:

Ալմա-Աթայում, Ղազախական ՍՍՌ գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, 1961 թվականի մարտի 21-ին արտասանած իր ճառում ընկեր Խրուշչովն ասաց՝ սովետական բոլոր ռեսպուբլիկաների էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկումը լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի ամենավառ արտահայտությունն է:

Սովետական ժողովուրդների բարգավաճումն ապահովելու, նրանց մեծ բարեկամությունն ամրապնդելու գործում անգնահատելի է ռուս մեծ ժողովրդի դերը, որն անշահախնդիր եղբայրական օգնություն է ցույց տալիս բոլոր ժողովուրդներին և գլխավորում է նրանց եղբայրական դաշինքը: Ռուս ժողովրդի հետ միասին Սովետական Միության բոլոր ժողովուրդները հերոսական աշխատանք են կատարում՝ ապահովելու մեր Հայրենիքի հետագա վերելքն ու ծաղկումը: «Մենք կարող ենք հպարտությամբ նշել,— ասում է ընկեր Խրուշչովը,— որ բազմազգ Սովետական Միության յուրաքանչյուր ռեսպուբլիկայի աշխատավորությունն իր ներդրումն է կատարել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում»:

Վերջին տարիների ընթացքում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ձեռնարկած նոր միջոցառումներն օրենսդրության, արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բնագավառներում ազգային ռեսպուբլիկաների իրավունքներն ընդլայնելու ուղղությամբ, ավելի բարձրացրին նրանց դերը տնտեսական-քաղաքական հարցերի լուծման գործում և նպաստեցին ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման և բարոյա-քաղաքական միասնության գործին:

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը մեր երկրի ընդհանուր զարգացման ամեն մի էտապում ավելի ու ավելի է ամրապնդվում, նոր որակ և նոր բովանդակություն ձեռք բերում: Սոցիալիզմի լիակատար հաղթանակը մեր երկրում, կոմունիզմի ծավալուն կառուցումը, միասնական սոցիալիստական էկոնոմիկան, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, մարքսիզմ-լենինիզմի գաղափարական բազան ավելի ու ավելի են ամրապնդում մեր ժողովուրդների անխախտ բարեկամությունը, բարձրացնում այն նոր աստիճանի:



Բացահայտելով սովետական ժողովուրդների բարեկամության սոցիալական հիմքը և էությունը, ընկեր Խրուշչովն ասում է. «Մեր բարեկամությունը աշխատանքի մարդկանց եղբայրական բարեկամությունն է, որոնք ունեն ընդհանուր շահեր, ընդհանուր գործ և ընդհանուր նպատակներ: Մեր բարեկամությունը ոգեշնչում են մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, նա անում ու ամրապնդվում է սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում»:

Ժողովուրդների լենինյան բարեկամության գաղափարների հաղթանակի, մեր երկրում ազգային հարցի լենինյան լուծման փայլուն օրինակ են հանդիսանում Անդրկովկասի եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի փոխհարաբերությունները, նրանց եղբայրական բարեկամությունը, որը լենինյան ավանդների պրակտիկ իրագործումներից մեկն է:

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, որոնց ուսուցանել և կոփել է մեծ Լենինը, տասնամյակների ընթացքում վրացի, ադրբեջանցի և հայ աշխատավորներին դաստիարակել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, համախմբել բուրժուա-նացիոնալիստական պարտիաների՝ մենշևիկների, դաշնակների և մուսավաթականների դեմ մղվող պայքարում, հավատարիմ պահել պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան դրոշին:

Սովետական իշխանության տարիներին ավելի կոփվեց և ամրացավ Անդրկովկասի ժողովուրդների լենինյան բարեկամությունը: Դեռևս 1921 թվականին Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստներին ուղղված նամակում Վ. Ի. Լենինը գրում էր. «Ջերմագին ողջունելով Կովկասի Սովետական ռեսպուբլիկաներին, ես ինձ թույլ եմ տալիս հույս հայտնել, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում»:

Անդրկովկասի աշխատավորները Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անշեղորեն կենսագործեցին մեծ Լենինի այդ պատգամը:

Սովետական ժողովուրդների լենինյան բարեկամությունը դրսևորվում է ամենաբազմազան ձևերով, թափանցում մեր կյանքի բոլոր բնագավառները, աշխատանքային նոր հաջողությունների անսպառ աղբյուր հանդիսանում:

Ժողովուրդների բարեկամության արտահայտություններից է եղբայրական ռեսպուբլիկաների միջև ծավալվող սոցիալիստական մրցությունը: Անդրկովկասի ռեսպուբլիկաների միջև տրադիցիոն դարձած սոցիալիստական մրցությունը տալիս է ժողովուրդների բարեկամության և փոխադարձ օգնության փայլուն նմուշներ: Արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի բնագավառներում դրսևորվում է ժողովուրդների բարեկամության ոգով տոգորված սոցիալիստական մրցության բարերար ուժը:

Կարելի է բերել բազմաթիվ ուսանելի օրինակներ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի արդյունաբերության աշխատողների սոցիալիստական մրցությունից: Կիրովական քաղաքը երկար ժամանակ է արդեն, ինչ սոցիալիստական մրցության մեջ է Վրաստանի և Ադրբեջանի քաղաքների՝ Բաթումիի, Սուխումիի և Սումգաիթի հետ: Եղբայրական այս չորս քաղաքների մրցությունը հիանալի տրադիցիա է դարձել, որը ո՛չ միայն նպաստում է աշխատավոր-

ների բարեկամության ու համագործակցության ամրապնդմանը, այլև պետական պլանների ու առաջադրանքների կատարման և տնտեսական նոր հաջողությունների կարևոր գործոններից մեկն է: Այդ քաղաքները ո՛չ միայն ամբողջապես մրցում են իրար հետ, այլև մրցության մեջ են նրանց առանձին ձեռնարկությունները:

Այս մրցությունը տոգորված է ժողովուրդների անխախտ բարեկամության, փոխադարձ օգնության ոգով: Մրցության և փորձի փոխանակման ընթացքում արտադրության մեջ ներդրվում են նոր մեթոդներ, ցույց է տրվում փոխադարձ օգնություն, կազմակերպվում են չորս քաղաքների առաջավորների հավաքներ, որտեղ քննարկվում են գործնական հարցեր՝ կապված ո՛չ միայն աշխատանքի, այլև կոմունիստական կենցաղի հետ: Այս մրցության ամենակարևոր կողմն ու արժեքն այն է, որ անկախ նրանից թե որ կողմն է շահում այս կամ այն կոնկրետ էտապում, բոլոր դեպքերում հաղթողն ամենից առաջ ժողովուրդների բարեկամությունն է:

Բազմաթիվ հիանալի օրինակներ կարելի է բերել եղբայրական ռեսպուբլիկաների կոլտնտեսային դաշտերի աշխատողների բարեկամական կապերի և փոխադարձ օգնության մասին: Վաղուց արդեն տրադիցիա են դարձել Ադրբեջանական ՍՍՌ Ղազախի շրջանի և Հայկական ՍՍՌ Իջևանի շրջանի կոլտնտեսականների սոցիալիստական մրցությունը, Գորիսի շրջանի և Ադրբեջանի Լաչինի, Կուբաթլիի, Զաբրայիլի շրջանների մրցությունը: Ժողովուրդների բարեկամության լավագույն օրինակ են Հայաստանի Շամշադինի շրջանի և Ադրբեջանի Թաուզի շրջանի կոլտնտեսականների փոխադարձ օգնության բազմազան ձևերը, մասնավորապես բերքահավաքի շրջանում բերքը սեղմ ժամկետում հավաքելու համար: Նույնպիսի կապերով են կապված Հայաստանի և Վրաստանի կոլտնտեսականները:

Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական մրցությունը օգնում է երեք ռեսպուբլիկաների գյուղատնտեսության հետագա զարգացման գործին և ամրապնդում է նրանց անխախտ բարեկամությունը:

Սույն թվականի փետրվարին Թբիլիսիում կայացած Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը, որին մասնակցեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը, Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության մի նոր վառ ցույց էր, բարեկամություն, որն ամրապնդվում է գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար մղվող պայքարում:

Սոցիալիստական մրցության խոր իմաստը, նրա մեծ նշանակությունը փոխադարձ օգնության տեսակետից հիանալի կերպով պարզաբանված է Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցների՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին գրած նամակում, որտեղ ասված է. «Սովետական նորարար մարդը բարեկամներից, եղբայրներից չի թաքցրել և չի կարող թաքցնել գաղտնիքները: Նա միշտ պատրաստ է հաղորդելու իր գիտելիքները, իր փորձը: Թող այսօրվա խորհրդակցությունը լինի Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման, գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական մրցության ամեն կերպ ծավալման, փորձի է՛լ ավելի լայն փոխանակման գրավական»:



Բազմապիսի և խորն են Անդրկովկասի ռեսպուբլիկաների փոխադարձ կուլտուրական կապերը: Ադրբեջանի Մ. Ֆ. Ախունդովի անվան օպերայի և բալետի թատրոնի գաստրոլները Հայաստանում, Գ. Սունդուկյանի անվան հայկական դրամատիկական թատրոնի գաստրոլները Ադրբեջանում և Վրաստանում, կերպարվեստի փոխադարձ ցուցահանդեսները, Անդրկովկասի տրադիցիոն «Երաժշտական գարունները», թատրոնների ռեպերտուարում միմյանց պիեսներ բեմադրելը և այլ միջոցառումներ ժողովուրդների բարեկամական կապերի անսպառ հնարավորությունների վկայությունն են:

Սովետական Միության ժողովրդական արտիստ, ադրբեջանական անվանի դիրիժոր Նիյազին, բնութագրելով այս կապերը, գրում է. «Մենք շարունակում ենք Ալ. Սպենդիարյանի, Պալիաշվիլու և Հաջիբեկովի մեծ գործը, բարձր ենք պահում ժողովուրդների արվեստը և ավելի ենք ամրապնդում Անդրկովկասի ռեսպուբլիկաների կուլտուրական կապերը: Մեր անկեղծ բարեկամությունը լուսավորվում է լենինյան մեծ ազգային քաղաքականությամբ»:

Ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում նշանակալից երևույթ հանդիսացավ Անդրկովկասի ռեսպուբլիկաների գիտական կոնֆերանսը՝ նվիրված ժողովուրդների գրական կապերի և փոխազդեցության կարևոր հարցին, որը տեղի ունեցավ 1960 թվականի մայիսին, Երևանում. Նրա աշխատանքներին մասնակցեցին Մոսկվայի, Լենինգրադի և երկրի այլ քաղաքների գիտական շրջանների ներկայացուցիչները:

Կարևոր իրադարձություն էր 1960 թվականի նոյեմբերին Երևանում կազմակերպված՝ ՍՍՌՄ, Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի Գիտությունների ակադեմիաների համատեղ սեսիան՝ նվիրված Հայաստանում սովետական կարգերի հաստատման քառասնամյակին, մի սեսիա, որտեղ Սովետական Հայաստանի և եղբայրական ռեսպուբլիկաների անցած ուղու գիտական վերլուծման հիման վրա հանրագումարի բերվեցին լենինյան ազգային քաղաքականության փայլուն արդյունքները:

Սովետական Հայաստանը տնտեսական և կուլտուրական բարեկամական դաշինքով և եղբայրական սերտ կապերով է կապված մեր Միության բոլոր ժողովուրդների հետ:

Կիև և Երևան քաղաքների տրադիցիոն սոցիալիստական մրցությունը խորհրդանշում է հայ և ուկրաինական ժողովուրդների բարեկամությունը: 1959 թվականի նոյեմբերին Երևանում Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի կողմից կազմակերպված գիտական սեսիան, որը նվիրված էր հայ և ուկրաինական ժողովուրդների պատմական կապերին և որին մասնակցեցին Ուկրաինայի գիտնականները, երկու ռեսպուբլիկաների բարեկամական կապերի բազմաթիվ օրինակներից մեկն է:

Տրադիցիա են դարձել Հայաստանի բուհական երիտասարդության լայն կապերը մյուս ռեսպուբլիկաների բուհական երիտասարդության հետ:

Արվեստի աշխատողները, ռեսպուբլիկայի գրողները նույնպես մեծ աշխատանք են ծավալում ինչպես իրենց ստեղծագործություններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարները պրոպագանդելու, այնպես էլ Հայաստանի աշխատավորներին եղբայրական ռեսպուբլիկաների կուլտուրային ծանոթացնելու ուղղությամբ:

Ժողովուրդների լենինյան բարեկամությունը մեր երկրում ցայտուն կերպով դրսևորվում է կադրերի պատրաստման կարևոր բնագավառում: Սովե-

տակյան Հայաստանն իր քառասնամյա պատմության ընթացքում բազմաթիվ որակյալ կադրեր է ստացել, որոնք պատրաստվել են Մոսկվայում, Լենինգրադում և Միության այլ կենտրոններում: Իր հերթին Հայաստանը կադրեր է պատրաստում Միության մյուս ռեսպուբլիկաների համար: Մեծ աշխատանք է կատարում, օրինակ, այսօր Երևանի գեղարվեստա-թատերական ինստիտուտը՝ Դաղստանի մի շարք ժողովուրդների համար ազգային գեղարվեստի ասպարեզում աշխատող կադրեր պատրաստելու ուղղությամբ:

Անցյալ տարի մեր բազմազգ Հայրենիքի բոլոր ժողովուրդները նշեցին եղբայրական Սովետական Ադրբեջանի և Ադրբեջանի Կոմունիստական պարտիայի քառասնամյակը: Առաջիկայում նշվելու են Վրացական ՍՍՌ և Վրաստանի Կոմունիստական պարտիայի, Սովետական Հայաստանի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի քառասնամյա հոբելյանները:

Եղբայրական ռեսպուբլիկաների այդ պանծալի տարելիցները Սովետական Միության բոլոր ժողովուրդների և, մասնավորապես, Անդրկովկասի ժողովուրդների լենինյան բարեկամության մի նոր ցույց են:

Մեր բազմազգ Հայրենիքի ժողովուրդների լենինյան բարեկամության կերտողն ու իրականացնողը, մեր երկրի աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակողը, մեր ժողովուրդների անխախտ դաշինքն ապահովողը Սովետական Միության Կոմունիստական մեծ պարտիան է, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն:

Ժողովուրդների բարեկամությունը տասնամյակների ընթացքում կոփվել և ամրապնդվել է բուրժուական նացիոնալիզմի գաղափարախոսության դեմ մղվող անհաշտ պայքարում: Սովետական ամեն մի մարդու սրբազան պարտականությունն է անհանդուրժողական լինել նացիոնալիզմի ռեցիդիվների, ազգային սահմանափակության և ազգային սնապարծության դրսևորումների նկատմամբ, ջանք չխնայել ժողովուրդների բարեկամությունը, նրանց անխախտ դաշինքը ամրապնդելու համար:

«Մեր պարտիան,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— ելնում էր այն բանից, որ իրավահավասար ժողովուրդների կամավոր միության պայմաններում չի կարող տեղ լինել ոչ մեծապետական շովինիզմի, ոչ տեղական նացիոնալիզմի համար, որ միայն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության հիման վրա կարելի է հաջողությամբ լուծել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մեծ խնդիրները»:

Դեպի կոմունիզմ ժողովուրդների շարժումը, դեպի այդ մեծ նպատակը նրանց վսեմ ձգտումը անկասելի է: Այդ շարժումը դարձել է հսկայական, անհաղթելի ուժ, և չկան այնպիսի արգելքներ, որոնք կարողանային խոչընդոտել մարդկության զարգացման այդ մեծ պրոցեսը: Կոմունիզմ կառուցող սովետական մարդկանց վիճակվեց առաջինը Տիեզերք թափանցելու պատիվը: Տիեզերք թափանցած առաջին մարդը սովետական մարդն է, ՍՍՌՄ քաղաքացի, մայոր Յուրի Ալեքսեևիչ Գագարինը: Մեր Հայրենիքի փառապանծ հաղթանակը Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդներին նորանոր սխրանքների է ոգեշնչում կոմունիզմի կառուցման գործում:

Այս տարվա հոկտեմբեր ամսին տեղի է ունենալու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը, որը կմշակի և կընդունի մեր պարտիայի ծրագիրը՝ կոմունիզմի կառուցման ծրագիրը:

Ժողովուրդների լենինյան բարեկամության գաղափարները, որոնք կո-



մունիզմի կառուցման վեհ գործի իրականացման կարևոր գործոնն են, հաղթանակել և իրականացել են մեր երկրում. դրանք հաղթանակում են նաև ամբողջ աշխարհում:

Այսօրվա կոնկրետ պայմաններում ժողովուրդների բարեկամությունն անխզելիորեն առնչվում է մարդկությանը հուզող կարևորագույն խնդիրների հետ: Օր-օրի ավելի է ամրապնդվում ամբողջ աշխարհի աշխատավորների բարեկամությունը և համերաշխությունը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, գաղութային իմպերիալիստական լծից ազատագրվելու և խաղաղությունը պահպանելու գործում:

Միջազգային մասշտաբով ժողովուրդների լենինյան բարեկամության կենդանի մարմնավորումն է միջազգային սոցիալիստական լագերը, որը խարսխված է ժողովուրդների լենինյան բարեկամության և համագործակցության սկզբունքի վրա, որպես նրանց միասնական նպատակի՝ կոմունիզմի կառուցման իրականացման ամենակարևոր պայմաններից և գործոններից մեկը:

Սոցիալիստական լագերի երկրների և ամբողջ աշխարհի բանվորական ռևոլյուցիոն շարժման լենինյան անխախտ բարեկամության և դաշինքի, միջազգային կոմունիստական շարժման կուռ համախմբվածության նոր ապացույցն էր Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի նոյեմբերին կայացած Խորհրդակցությունը, ուր նորից ընդգծվեց, որ բազմազգ սոցիալիստական պետություններում ձևավորվել և ամրապնդվել է բոլոր ազգությունների աշխատավորների անխախտ դաշինքը: Սոցիալիզմի երկրներում մարքս-լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը, ազգությունների իսկական իրավահավասարությունը, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքը ոգեշնչող օրինակ են ազգային կեղեքման դեմ պայքարող ժողովուրդների համար:

Ժողովուրդների բարեկամության լենինյան սկզբունքի վառ արտահայտություններից մեկն է այն հսկայական օգնությունը, որ ցույց են տալիս Սովետական Միությունը և ողջ սոցիալիստական լագերը աշխարհի ճնշված ժողովուրդներին իմպերիալիզմի գաղութային լծից ազատագրելու, նորաստեղծ, անկախ երկրների տնտեսությունը կարգավորելու և կուլտուրական վերելքն ապահովելու գործում:

Ժողովուրդների բարեկամության վառ արտահայտությունն է նաև ժողովուրդների այն համերաշխությունը, որը դրսևորվում է ամբողջ աշխարհում կայուն խաղաղությունն ապահովելու համար մղվող հերոսական պայքարում, նոր պատերազմ սանձազերծելու ուղղությամբ իմպերիալիստների ճիգերը տապալելու գործում:

Ժողովուրդների լենինյան բարեկամության վեհ գաղափարները օր-օրի տիրապետող են դառնում ամբողջ աշխարհում, ամրապնդում են սոցիալիզմի և խաղաղության դիրքերը: «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոչը, որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի խորհրդանիշ, աշխատավորների նորանոր զանգվածներ է համախմբում իր շուրջը: Ժողովուրդների լենինյան բարեկամությունը և նրանց համագործակցությունը սոցիալիզմի և խաղաղության մեծ գործի հաղթանակի գրավականն են:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ ԿՅԱՆՔՈՒՄ

Ա. ԹԵԼՈՒՆՑ

Սովետական ժողովուրդը և ամբողջ առաջադեմ մարդկությունը ամեն տարի նշում է իր հանճարեղ ուսուցիչ ու առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան օրը հավերժ կենդանի ու կենսահաստատ լենինյան ուսմունքի նորանոր հաղթանակների տոնը։ Վ. Ի. Լենինի անունը դարձել է աշխատավոր մարդկության ազատագրական պայքարի, նվիրական ձգտումների ու հաղթանակների, բարձրացող նոր աշխարհի խորհրդանիշը։

Զարգացնելով գիտական կոմունիզմի հանճարեղ հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի անմահ ուսմունքը, Վ. Ի. Լենինը խորապես լուծեց մեր դարաշրջանի առաջ քաշած արմատական հարցերը, նոր աստիճանի բարձրացրեց ստեղծագործական մարքսիզմը, կոմունիզմի կառուցման գիտությունը։ Մարքսիզմ-լենինիզմի հաղթակիր ուսմունքը նոր աշխարհի դրոշն է, կոմունիզմի համար մղվող պայքարի ուղեցույցն ու ծրագիրը, որն իր խորին ճշմարտացիությունն ու կենսականությունն ապացուցել է կյանքի, ռևոլյուցիոն պայքարի, սոցիալիզմի կառուցման բովում։



Ավելի քան 40 տարի առաջ Վ. Ի. Լենինը գրել է. «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմունքների հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (Երկեր, հ. 31, էջ 491)։ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից է սկսվում այն դարաշրջանը, որը կատարվող արմատական փոփոխությունների ու հեղաբեկումների, դասակարգային պայքարի խորության ու սրության, ժողովրդական մասսաների ստեղծագործ դերի բարձրացման տեսակետից իր հավասարը չունի պատմության մեջ։

Հանրագումարի բերելով համաշխարհային ազատագրական պայքարի գլխավոր նվաճումները և բացահայտելով համաշխարհային մասշտաբով կոմունիզմի հաղթանակի հեռանկարները, Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի Նոյեմբերյան խորհրդակցությունը տվեց մեր դարաշրջանի գիտական բնութագիրը, որից ելնում են բոլոր երկրների կոմունիստական պարտիաները՝ մշակելով և կենսագործելով իրենց ստրատեգիական գիծն ու տակտիկան։ «Մեր դարաշրջանը,— ասված է խորհրդակցության Հայտարարության մեջ,— որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն է, որն սկսվեց Հոկտեմբերյան



Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով, հասարակական երկու հակադիր սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական ռևոլյուցիաների և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, սոցիալիզմի ուղին նորանոր ժողովուրդների անցման, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը»։

Պատմության մեջ մեծագույն ռևոլյուցիոն այդ դարաշրջանում այն ամենը, ինչ վեհ է ու նվիրական, զարգացող ու կենսահաստատ, կապված է Վ. Ի. Լենինի՝ ամենամարդկային մարդու անվան հետ։

Վ. Ի. Լենինը գլխավորեց պատմության մեծագույն ռևոլյուցիոն պայքարը, որի մեջ լեռնացել էին աշխատավոր ժողովրդի զայրույթն ու ցասումն ընդդեմ հին աշխարհի, ստեղծագործական եռանդն ու նախաձեռնությունը, որոնք պիտի մարմնանային և մարմնացան նոր հասարակարգի վեհագույն կերտվածքում։ Լենինիզմը հանդիսացավ ժամանակակից պատմության գիտական արտացոլումը, ժողովրդական մասսաների պայքարի ու ստեղծագործության ամփոփումն ու իմաստավորումը։ Երբեք պատմության մեջ ոչ մի հասարակական շարժում չի առաջնորդվել այնպիսի վեհ գաղափարներով, ինչպես միջազգային կոմունիստական շարժումը, և երբեք ոչ մի պայքար չի ունեցել նպատակի այնպիսի պարզություն, հեռանկարի վեհություն, ինչպես ժողովուրդների ազատագրական պայքարը, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարը։ Մարքսիզմ-լենինիզմը դարձել է մեր ժամանակի մեծագույն հոգևոր ուժը, որն իր կենդանի մարմնացումն է գտել աշխատավոր մարդկության համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող նվաճումների մեջ։

Այդ նվաճումներից մեծագույնը համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումն է։ Այն դառնում է մարդկային հասարակության զարգացման որոշիչ գործոնը։ Հենց դա է մեր ժամանակի գլխավոր տարբերիչ գիծը։

Լենինիզմի անհաղթահարելի ուժը նրա ստեղծագործական բնույթի մեջ է։ Այն արտացոլում և իմաստավորում է մեր աչքերի առաջ տեղի ունեցող պատմական պրոցեսը, բացահայտում նրա զարգացման ընթացքն ու տենդենցները, կանխատեսում իրադարձությունների ծավալման ապագան։ Լենինիզմը դարձել է մեր դարաշրջանի հաղթակիր դրոշն այն պատճառով, որ նա մշտապես գտնվում է գործողության մեջ, հարստանում ու զարգանում կոմունիստական ու բանվորական պարտիաների ընդհանուր ջանքերով՝ ժողովուրդների ազատագրական պայքարի, պատմության նոր փորձի ամփոփման հիման վրա։

Պատմության զարգացման հետագա ընթացքի մասին Վ. Ի. Լենինի հանճարեղ դրույթներն ու կանխատեսումները իրենց փայլուն հաստատումն են գտել ժամանակակից իրադրության մեջ և, հարստացվելով ու լրացվելով ժամանակակից պատմության փորձով, դարձել են կոմունիստական շարժման ծրագիրն ու ուղեցույցը։ Այդ կանխատեսումների թվին են պատկանում սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, համաշխարհային ռևոլյուցիոն շարժման բազայի ընդլայնման և սոցիալիզմի վերջնական հաղթանակի անխուսափելիության մասին լենինյան դրույթները, որոնք ստեղծագործաբար զարգացվել են հատկապես ՍՄԿԿ XX և XXI համագումարներում և համաշխարհային կոմունիստական շարժման համաժողովների՝ կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 և 1960 թթ. խորհրդակցությունների փաստաթղթերում։

Բացահայտելով Հոկտեմբերյան ռևոլյուցիայից սկիզբ առած նոր դարաշրջանի հիմնական գիծը՝ սոցիալական տարբեր սիստեմների առկայությունն ու նրանց պայքարը, Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ ինքը կյանքը, ամենից առաջ տնտեսական շարժման գործոնները, անխուսափելիորեն առաջ են քաշում այդ սիստեմների գոյակցության անհրաժեշտության հարցը: «Մեր հիմնական գոյությունը կապիտալիստական տերությունների ցանցի մեջ նվաճված է»— այսպես նա բնութագրեց այն պայքարի մեծագույն արդյունքը, որ նորաստեղծ սովետական հասարակարգը հարկադրված էր եղել մղելու հին աշխարհի կատաղի դիմադրության դեմ, ներքին կոնտրռևոլյուցիայի ու արտաքին ինտերվենցիայի դեմ: Համառ ու դաժան պայքարով նվաճած իր ինքնուրույն գոյության պաշտպանությունը և խաղաղության ապահովումն ամբողջ աշխարհում՝ սոցիալիստական սիստեմի արտաքին քաղաքականության հիմնական գիծն էր այն ժամանակաշրջանում, երբ այդ սիստեմը հաղթանակել էր դեռևս մի երկրում և հանդիսանում է սոցիալիստական սիստեմի արտաքին քաղաքականության հիմնական գիծը ներկայումս, երբ այդ սիստեմը դուրս է եկել մի երկրի սահմաններից, դարձել համաշխարհային սիստեմ:

Տարբեր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորության լենինյան դրույթը, որի վրա է խարսխված սոցիալիստական սիստեմի արտաքին քաղաքականությունը, մեր ժամանակաշրջանում ձեռք է բերել ավելի մեծ նշանակություն և մեր դարաշրջանի իրադրության համապատասխան նոր բովանդակություն: Եթե, նշում է Ն. Ս. Խրուշչովը, մեր դարաշրջանի առաջին էտապում, որն ընդգրկում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից մինչև համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորման ժամանակաշրջանը, դեռևս իմպերիալիզմն էր նշանակալից չափով որոշում միջազգային հարաբերությունների ընթացքն ու բնույթը, ապա երկրորդ էտապում, որն սկսվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորման պահից, ստեղծված են անհրաժեշտ պայմաններ, որոնք հնարավորություն են տալիս սոցիալիստական սիստեմին ավելի ու ավելի մեծ չափերով որոշելու միջազգային հարաբերությունների բնույթը, մեթոդներն ու ուղիները և, ամենից առաջ, որոշելու միջազգային հարաբերությունների հիմնական հարցը՝ պատերազմի ու խաղաղության հարցը:

Ժամանակակից միջազգային դրության, տարբեր սոցիալական սիստեմների ուժերի գնահատման, դասակարգային ուժերի տեղադրման լենինյան վերլուծությունից ՍՄԿԿ XX համագումարը կատարեց այն կարևորագույն եզրակացությունը, որ այժմ չկա պատերազմների ճակատագրական անխուսափելիություն և որ խաղաղասիրական ուժերն ամբողջ աշխարհում, որոնք հենվում են ամենից առաջ Սովետական Միության ու ամբողջ սոցիալիստական լագերի հզորության վրա, ի վիճակի են կանխելու նոր պատերազմ սանձազերծելու իմպերիալիստական երկրների փորձերը: «Ուժերի ներկայիս հարաբերակցությունը միջազգային ասպարեզում սոցիալիստական լագերին և խաղաղասեր մյուս ուժերին հնարավորություն է տալիս առաջին անգամ պատմության մեջ դնելու միանգամայն ռեալ խնդիր՝ հարկադրել իմպերիալիստներին՝ նրանց սիստեմի կործանման սպառնալիքի տակ չսանձազերծել համաշխարհային պատերազմ»,— ասում է Ն. Ս. Խրուշչովը: Միջազգային պրակտիկայից պատերազմների, որպես պետությունների միջև հակասությունների ու վեճերի կարգավորման միջոցի բացառման խնդիրը դարձել է միջազգային հարաբե-



րությունների կենտրոնական հարցը: Այդ հարցի լուծման համար մղվող հետևողական պայքարը սոցիալիստական սիստեմի ու նրա իդեոլոգիայի մեծագույն ծառայությունն է:

Մերկացնելով բուրժուական իդեոլոգիայի ստահոդ պնդումն այն մասին, որ իբր կոմունիստները կոմունիզմի հաղթանակի հարցը կապում են պատերազմների հետ, Կոմունիստական և բանվորական պարտիաների խորհրդակցությունը ամբողջ խորությամբ ընդգծեց խաղաղության և կոմունիզմի համար մղվող պայքարի օրգանական միասնությունը: Խաղաղությունը,— ասված է խորհրդակցության Հայտարարության մեջ,— սոցիալիզմի հավատարիմ դաշնակիցն է, որովհետև ժամանակն աշխատում է սոցիալիզմի օգտին, ընդդեմ կապիտալիզմի: Խաղաղության համար մղվող պայքարը անբաժանելի է դեմոկրատիայի, սոցիալիզմի, կոմունիզմի համար մղվող պայքարից:

Սոցիալիստական երկրները պայքարում են խաղաղության համար, որովհետև նրանց նվիրական նպատակի՝ կոմունիզմի հաղթանակի համար անհրաժեշտ է ժողովրդի ստեղծարար աշխատանք, խաղաղ շինարարություն: Խաղաղ գոյակցությունը չի կասեցնում, այլ, ընդհակառակը, պայմաններ է ստեղծում դասակարգային պայքարի ծավալման համար կապիտալիստական երկրներում, ազգային-ազատագրական պայքարի հաղթանակի համար գաղութային և կախյալ երկրներում: Խաղաղ գոյակցությունը սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև մղվող դասակարգային պայքարի ձև է: Խաղաղության համար մղվող պայքարը, որը գլխավորում է համաշխարհային սոցիալիստական սիստեմը, մեր դարաշրջանի ամենամասսայական պայքարն է:

Լենինիզմն ուսուցանում է, որ խաղաղությունը կարելի է նվաճել միայն պայքարով: Քանի գոյություն ունի իմպերիալիզմը, առկա է պատերազմի վտանգը: Հին աշխարհը կամավոր չի զիջում իր դիրքերը նոր աշխարհին: «Կոմունիստները,— ասված է Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարության մեջ,— պետք է մասսաների շրջանում անդուլ աշխատանք կատարեն, որպեսզի թույլ չտան համաշխարհային պատերազմը կանխելու հնարավորության թերագնահատում և միևնույն ժամանակ թույլ չտան պատերազմի վտանգի թերագնահատում»: Խաղաղության երաշխիքը սոցիալիստական երկրների աճող տնտեսական հզորությունն է, խաղաղասեր ուժերի վճռականությունն ու կազմակերպվածությունը, ժողովուրդների բարեկամության լենինյան ուսմունքի հետևողական կենսագործումը: Լենինիզմը աշխարհին է պարզել խաղաղության դրոշը և դարձել խաղաղության համար պայքարող ուժերի մարտական դրոշը:

Վ. Ի. Լենինը կանխատեսում էր պատմության հետագա ընթացքը, որի առանցքը կազմում է երկու աշխարհների պայքարը: Կապիտալիստական աշխարհը,— ասում էր նա,— խճճվել և ավելի ու ավելի է խճճվում հակասությունների մեջ և ընդունակ է դեռևս իր հոգևարքի գալարների մեջ անլուր վնասներ հասցնելու մարդկությանը, նետել նրան ավերիչ պատերազմների խորխորատը: Կապիտալիստական աշխարհի դեմ կանգնած է «աճող նոր աշխարհը, որը դեռ շատ թույլ է, սակայն կաճի, որովհետև նա անպարտելի է» (Երկեր, հ. 33, էջ 164): Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց, որ հաղթանակած ռևոլյուցիայի երկիրը ունի բոլոր հնարավորությունները լուծելու հասարակության սոցիալիստական վերափոխման՝ լիակատար սոցիալիստական հասարակարգի կառուցման խնդիրը—պետության տիրապետությունը արտադրու-

թյան միջոցների նկատմամբ, պրոլետարիատի իշխանության առկայությունը, պրոլետարիատի դաշինքը բազմամիլիոն մանր ու մանրագույն գյուղացիության հետ, պրոլետարիատի կողմից ղեկավարության ապահովումը գյուղացիության նկատմամբ և այլն։

Լենինի հիմնադրած պետությունը փայլուն կերպով դիմացավ պատմության փորձությանը, ապացուցեց իր անպարտելիությունը խաղաղ շինարարության ու իմպերիալիստների կողմից մեր երկրի վրա փաթաթած արյունահեղ պատերազմի տարիներին։ Լենինիզմի դրոշի տակ մաքառող սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սոցիալիզմը գիտական ուսմունքից դարձրեց իրականություն, երբեմնի հետամնաց երկիրը հասցրեց տնտեսական, կուլտուրական ու գիտական զարգացման այնպիսի մակարդակի, որը հիրավի, հպարտություն է առաջ բերում ամբողջ աշխատավոր մարդկության հոգում, խուճապ ու սարսափ՝ սոցիալական առաջադիմության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի թշնամիների բանակում։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորմամբ վերացվեց մեր երկրի կապիտալիստական շրջապատումը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ սոցիալիզմին բաժին էր ընկնում աշխարհի տերիտորիայի 17, բնակչության 9 և համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 10 տոկոսը։ Այժմ սոցիալիստական սիստեմը կազմում է աշխարհի տերիտորիայի 26 տոկոսը, որտեղ բնակվում են աշխարհի բնակչության մեկ երրորդից ավելին և արտադրում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան մեկ երրորդը։ Արմատապես փոխվել է սոցիալիստական երկրների միջազգային դրությունը։ Իմպերիալիզմի կապանքներից ազատագրվել է գաղութային երկրների ճնշող մեծամասնությունը և գաղութային ստրկության սիստեմն ապրում է իր հոգեվարքը։

Անզոր են կործանվող կապիտալիզմի ճիգերը՝ վերականգնելու իր վաղեմի դիրքերը։ Ընդլայնվում է ռևոլյուցիոն շարժման բազան, ռևոլյուցիոն պայքարի ուղին են մտնում նորանոր ժողովուրդներ, ծավալվում են դասակարգային ճակատամարտերը կապիտալիզմի երկրներում։ Սոցիալիստական երկրների հզորության աճը, բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժումը կապիտալիստական երկրներում, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը, համադեմոկրատական շարժումները—ահա այն ուժերը, որոնց վիճակված է վերջնականապես փրկելու մարդկությանը արցունքի ու արյունի, բռնության ու ստրկության վրա խարսխված իմպերիալիզմի տիրակալությունից։

Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական սիստեմի պատմական նվաճումների, բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարի մեծագույն արդյունքը սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակն է։ «Այժմ,— ասաց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցման մեջ,— աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային մեր երկրում վերականգնել կապիտալիզմը, խորտակել սոցիալիստական լագերը։ Սովետական Միությունում կապիտալիզմի վերականգնման վտանգը բացառված է։ Դա նշանակում է, որ սոցիալիզմը հաղթանակել է ոչ միայն լիովին, այլև վերջնականապես»։ Մեր երկրում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի մեջ մարմնացած է լենինիզմի մեծ ուսմունքը, որը ցույց է տալիս ամբողջ մարդկության փրկության ուղին։



***

Դեռևս Հոկտեմբերյան ռևոլյուցիայից առաջ Վ. Ի. Լենինը գրել էր. «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։ Նոր հասարակարգի շարժիչ ուժերի, զարգացման խթանների ու հնարավորության բազմակողմանի վերլուծության հիման վրա մեծ առաջնորդը դեռևս Սովետական իշխանության առաջին տարիներին, առաջադրեց մի լոզունգ, որն իր նշանակությունը պահպանում էր մի ամբողջ պատմական ժամանակաշրջանի համար. հասնել և անցնել ամենազարգացած կապիտալիստական երկրներից։ Սոցիալիզմի կառուցման լենինյան ծրագրի կենսագործման շնորհիվ մեր սոցիալիստական երկիրն իսկապես ապահովեց զարգացման այնպիսի տեմպեր, որոնք անծանոթ էին ամբողջ նախընթաց պատմությանը։

Սովետական Միությունում 1959 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, բանվորների և ծառայողների թիվն աճել էր 4,9 անգամ, ազգային եկամուտը՝ 25, ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը՝ ավելի քան 40 անգամ, աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ՝ 10,9 անգամ։ Այս տվյալների իմաստն ավելի ակնբախ է դառնում, երբ դրանք համեմատում ենք ամենազարգացած կապիտալիստական երկրների տնտեսական զարգացման տեմպերի հետ։ Այսպես, նշված ժամանակաշրջանում ԱՄՆ-ում ազգային եկամուտն աճել է մոտ 3,4, արդյունաբերության համախառն արտադրանքը՝ 5, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը՝ 2,9 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը 42 տարում (1918—1959) կազմել է՝ ՍՍՌՄ-ում 11,1, ԱՄՆ-ում՝ 3,3 տոկոս։

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի անբաժանելի մասն էր կազմում կուլտուրական ռևոլյուցիան, որի իրագործմամբ մեր երկիրը դարձավ համատարած գրագիտության, ծաղկող կուլտուրայի ու գիտության երկիր։ 1959/1960 ուսումնական տարում Սովետական Միության մեջ կար 753 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնցում սովորում էին 2260 հազար ուսանող, մոտ 18 անգամ ավելի, քան մինչև ռևոլյուցիան։ Սովետական իշխանության տարիներին բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրին տվել են 4437 հազար մասնագետ, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ 7260 հազար։ Միայն 1959 թվականին բարձրագույն ուսումնական հաստատությունները տվել են 336,5 հազար, իսկ միջնակարգ մասնագիտական հաստատությունները՝ 527,2 հազար մասնագետ, այսինքն՝ համապատասխանաբար 27,6 և 71,1 անգամ ավելի, քան 1913 թվականին։ Մասնագետների պատրաստման տեմպերով ՍՍՌՄ-ը շատ հեռու է թողել զարգացած կապիտալիստական երկրներին։ Ժողովրդական տնտեսության մեջ դիպլոմավոր ինժեներների թիվը ՍՍՌՄ-ում մոտ 2 անգամ ավելի է, քան ԱՄՆ-ում, իսկ ամեն տարի ուսումնական հաստատություններն ավարտող ինժեներների թիվը՝ 3 անգամ։ ՍՍՌՄ բարձրագույն ուսումնական հաստատություններում այժմ սովորում են 4 անգամ ավելի ուսանող, քան Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՌ-ում և Իտալիայում միասին վերցրած։ Սովետական

իշխանության տարիներին գիտությունների ակադեմիաներ են ստեղծվել միութենական ռեսպուբլիկաներում, իսկ սովետական գիտության շտաբը՝ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիան դարձել է աշխարհի խոշորագույն գիտական օջախը։

Սովետական Միության գիտական ու տեխնիկական նվաճումները ցնցել են ամբողջ աշխարհը։ Մեկը մյուսի հետևից երկինք են բարձրանում արհեստական արբանյակներն ու տիեզերանավերը։ 1961 թ. ապրիլի 12-ին պատմության մեջ առաջին անգամ տիեզերական տարածություն դուրս եկավ Սովետական մարդը։ Մեր գիտնականները հայտնագործեցին ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման գաղտնիքը և աշխատում են ջերմամիջուկային էներգիայի խաղաղ օգտագործման պրոբլեմի վրա։ Մեր գիտությունը մի շարք վճռական բնագավառներում գրավում է առաջին տեղն աշխարհում։ «Սովետական երկիրը,— նշեց ՍՄԿՊ XXI համագումարը,— գիտա-տեխնիկական մտքի ասպարեզում իր հոյակապ հաղթանակներով նոր դարաշրջան բացեց աշխարհի ճանաչողության գործում։ Այդ հաղթանակների մեծ նշանակությունն այն է, որ դրանք ցուցադրեցին սոցիալիզմի ստեղծարար հզոր ուժերը, որոնք գործում են հօգուտ մարդկության, նրա առաջադիմության և բարգավաճման։ Բոլոր սովետական մարդիկ լի են հայրենասիրական հպարտությամբ իրենց Հայրենիքի համար, որը գլխավորում է համաշխարհային գիտա-տեխնիկական առաջընթացը և համարձակորեն ուղիներ է հարթում դեպի ապագան»։

Սովետական մարդկանց պատմական նվաճումների ու հաղթանակների մեջ մարմնացած է Վ. Ի. Լենինի անմահ ուսմունքը։ Լենինիզմն ապրում է նրանց ստեղծած հզոր արդյունաբերության ու առաջավոր գյուղատնտեսության մեջ, ստեղծարար շինարարության բոլոր բնագավառներում, հոգևոր արժեքներում։ Լենինիզմն ապրում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի՝ սովետական հասարակության առաջատար ու ղեկավար ուժի գործունեության մեջ։ Այն իրականացնում է Վ. Ի. Լենինի հանճարեղ նախագծումները, կոլեկտիվ ուժերով զարգացնում ու հարստացնում լենինիզմը, լուծում մեր դարաշրջանի առաջ քաշած հարցերը։

Վիթխարի նվաճումներ ձեռք բերելով նյութական ու հոգևոր արտադրության մեջ, Սովետական երկիրը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ մտել է զարգացման նոր ժամանակաշրջան՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, որը բնորոշվում է որակական փոփոխություններով ու տեղաշարժերով հասարակական կյանքի բոլոր բնագավառներում՝ արտադրության ու հասարակության տնտեսական կառուցվածքի, կուլտուրական շինարարության ու ամբողջ վերնաշենքի մեջ։ Ղեկավարվելով մարքսիստական-լենինյան գիտությամբ՝ Կոմունիստական պարտիան կոմունիստական հասարակության կառուցման արմատական խնդիրը համարում է նրա նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան կազմում է բարձր զարգացած ավտոմատացած և կոմպլեքսային մեքենայացված արդյունաբերությունը, տեխնիկապես հագեցված ու բարձր արդյունավետության հասած գյուղատնտեսությունը, հզոր և միասնական սիստեմի մեջ միավորված էներգետիկան։ ՍՄԿՊ XXI համագումարում մշակված ու ընդունված յոթնամյա պլանի արմատական նշանակությունն ամենից առաջ այն է, որ նրա կենսագործմամբ



վճռական քայլ կկատարվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում։

Յոթնամյա պլանի կատարմամբ (իսկ յոթնամյակի առաջին երկու տարիների արդյունքները ցույց են տալիս, որ այն ոչ միայն կկատարվի, այլև զգալի չափով կգերակատարվի) Սովետական Միությունը մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի ծավալով ընդհուպ կմոտենա, իսկ առանձին ճյուղերով կգերազանցի ԱՄՆ-ին։ Ինչպես ընդգծում է Ն. Ս. Խրուշչովը, կոմունիզմը կարելի է իրականացնել միայն այն պայմանով, եթե մենք գերազանցենք զարգացած կապիտալիստական երկրների արտադրության մակարդակը, ապահովենք նոր, բավականաչափ ավելի բարձր, քան կապիտալիզմի օրոք, աշխատանքի արտադրողականություն։

Սոցիալիստական երկիրը մտել է կապիտալիզմի հետ տնտեսական մրցության վճռական փուլը և պրակտիկորեն կենսագործում է Վ. Ի. Լենինի լոզունգը՝ հասնել և անցնել առաջավոր կապիտալիստական երկրներից։ Սովետական ժողովրդի պատմական նվաճումները ցույց են տալիս, թե ինչպիսի խորաթափանցությամբ էր Վ. Ի. Լենինը տեսնում նոր հասարակարգի զարգացման ուղին, ինչպիսի լավատեսությամբ էր լի մեծ առաջնորդը, դնելով առաջավոր կապիտալիստական երկրներին հասնելու ու անցնելու պահանջը և այն էլ այն ժամանակ, երբ մեր երկիրը դեռևս չէր հասել արտադրության նախառևոլյուցիոն մակարդակին, իսկ այդ մակարդակը մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալով 13—14 անգամ ետ էր ԱՄՆ-ի արտադրությունից։



Ներկայումս այդ տարբերությունը խիստ կրճատվել է և հեռու չէ այն օրը, երբ սոցիալիստական երկիրը նյութական արտադրության բնագավառում ետ կթողնի ամենազարգացած կապիտալիստական երկրներին։ Կոմունիստական հասարակությունը, ինչպես մատնանշել է Վ. Ի. Լենինը, պետք է հաղթանակի շնորհիվ այն բանի, որ կստեղծի հասարակական արտադրանքի այնպիսի առատություն, որ լիովին բավարարի ամբողջ հասարակության և նրա յուրաքանչյուր անդամի պահանջմունքները։

Կոմունիստական հասարակության կառուցման լենինյան նախագծումներն իրենց հետագա զարգացումն են ստացել Կոմունիստական պարտիայի կողմից, հատկապես ՍՄԿՊ XX և XXI համագումարների որոշումներում։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ ռևոլյուցիոն թեորիան իր վիթխարի դերը կարող է կատարել միայն պատմական նոր փորձի, կենդանի պրակտիկայի, մասսաների ստեղծագործության փորձի կուտակման ու իմաստավորման, սոցիալական ուժերի ու հասարակական հարաբերությունների մեջ կատարվող փոփոխությունների խոր վերլուծության հիման վրա։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելը օրինաչափ պրոցես է։ Նրա տեսական մշակումը ներկայումս մարքսիստական-լենինյան ուսմունքի մեծագույն խնդիրն է։ «Կոմունիստական պարտիայի ուժը մարքսիզմ-լենինիզմին նրա հավատարմությունն է, գիտական սոցիալիզմի տեսության ստեղծագործական կիրառումն ու զարգացումը,— ասված է ՍՄԿՊ XXI համագումարի որոշման մեջ։— Մարքսիզմի հիմնադիրները գիտականորեն հիմնավորել են կոմունիզմի հաղթանակի պատմական անխուսափելիությունը, բացահայտել են սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման հիմնական օրինաչափությունները, բայց նրանք իրենց առջև չեն դրել և չէին կարող դնել կոմունիստական հասարակարգի կառուցման կոնկրետ ուղիներն ու մեթոդները հանգամանորեն որոշելու խնդիրը»։ Այդ խըն-







դիրը գործնականորեն ծագել է մեր ժամանակում և նրա լուծումը տրվում է Կոմունիստական պարտիայի կողմից։

Ելնելով մարքսիստական-լենինյան այն դրույթից, որ հասարակության զարգացման վճռական գործոնը նյութական արտադրությունն է, Կոմունիստական պարտիան իր պրակտիկ ու տեսական գործունեության հիմքում դնում է այն մեթոդների և ուղիների մշակումն ու կիրառումը, որոնք ի վիճակի են ապահովելու արտադրողական ուժերի անկաշկանդ աճն ու աշխատանքի արտադրողականության բարձրացումը, գործողության մեջ դնելու բոլոր այն հնարավորություններն ու ռեզերվները, որոնք առկա են սոցիալիստական էկոնոմիկայում։ Պարտիան մատնանշում է, որ արտադրության զարգացման արմատական պայմանը տեխնիկական պրոգրեսի տեմպերի ըստ ամենայնի բարձրացումն է, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման արագացումը, աշխատանքի ու արտադրության կազմակերպման ռացիոնալ մեթոդների ներդրումն ու արմատավորումը։ Այս խնդրի կենսագործումը օրգանապես կապված է տնտեսության ղեկավարման ձևերի կատարելագործման ու բարելավման հետ, արտադրության մեջ մարդկանց հարաբերությունների կատարելագործման հետ։

Սոցիալիստական հասարակարգում արտադրության զարգացումը բխում է հենց իրենց՝ արտադրողների շահերից, արտադրության պրոգրեսը ուղեկցվում է նրանց նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացմամբ և արտադրության մեջ աշխատավոր ժողովրդի նախաձեռնությունն ու էնտուզիազմը զուգորդվում են նրանց անձնական շահագրգռվածության հետ։ Սոցիալիստական արտադրությունը պայմանավորում է աշխատանքի նկատմամբ նոր, մինչև այդ պատմությանն անհայտ վերաբերմունքի առաջացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացման տնտեսական ու բարոյական խթանների զուգակցումը, որը ներկայումս իր ամենախոր դրսևորումն է գտնում կոմունիստական աշխատանքի բրիգադներում։ Հանրօգուտ աշխատանքը, հասարակության բարօրության համար հոգալը դարձել են սովետական մարդկանց գործունեության որոշիչ մոտիվը։ Այն բխում է մարդկանց հասարակական հարաբերությունների բուն էությունից։ Լենինիզմը սովորեցնում է՝ արտադրողական ուժերի զարգացման հետ միասին կատարելագործել ու զարգացնել մարդկանց հասարակական հարաբերությունները, ըստ ամենայնի աճեցնել կոմունիստական աշխատանքի ծիլերը, ճիշտ զուգակցել մարդկանց նյութական շահագրգռվածությունը հասարակական արտադրության զարգացման արմատական պահանջների հետ։

Մարքսիստական-լենինյան ուսմունքի մեջ խոշոր ներդրում հանդիսացան XXI համագումարի դրույթները կոմունիզմին անցնելու պրոցեսի այնպիսի օրինաչափությունների մասին, ինչպիսիք են՝ սոցիալիստական սեփականության ձևերի մերձեցումն ու հետագայում նրանց միաձուլումը, բաշխման սոցիալիստական ձևի զարգացման հետ միասին արդեն սոցիալիստական հասարակարգում առկա կոմունիստական բաշխման սաղմերի ըստ ամենայնի զարգացումը, սոցիալիստական պետության ֆունկցիաների ամրապնդման ու սոցիալիստական դեմոկրատիայի ամրապնդման հիման վրա կոմունիստական ինքնավարության ծիլերի լայն արմատավորումը և այլն։

Վերջին տարիներին Կոմունիստական պարտիան ու Սովետական պետությունը արմատական միջոցառումներ են մշակել ու կենսագործել գյուղատըն-



տեսության շեշտակի վերելք ստեղծելու ուղղությամբ։ Այդ միջոցառումների արդյունքներն արդեն ի հայտ են եկել կոլտնտեսությունների ու սովխոզների նյութական ու կազմակերպական ամրապնդման, գյուղատնտեսական մթերքների արտադրության նշանակալից չափով ավելացման մեջ։ Սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը, գյուղատնտեսական մթերքների, առանձնապես անասնապահական մթերքների արտադրության ձեռք բերված մակարդակը և աճման տեմպերը դեռևս ետ են մնում արդյունաբերության բուռն զարգացումից և բնակչության պահանջարկի աճից։ Գյուղատնտեսության բնագավառում տեղ գտած թերությունների բացահայտումն ու վերացումը, գյուղատնտեսության արտադրության բուռն զարգացման ապահովումը գտնվում է պարտիայի և ամբողջ սովետական ժողովրդի ուշադրության կենտրոնում։ Առանց լավ զարգացած գյուղատնտեսության, առանց գյուղատնտեսական մթերքների առատության չի կարող լինել ծաղկող սոցիալիստական էկոնոմիկա,—ընդգծված է հունվարյան պլենումի որոշման մեջ։ Գյուղատնտեսության արագ վերելքի համար մղվող պայքարը կոմունիստական հասարակության կառուցման կարևորագույն պայմանն է։ Կոմունիզմի ստորին փուլից բարձրագույնին անցումը պահանջում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի բարձր զարգացում և սերտ համագործակցություն։

Զարգացնելով մարքսիստական-լենինյան գիտությունը կոմունիզմի կառուցման մասին, Կոմունիստական պարտիան ուշադրության կենտրոնում է պահում ոչ միայն հասարակության նյութական կյանքի պայմանների, այլև հոգևոր կյանքի ըստ ամենայնի զարգացման հարցերը։ Վերափոխելով աշխարհը, մարդիկ իրենք են փոխվում, հարստանում հոգեպես, ստեղծում բարոյական նոր նորմաներ, նոր կենցաղավարություն։ «Մենք կաշխատենք,—ասում էր Վ. Ի. Լենինը,— մասսաների գիտակցության մեջ, սովորության մեջ, նրանց ամենօրյա կենցաղի մեջ արմատավորել «բոլորը մեկի և մեկը բոլորի համար» կանոնը, «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ նրա պահանջմունքների» կանոնը, աստիճանաբար, բայց անշեղորեն մտցնել կոմունիստական կարգապահություն ու կոմունիստական աշխատանք» (Երկեր հ. 31, էջ 140)։

Մասսաների կոմունիստական դաստիարակության խնդիրը ներկայումս, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, բացառիկ կարևոր նշանակություն է ստացել, որովհետև հասարակության առջև ծառացած վիթխարի պրակտիկ խնդիրների կենսագործումն անմիջական կախման մեջ է աշխատավորների գիտակցական մակարդակի բարձրացումից, նոր մարդու, նրա աշխարհայացքի, բնավորության, բարոյական նորմերի ձևավորումից։ Կոմունիզմի կառուցման պրոցեսը միաժամանակ բազմակողմանի զարգացած մարդու ձևավորման պրոցես է, մարդ, որն իրականացնում է նոր աշխարհ կերտելու լենինյան վեհ իդեալները։

* * *

Մեր դարաշրջանի սկզբին, երբ դաժան պայքարի բովում ծնվում էր նոր հասարակարգը, Վ. Ի. Լենինն ասել է. «Առաջ ամբողջ մարդկային խելքը, նրա ամբողջ հանճարն ստեղծագործում էր միմիայն նրա համար, որպեսզի մի կարգ մարդկանց տա տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր բարիքները, իսկ մյուսնե-

րին զրկի ամենաանհրաժեշտից՝ լուսավորությունից ու զարգացումից։ Իսկ այժմ տեխնիկայի բոլոր հրաշքները, կուլտուրայի բոլոր նվաճումները դառնալու են համաժողովրդական սեփականություն, և այսուհետև մարդկային խելքն ու հանճարն էլ երբեք բռնության միջոցների, շահագործման միջոցների չեն վերածվի։ Մենք այդ գիտենք,— և մի՞թե հանուն այդ մեծագույն պատմական խնդրի չարժե աշխատել, չարժե տալ բոլոր ուժերը։ Եվ աշխատավորները կկատարեն այդ տիտանական պատմական աշխատանքը, որովհետև նրանց մեջ են ամփոփված ռևոլյուցիայի, վերածնության ու վերանորոգության նիրհող մեծ ուժերը» (Երկեր, հ. 26, էջ 589—590)։

Այդ մեծագույն պատմական խնդիրը, որի իրականացմանը մեծ առաջնորդը տվեց իր հանճարը, անսպառ եռանդն ու անհողդողդ կամքը, կենսագործվում է սովետական ժողովրդի, նրա առաջատար ու ղեկավար ուժի՝ Կոմունիստական պարտիայի կողմից։ Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, անճանաչելիորեն փոխեց մեր երկրի կերպարը, ամբողջ խորությամբ դրսևորեց իր ստեղծագործական եռանդը, նախաձեռնությունն ու կամքը, մարդկային միտքն ու հանճարը ուղղեց երջանիկ կյանք կերտելու հունը։ Դժվարությունների, տիտանական պայքարի բովով է անցել մեր ժողովուրդը երջանիկ կյանք կերտելու ճանապարհին և նվաճել է այն բնագծերը, որոնցից սկսվում է անցումը դեպի մարդկության պայծառ ապագան՝ կոմունիզմը։ Նրա հաղթանակների երաշխիքը եղել ու մնում է Վ. Ի. Լենինի ուսմունքը, որն անմահ է, որովհետև այն մարմնացել է աշխատավոր ժողովրդի աշխատանքի ու պայքարի, սխրագործության ու նվիրական ձգտումների մեջ, Վ. Ի. Լենինի ստեղծած ու դաստիարակած Կոմունիստական պարտիայի գործունեության մեջ։

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին հաղթանակից հաղթանակ է տարել ղեկավարվելով մեծ առաջնորդի և ուսուցչի ուսմունքով ու պատգամներով։ Նա ծրագրում է ավելի մեծ խնդիրներ, կազմակերպում ու ոգեշնչում ժողովրդին՝ դրանք կենսագործելու համար։ Լենինիզմի դրոշի տակ, միաձույլ ու ամուր, Սովետական Միության Կոմունիստական պարտիան շուտով կհավաքվի իր հերթական XXII համագումարին, որը հանրագումարի կբերի իր պատմական նվաճումները և կընդունի իր հետագա աշխատանքի ծրագիրը՝ կոմունիզմի կառուցման լենինյան ծրագիրը։ Լենինիզմը կոմունիզմի կառուցման անմար ջահն է։

---

# ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԱՐԴԻ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ՍՏ. ՔՈՉԱՐՅԱՆ

Ավելի քան մեկ ու կես տասնամյակ է անցել այն օրից, երբ լռեցին երկրորդ համաշխարհային պատերազմի հրանոթների վերջին համազարկերը։ Միջազգային իմպերիալիզմի կազմակերպած և ոգեշնչած այդ սպանդը նրա նախաձեռնողներին ոչ թե դափնիներ, այլ դառը պտուղներ բերեց։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի կողմից հայտնագործված նոր կյանքի ուղին ընտրեցին եվրոպական ու ասիական մի շարք երկրների ժողովուրդներ։ Ծնվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի։

Փոխվեց դասակարգային ուժերի դասավորությունը կապիտալիստական աշխարհում։ Կոմունիստական ու բանվորական շարժումը մի նոր աստիճանի բարձրացավ։ Ներկայումս 36 միլիոն մարդ միավորված են աշխարհի 87 երկրներում գործող կոմունիստական պարտիաներում։

Հարվածներն իմպերիալիզմի գլխին տեղում են մեկը մյուսի հետևից, որոնք ցնցում են նրա փտող հիմքերը։ Անհաղթահարելի ուժով ծավալվում է գաղութային ժողովուրդների հակաիմպերիալիստական շարժումը։ Նրանց ազատագրական պայքարի հնոցում հալչում են գաղութատիրության վերջին շղթաները։

Սոցիալական այս բոլոր վերափոխումները նշանավորում են հին աշխարհի խորտակումը, որն այնքան վիշտ ու տառապանքներ է բերել մարդկությանը։ Իմպերիալիզմի զառամած աշխարհը շնչահեղձ է լինում իր քայքայվող մարմնի սակավարյունությունից։

Պատմության փորձը ցույց է տալիս, որ մեռնող կեղեքիչները առանց կռվի անձնատուր չեն լինում, նրանք մահացու վերք ստացած գազանի պես իրենց վերջին շնչում անգամ ձգտում են վնաս հասցնել։ Իմպերիալիզմը ժառանգել է դատապարտվածների տրադիցիաները։ Ամեն գնով նա փորձում է հետաձգել իր կործանումը։ Բայց նրա ճիգերը չեն կարող կանգնեցնել պատմության վերընթաց զարգացումը։ Սոցիալիզմի լիակատար հաղթանակն ամենուր անխուսափելի է։

Իրենց ապագայի նկատմամբ մշտական երկյուղով համակված իմպերիալիզմի մոնոպոլիստական շրջանները համախմբվում են սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի առաջընթացը կասեցնելու համար։ Պատերազմից անմիջապես հետո կապիտալիստական աշխարհի մի բուռ միլիոնատերեր և միլիարդատերեր սեփական բախտը հանձնեցին իրենց ամենահարուստ ու ամենահզոր պարտնյորին՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներին՝ համաշխարհային

*ռեակցիայի գլխավոր հենարանին։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյացումը, ազգային-ազատագրական, բանվորական և սոցիալիստական շարժումների նորանոր հաջողությունները փակուղու առաջ են կանգնեցրել բիզնեսի արքաներին։ Այդ անելանելի վիճակից դուրս պրծնելու համար ԱՄՆ-ը իրենց շուրջն են համախմբում կապիտալիզմի ռեակցիոն, ռազմատենչ ուժերին, ստեղծում ռազմա-քաղաքական ագրեսիվ խմբավորումների սիստեմ, որի նպատակն է կոնտրռևոլյուցիայի ու ռեակցիայի ուժերի միավորված ճակատ ստեղծել դեմոկրատիայի ու պրոգրեսիվ ուժերի դեմ։ Եվ այդ տենդենցը դեռևս գերակշռում է իմպերիալիզմի աշխարհում։ Հենց որ բանը վերաբերում է սոցիալիզմի, ազգային-ազատագրական շարժումների, դեմոկրատիայի ուժերի դեմ պայքարելուն, իմպերիալիստներն իրար ոտք չեն տրորում։*

*Բայց նշանակո՞ւմ է դա արդյոք, որ սոցիալիզմի ու իմպերիալիզմի սիստեմների միջև սրված պայքարի պայմաններում այլևս չեն գործում, կամ թուլացել են միջիմպերիալիստական հակասությունները։ Այդպես կարող են մտածել իրադարձությունները մակերեսորեն դիտող մարդիկ։ Այսպես, Հարավսլավական ռևիզիոնիզմի պարագլուխներից մեկը՝ Էդվարդ Կարդելը, պնդում է, թե սոցիալիզմի ու կապիտալիզմի պայքարի սրությունը տանում է դեպի իմպերիալիստական հակասությունների մարում։*

*Վ. Ի. Լենինն անողոք քննադատության էր ենթարկում նրանց, ովքեր իրենց հետևությունները կառուցում էին երևույթների մակերեսային վերլուծության վրա, չթափանցելով դրանց էության մեջ։ Նա ուսուցանում էր, որ «մարքսիզմի էությունը կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծությունն է»։*

*Մրդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունը և գլխավոր առանձնահատկությունները որոշվում են համաշխարհային սոցիալիստական սիստեմով, իմպերիալիզմի դեմ մարտնչող ուժերով։ Փոխվել են ժամանակները, փոխվել ուժերի հարաբերակցությունը։ Սակայն իմպերիալիզմը նույն գիշատիչն է՝ ավելի ջլատված դիրքերով։*

***

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում կատարված պատմական տեղաշարժերը պայմանավորեցին իմպերիալիզմի շահագործման ոլորտների խիստ կրճատումը։ Սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի, ազգային-ազատագրական շարժումների հետևանքով իմպերիալիզմի տրադիցիոն ազդեցության ոլորտների շարունակական կորուստը չտեսնված չափով սրեցին արտաքին շուկաների պրոբլեմը։*

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ներկա էտապը բնութագրվում է կապիտալիստական զարգացման անհամաչափության ու թռիչքաձևության հետագա ուժեղացմամբ, որը հասցնում է ուժերի հարաբերակցության փոփոխության իմպերիալիստական տերությունների միջև։*

*Այսպես, եթե 1937 թվականին ԱՄՆ-ին բաժին էր ընկնում կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի 41,5, 1948 թվականին՝ 56,5 տոկոսը, ապա 1960 թվականին՝ 46,9 տոկոսը։ Անգլիայի տեսակարար կշիռը կազմում էր համապատասխանաբար 12,5, 11,5 և 7,7 տոկոս, Ֆրանսիայինը՝ 6,4 և 5,1 տոկոս, Արևմտյան Գերմանիայինը՝ 9,5, 4 և 10,4 տոկոս։*



*Այստեղից երևում է, որ եթե ամերիկյան իմպերիալիզմին պատերազմից անմիջապես հետո, իր մրցակիցների թուլացման պատճառով, հաջողվեց իր հեգեմոն դերն ապահովել կապիտալիստական աշխարհում, ապա այժմ նա անշեղորեն կորցնում է իր գերազանցությունը, մի կողմից՝ իմպերիալիստական մյուս տերությունների տնտեսական պոտենցիալի ամրապնդման, մյուս կողմից՝ ամերիկյան էկոնոմիկային հատուկ ճգնաժամային ցնցումների հետևանքով։ Հիշենք, որ 1929—1959 թթ. ժամանակաշրջանում ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքն աճեց 2,4 անգամ, մինչդեռ Սովետական Միությանը՝ 25 անգամ։*

*Շատ տնտեսագետների պատկերավոր արտահայտությամբ, ԱՄՆ-ի էկոնոմիկան նման է հարբեցողի երերուն քայլվածքին, որի ուղին ոչ ոք չի կարող կռահել։ Ահա թե ինչ է արձանագրված ԱՄՆ-ի տնտեսական ու սոցիալական հետազոտությունների կորպորացիայի զեկուցագրում. «Տասը տարի առաջ*
*ԱՄՆ-ը արտադրության համաշխարհային կենտրոնն էին, կապիտալի արտա-*
*հանման միակ լուրջ աղբյուրը... Վրա հասնող 60-ական թվականներին ԱՄՆ-ը*
*կլինեն արդեն ոչ միակ, այլ սոսկ մի քանի արտադրող տերություններից մեկը։*
*ի տարբերություն անցած տասնամյակի, հաջորդ տասնամյակը կբնութագրվի*
*թե՛ բարեկամների և թե թշնամիների աճող մրցակցությամբ... Եվրոպացինե-*
*րըն այլևս կախված չեն մեր տնտեսական հզորությունից։ Մենք պետք է ղե-*
*կավարենք և ոչ թե կարգադրենք»։*

*Այս տեսակետից հատկանշական է Արևմտյան Գերմանիայի առաջխաղա-*
*ցումը։ Բավական է ասել, որ 1959 թվականին ԳՖՌ-ն արդյունաբերական ար-*
*տադրանքի արտադրությամբ երկրորդ տեղը դուրս եկավ կապիտալիստական*
*աշխարհում, զիջելով միայն ԱՄՆ-ին։ Այժմ նա Անգլիայից շատ պողպատ և*
*ավտոմեքենա է արտադրում, իսկ նավաշինարարության բնագավառում հա-*
*մարյա հասել է նրան։*

*Տնտեսական ուժերի հարաբերակցության փոփոխությունը փոխել է նաև*
*իրերի վիճակը համաշխարհային կապիտալիստական արտահանման բնագա-*
*վառում։ ԱՄՆ-ի տեսակարար կշիռը 1947 թվականի 32,5 տոկոսից իջավ 18,4*
*տոկոսի 1960 թվականին, մինչդեռ Արևմտյան Գերմանիան 1960 թվականին*
*լիովին վերականգնել էր իր նախապատերազմյան դիրքերը և նրան բաժին էր*
*ընկնում 10,2 տոկոսը 1938 թվականի՝ 10,1 տոկոսի և 1947 թվականի՝ 0,5 տո-*
*կոսի դիմաց։ Անգլիային բաժին էր ընկնում 1938 թվականին՝ 11,2 տոկոս,*
*1947 թվականին՝ 9,8 և 1960 թվականին՝ 9 տոկոս, իսկ Ֆրանսիային հա-*
*մապատասխանաբար 4,1, 4 և 6,2։ Եթե 1956—1959 թթ. ԱՄՆ-ի արդյունաբե-*
*րական արտադրությունն աճեց 6, Անգլիայինը՝ 6 տոկոսով, ապա Արևմտյան*
*Գերմանիայինը՝ 24 տոկոսով։*

*Տնտեսական ուժերի զարգացման այս դինամիկան վկայում է այն մասին,*
*որ ԳՖՌ-ի գերակշռությունը Արևմտյան Եվրոպայում փաստ է դարձել։ «Իսկ,*
*երբ ուժի փոխհարաբերությունները փոխվել են, ապա կապիտալիզմի ժամա-*
*նակ ի՞նչը կարող է լուծել հակասությունը, եթե ոչ ուժը» (Վ. Ի. Լենին, Երկեր,*
*հ. 22, էջ 365)։*

*Իմպերիալիզմի հակասությունները արագացրին մոնոպոլիստական կա-*
*պիտալիզմի վերաճումը պետական մոնոպոլիստական կապիտալիզմի, որ*
*նշանակում է մոնոպոլիաների գերիշխանության ուժեղացում ազգի կյանքի*
*վրա, մոնոպոլիաների ուժի միացում պետության ուժի հետ միասնական մե-*

խանիզմի մեջ։ Դա ավելի է սրում իմպերիալիզմի հակասությունները։ Ստեղծվում են տնտեսական տարբեր բլոկներ իմպերիալիստական տերությունների շահերի անտագոնիզմը մեղմացնելու նպատակով։ Սակայն դրանք երկպառակությունների համար նոր հող են նախապատրաստում։ «Ինտեգրացիայի» լոզունգի ներքո առաջացող միջպետական նոր կազմակերպությունները իրականում տանում են դեպի իմպերիալիստական երկրների հակասությունների ու նրանց պայքարի ուժեղացում, ներկայացնում են կապիտալիստների հզորագույն միությունների միջև կապիտալիստական շուկայի բաժանման, իրենց թույլ պարտնյորների էկոնոմիկայի մեջ իմպերիալիստական առավել ուժեղ պետությունների ներթափանցման նոր ձևեր»,—ասված է Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի Նոյեմբերյան Խորհրդակցության Հայտարարության մեջ։

Այսպես կոչված՝ «ինտեգրացիայի» գաղափարն իր մարմնավորումն է գտնում բոլորովին վերջերս հյուսված երկու կապիտալիստական տնտեսական խմբավորումների մեջ։ Դեռ 1957 թվականի սկզբներին ստեղծվեց, այսպես կոչված՝ «ընդհանուր շուկան», որին մասնակցում են արևմտաեվրոպական վեց կապիտալիստական երկրներ՝ ԳՖՌ-ի և Ֆրանսիայի գլխավորությամբ։ Անգլիան բացասական վերաբերմունք ցուցաբերեց «վեցի շուկայի» նկատմամբ, որովհետև նրա համար պարզ էր, որ այդ շուկան իր սուր ծայրով ուղղված է իր տնտեսական շահերի դեմ, սպառնում է իր ապրանքների արտահանմանը դեպի արևմտաեվրոպական շուկաները։ Չէ որ անգլիական արտաքին առևտրի 30 տոկոսը իրացվում է այդ շուկաներում։ Իր համար բարենպաստ պայմաններ ապահովելու նպատակով Անգլիան առաջարկեց ստեղծել «ազատ առևտրի գոտի», որի մեջ պետք է մտներ կապիտալիստական երկրների ավելի մեծ խումբ, այդ թվում նաև «ընդհանուր շուկայի» անդամները։ Ֆրանսիային խիստ անհանգստացրեց այդ հեռանկարը։ Վախենալով Անգլիայի մրցակցության ուժեղացումից և նրա՝ Եվրոպայում առաջատար դիրքեր գրավելուց, Ֆրանսիան բացահայտորեն հակադրվեց անգլիական պլանին։ Բոննում անգլիական պլանի նկատմամբ կոմպրոմիսային տենդենցներ դրսևորվեցին։ ԳՖՌ-ն շահագրգռվածություն ցուցաբերեց այդ նախագծի իրականացման մեջ։

Քանի որ Արևմտյան Գերմանիան արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ իր հետևում է թողել Անգլիային ու Ֆրանսիային, ապա միասնական տնտեսական բլոկ ստեղծելու դեպքում անգամ նա կարող է իր համար տիրապետող դրություն ապահովել Արևմտյան Եվրոպայում։ Բայց չցանկանալով փչացնել հարաբերությունները Ֆրանսիայի հետ, Բոննի կառավարողները ստիպված լռությամբ անցան անգլիական ծրագրի կողքով։ Այդ ժամանակ «վեցի շուկային» ի հակակշիռ Անգլիան ձեռնարկեց, այսպես կոչված՝ «յոթի շուկայի» ստեղծմանը։

Այս երկու թշնամական տնտեսական խմբավորումների միջև ծավալվում է պայքար Արևմտյան Եվրոպայում հեգեմոն դրության հասնելու համար։ Առանձնապես ցայտուն կերպով է դրսևորվում անտագոնիզմն այդ խմբավորումների առաջատար ուժերի՝ Արևմտյան Գերմանիայի ու Անգլիայի, Անգլիայի ու Ֆրանսիայի միջև։ Պատահական չէ, որ Վաշինգտոն կատարած իր վերջին այցելության ժամանակ Մակմիլանը խնդրում էր իր անդրատլանտյան ավագ պարտնյորից չպաշտպանել «ընդհանուր շուկան» և չեզոքություն պահպանել։ Անգլիական պրեմիեր-մինիստրը գտնում էր, որ դրա մեջ ինքը տես-



նում է «հիտլերյան երրորդ ռեյխի պանեվրոպական հավակնությունները»։ Իսկ Ադենաուերը 1959 թվականի ապրիլին գանգատվում էր, որ Անգլիայում կան ուժեր, որոնք ձգտում են «ջլատել անգլո-գերմանական հարաբերությունները»։

Հատկանշական է, որ այդ երկու բլոկների ներսում նույնպես պայքար է գնում։

Ահա ինչպիսի պատկեր է ներկայացնում ուժերի հարաբերակցությունը տնտեսական այս խմբավորման ներսում, 1959 թվականի ցուցանիշներով.

| | Պողպատ (մլն. տ.) | Քարածուխ (մլն. տ.) | Էլեկտրաէներգիա (մլն. կվտ. ժ.) | Ավտոմեքենաներ (հազ. հատ) | Ցեմենտ (մլն. տ.) |
|---|---|---|---|---|---|
| ԳՖՌ | 29,4 | 124,8 | 98 | 1684 | 23 |
| Ֆրանսիա | 15,2 | 59,8 | 62 | 1512 | 14 |
| Իտալիա | 6,8 | 0,7 | 47 | 484 | 14 |
| Բելգիա | 6,4 | 22,6 | 13 | — | 4 |
| Հոլանդիա | 1,7 | — | 14 | — | 1,6 |

Այստեղ պարզորոշ երևում է, որ Արևմտյան Գերմանիան այս բլոկի ամենահզոր անդամն է, որն արտոնյալ դիրք է գրավում և չունի լուրջ մրցակից շուկայում։ Բայց Ֆրանսիան իր դիրքերը կամավոր կերպով չի զիջում։ Ճիշտ է, Փարիզի պաշտոնական շրջանները որոշակի քայլեր են կատարում Բոննի հետ մերձենալու համար, բայց նրանց երկյուղը գերմանական իմպերիալիզմի ուժեղացման նկատմամբ չի թուլանում։ Այս հարցում Անգլիային ձեռք մեկնելու տրամադրությունները ակնհայտ են դառնում։ Ահա թե ինչ էր գրում անցյալ տարվա մայիսին «Նյու-Յորք Հերալդ Տրիբյուն» թերթը. «Անկասկած, Ֆրանսիայի և Անգլիայի միջև համաձայնություն կա այն մասին, որ պետք չէ միավորել երկու Գերմանիան»։

Ինչ վերաբերում է ԱՄՆ-ին, ապա նրանք կենսական շահագրգռվածություն են հանդես բերում արևմտաեվրոպական շուկաների նկատմամբ։ Արտաքին շուկաների խիստ կրճատման պայմաններում ամերիկյան ֆինանսական կապիտալը ջանում է իր տրադիցիոն ազդեցության ոլորտների կորուստը փոխհատուցել արևմտաեվրոպական շուկաները ներխուժելու և իր թույլ պարտնյորների էկոնոմիկայի մեջ ներթափանցելու հաշվին։

Միայն վերջին 10 տարիների ընթացքում ԱՄՆ-ի կապիտալ ներդրումները Արևմտյան Եվրոպայում եռապատկվեցին և այժմ ամերիկյան բոլոր ներդրումների 67 տոկոսը բաժին է ընկնում Արևմտյան Եվրոպային, 1957 թվականի 40 տոկոսի փոխարեն։ Ամերիկյան իմպերիալիզմը դարձել է միջազգային ամենախոշոր շահագործողը։ Նա, միլիտարիզմի ճիրանների մեջ ներքաշելով կապիտալիստական մի շարք պետությունների, առիթը բաց չի թողնում հենց իր դաշնակիցների տրադիցիոն ազդեցության ոլորտները զավթելու համար։

Նա մի կողմից կաշվից դուրս է գալիս իր եվրոպական դաշնակիցներին հաշտեցնելու համար, որպեսզի չթուլանան Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի հիմքերը, իսկ մյուս կողմից, համագործակցելով արևմտագերմանական մոնոպոլիաների հետ, ճանապարհ է հարթում արևմտաեվրոպական շուկաների վրա իր ամենազոր թաթը դնելու համար։

Այս տարվա հունվարի սկզբներին երևան եկավ մի նոր տնտեսական խմբավորում, այսպես կոչված՝ Տնտեսական համագործակցության և զարգացման կազմակերպությունը, որին մասնակցում են 20 արևմտաեվրոպական եր-

կըրներ՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ։ Գաղտնիք չէ, որ ամերիկյան ֆինանսական կապիտալը իմպերիալիստական այս երգչախմբում դիրիժորի դեր է կատարում։ Ամերիկյան սենատոր Ջավիտսը ուղղակի բացահայտում է ամերիկյան իմպերիալիզմի դիտավորությունները, ասելով, որ ԱՄՆ-ը «Եվրոպայի կարիքն են զգում»։ Կասկածից վեր է, որ ամերիկյան մոնոպոլիաներն ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծում իրենց ապրանքների և կապիտալի արտահանման համար։ Սակայն արդի պայմաններում, երբ Անգլիայի ու Ֆրանսիայի մրցունակությունը նկատելիորեն աճել է, իսկ Արևմտյան Գերմանիան վերականգնել է իր ռազմա-տնտեսական հզորությունը, ամերիկյան մոնոպոլիաների տնտեսական էքսպանսիայի ճանապարհը փշերով է ծածկված։

Իզուր չեն արևմտաեվրոպական ժուռնալիստական շրջաններում նոր տնտեսական միությունը գնահատում որպես 20 անհուսալի դաշնակիցների կաղմակերպություն։

Ամերիկյան իմպերիալիզմն, օգտագործելով իր արևմտյան «բարեկամների» խարխլված դիրքերը, նրանց տիրապետությունները զավթելու գիծ է վարում։ Այս տեսակետից, բնորոշ է ամերիկյան կապիտալի ներթափանցումը Աֆրիկա։ Այստեղ ծավալված ազգային ազատագրական շարժման հզոր ալիքների մեջ խեղդվում են գաղութատիրության վերջին մոհիկանները։ Ամերիկյան իմպերիալիզմը, փորձելով քողարկել գալլի իր երախը, գառան մորթի է հագնում, իր էքսպանսիան դեպի Աֆրիկա կատարելով «հակագաղութատիրության» լոզունգի ներքո։ Տնտեսական օգնության պատրվակով նա ձգտում է հին գաղութարարների շղթաները փոխարինել նորով։ Գանայի պրեզիդենտ Նքրումայի դիպուկ արտահայտությամբ «Նոր գաղութատիրությունը մեկ ձեռքով աֆրիկական ժողովուրդներին անկախություն տալու, մյուսով այն խլելու պրոցես է»։

Մինչպատերազմյան տարիներին Աֆրիկան Եվրոպայի իմպերիալիստական պետությունների շահագործման օբյեկտն էր։ Պատերազմից հետո ամերիկյան մոնոպոլիաներն սկսեցին իրենց համար տեղ որոնել աֆրիկական երկրի տակ իրենց եվրոպական դաշնակիցների հաշվին։ Թե ինչու է աֆրիկական աշխարհամասն այնքան գրգռում անդրատլանտյան իմպերիալիստների ախորժակը, դժվար չէ բացատրել։ Չէ՞ որ Աֆրիկան հարուստ հումք, շահութաբեր և վաճառահանման պոտենցիալ շուկաներ ունի։ Այսպես, եթե ամերիկյան կապիտալ ներդրումների շահույթի նորման արտասահմանում հավասար է 20, ապա Աֆրիկայում 25—30 տոկոսի է հասնում։ Ահա թե ինչու 1959 թվականին ամերիկյան մասնավոր և պետական կապիտալ ներդրումներն Աֆրիկայում նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ 20 անգամ ավելացան։ ԱՄՆ-ը դուրս են մղում Ֆրանսիային Արևմտյան և Հասարակածային Աֆրիկայից։ Ֆրանսիական «Մոնդ դիպլոմատիկ» թերթը գրում էր. «Չպետք է փակել աչքերն այն բանի առաջ, որ ֆրանսիական Արևմտյան Աֆրիկայում և ֆրանսիական Հասարակածային Աֆրիկայում, ինչպես նաև աշխարհի մյուս մասերում, տարբեր շահերի ընդհարում է տեղի ունենում... Ֆրանսիայի ներգործությունն այդ շրջաններում կարող է անկում ապրել Միացյալ Նահանգների մեքենայությունների պատճառով»։

Աֆրիկայում ամերիկյան 200 ընկերություններ են գործում, որոնք վերահսկում են հումքի աղբյուրների զգալի մասը։ Արևմտաեվրոպական մոնոպոլիաներն ամերիկյան ճնշման տակ թողնում են իրենց նախկին դիրքերը, զիջում իրենց տեղը ուժեղին։ Գաղտնիք չէ, թե ինչ նպատակներ են հետապնդում այսօր ԱՄՆ-ը՝ քաղաքացիական պատերազմ հրահրելով Կոնգոյում։ Հենվելով երկրի ռեակցիոն տարրերի վրա, նրանք, մի կողմից, ձգտում են ճնշել այստեղ ծավալված ազգային ազատագրական շարժումը, մյուս կողմից՝ Կոնգոյում հաստատել իրենց տիրապետությունը, Բելգիային այնտեղից հեռացնելու ճանապարհով։ Չէ՞ որ Կոնգոն այնքան հարուստ է հումքով, որի մեջ վերջին տեղը չի գրավում ուրանը։ Ֆրանսիական բուրժուական պատմաբան և տնտեսագետ Սեդիյոն ճիշտ է գնահատում իրադրությունը. «Խոսքը միևնույն երևույթի այլ ձևի մասին է... Դոլարի կողմից իրականացվող գաղութատիրությունը հասցնում է տակ այն բանին, որ կատարվում է մեկ գաղութատերերի փոխարինում մյուսներով»,—ասում է նա։

Իսկ Լաոսում ծավալված իրադարձությունների մեջ մի՞թե չի արտացոլվում ամերիկյան իմպերիալիզմի գիշատչական դեմքը։ Գործի դնելով ՍԵԱՏՕ-ի ամբողջ մեխանիզմը՝ Միացյալ Նահանգների մոնոպոլիստական շրջանները ձգտում են Լաոսում ռեակցիոն ռեժիմ հաստատելու հետ մեկտեղ, Հարավ-Արևելյան Ասիայից հեռացնել իրենց եվրոպական մրցակիցներին։ Սակայն պարզվեց, որ այդ մեխանիզմի բոլոր դետալներն անխափան չեն աշխատում։ Անգլիան ու Ֆրանսիան պատրաստակամություն չհայտնեցին պաշտպանելու իրենց պարտնյորին և չցանկացան մասնակցել ԱՄՆ-ի կողմից նախապատրաստվող ռազմական ավանտյուրային։ Նրանք ավելի շատ հակված են Լաոսի չեզոքության պահպանմանը։ Ֆրանսիական «Ֆրանս—Օբսերվեր» թերթը մեկնաբանելով Լաոսի իրադարձությունները գրում էր, որ դաշնակիցների միջև «միաբանություն գոյություն չունի։ Տարաձայնությունները Վաշինգտոնի և Փարիզի միջև ակնհայտ են դարձել»։



Իհարկե, մեկ հոդվածի մեջ անհնարին է թանդել ու ցուցադրել իմպերիալիստական տերությունների միջև գործող հակասությունների այն կծիկը, որն օրավուր ավելի է խճճվում։ Սակայն պատկերն ամբողջական դարձնելու համար անհրաժեշտ է լուսաբանել նաև քաղաքական այն հակամարտությունները, որոնք դրսևորվում են իմպերիալիստական բլոկների շրջանակներում։

Տնտեսական զարգացման անհամաչափությունն ու թռիչքաձևությունը ուղեկցվում է քաղաքական ուժերի հարաբերակցության փոփոխությամբ։ Կենտրոնախույս տենդենցներն առավել ցայտուն կերպով դրսևորվում են Հյուսիսատլանտյան ագրեսիվ խմբավորման մեջ։ Այստեղ միջիմպերիալիստական հակասությունների հանգույց է գոյացել։ ԱՄՆ-ի արևմտաեվրոպական պարտնյորները չեն ցանկանում կուրորեն հետևել իրենց ավագ դաշնակցին։ Տարաձայնություններ կան եվրոպական անվտանգության, գերմանական պրոբլեմի, Չինաստանի հետ հարաբերություններ հաստատելու, խաղաղ գոյակցության, Միջին և Մերձավոր Արևելքի նկատմամբ եղած վերաբերմունքի և մի շարք այլ հարցերում։

Անգլիային առհասարակ չի հրապուրում այն խիստ կոպիտ ավանտյուրիստական արտաքին քաղաքական կուրսը, որ վարում են ԱՄՆ-ի կառավարող շրջանները։ Անգլիային չի կարող անհանգստություն չպատճառել նաև այն հանգամանքը, որ անդրատլանտյան իր ավագ պարտնյորը մեծ խանդավառու-

թյամբ ողջունում է արևմտագերմանական միլիտարիզմի ծնունդը և առատորեն նրան սնում։ ԱՄՆ-ի միլիտարիստական շրջանները ձգտում են Արևմտյան Գերմանիան վերածել Եվրոպայում հակակոմունիստական գլխավոր հենակետի։ Նրանք պատրաստակամություն են հայտնում նույնիսկ նախկին հիտլերականների ձեռքը հանձնել միջուկային զենք։ Արևմտագերմանական ռևանշիստներին հենց այդ է պետք։ Նրանք հմտորեն օգտագործում են Արևելքի ու Արևմուտքի միջև եղած հակասությունները, օգտվում ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի միջև եղած տարաձայնություններից՝ իրականացնելու համար իրենց հեռու գնացող ագրեսիվ պլանները։

Այսօր Արևմտյան Գերմանիան դարձել է ՆԱՏՕ-ի իրավահավասար անդամը։ Հիտլերյան նախկին գեներալներն ու սպաներն աստիճանաբար դուրս են մղում ղեկավար պաշտոններից իրենց արևմտյան կոլեգաներին։ ՆԱՏՕ-ում հրամանատարական պաշտոններ ունեն գերմանական 18 գեներալ և 1150 սպա։ Իսկ եթե վաղն իրականացվի ՆԱՏՕ-ի արևմտաեվրոպական ուժերի «լրիվ ինտեգրացիան» և Բունդեսվերի զինումը միջուկային զենքով, որի մասին երազում են Վաշինգտոնի անհեռատես գործիչները, ապա գերմանական միլիտարիզմի մեքենան կարող է լրիվ ուժով աշխատել։ Այն ժամանակ, ինչպես ասում են, աստված գիտի, թե ո՞վ առաջինը կճաշակի արևմտագերմանական ռևանշիզմի դառը պտուղները։

Անգլիական «Դեյլի մեյլ» թերթը գրում էր, որ Բունդեսվերի կառուցման պլանները կենսագործելուց հետո ԳՖՌ-ին բաժին կընկնի ՆԱՏՕ-ի ցամաքային ուժերի 43, ռազմա-օդային ուժերի 33, ռազմա-ծովային ուժերի 80 տոկոսը։ Այդ դեպքում Համբուրգի «Դի վելտ» թերթի արտահայտությամբ դժվար կլինի ասել, թե Բունդեսվերն ո՞ւր կշարժվի՝ դեպի Արևելք, թե՞ դեպի Արևմուտք։ Հիտլերյան նախկին գեներալ Խոյզինգերը 1958 թվականի աշնանը հայտարարեց, որ Բունդեսվերի առաջ այժմ նույն խնդիրներն են կանգնած, ինչ որ 1959 թվականին՝ Վերմախտի առաջ. «Նման է այն բանին, որ վագրի ձագը վագր է դառնում, իսկ այն, ինչ որ նախատեսվում էր ռուսական ագրեսիան զսպելու համար, սպառնալիք է դառնում ո՛չ միայն Ռուսաստանի, այլև մեզ համար։ Վտանգ գոյություն ունի, որ թույլ Եվրոպան նորից կընկնի գերիշխող Գերմանիայի գիրկը» —ընդգծում է Անգլիայի պառլամենտի անդամ Նաև Էդվարդսը։

Մի՞թե այս բոլորից հետո պարզ չէ, որ ինչքան էլ ամերիկյան ռեակցիան հակակոմունիզմի լոզունգով փորձում է համախմբել իր արևմտաեվրոպական «բարեկամներին» մեկ ընդհանուր հակասովետական ագրեսիվ կոալիցիայի մեջ, այդ երկրների և, հատկապես Անգլիայի ու Ֆրանսիայի պաշտոնական շրջանները սկսում են հասկանալ, թե ինչպիսի սարսափեցուցիչ հեռանկարներ են գծագրվում գերմանական միլիտարիզմի վերականգնումից հետո։ Հատկանշական է, որ Կենսինգտոններում անգլիական և արևմտաեվրոպական պառլամենտական գործիչների հերթական հանդիպման ժամանակ, որտեղ բացահայտորեն քննարկվում էին անգլո-գերմանական հարաբերությունները ծայրահեղ աջ պահպանողական Խինչինգբրուկը բացականչեց. «Ինչպիսի՜ ցնորամտություն են այս բոլոր խոսակցությունները գերմանական մեր դաշնակիցների և ռուսական մեր թշնամիների մասին։ Չպետք է մոռանալ, որ վերջին երկու պատերազմներում Ռուսաստանը մեր դաշնակիցն էր, իսկ Գերմանիան՝ մեր թշնամին...»։



Պատահական չէ, որ Հյուսիս-Ատլանտյան պակտի դեկտեմբերյան սեսիան ընթացավ նրա անդամների անընդհատ սրվող հակասությունների մթնոլորտում։ Բունդեսվերը միջուկային զենքով զինելու հարցը մնաց բաց Անգլիայի ու Ֆրանսիայի չեզոք վերաբերմունքի շնորհիվ։ «Դի վելտ» թերթն այդ սեսիան գնահատում էր որպես «փակուղու առաջ կանգնած բժշկական կոնսիլիում, որը հիվանդի անկողնու մոտ դեղ է փնտրում, որը կարող է հրաշք գործել, այն բանից հետո, երբ բուժման մյուս բոլոր մեթոդները արդյունք չեն տվել»։

Ուշագրավ է, որ երբ այս տարվա փետրվարին «վեցի շուկայում» մասնակցող երկրների ղեկավարների հանդիպումն ավարտվեց անարդյունք, ԱՄՆ-ի պրեզիդենտ Քենեդին մի շտապփույթ նամակով դիմեց Հյուսիս-Ատլանտյան բլոկի խորհրդին՝ ԱՄՆ-ի դաշնակիցներից խնդրելով «գոնե որոշ չափով մեղմացնել իրենց տարաձայնությունները»։

Համերաշխության ու միաբանության լոզունգների հետևում դժվար չէ տեսնել այն անվստահությունն ու շահերի անտագոնիզմը, որ սեպարատիստական տենդենցներ է ծնում իմպերիալիստական ագրեսիվ բլոկներում։ Հյուսիս-Ատլանտյան դաշինքի յուրաքանչյուր մասնակից աշխատում է չկորցնել իր ինքնուրույնությունը ոչ միայն տնտեսական, այլև ռազմա-քաղաքական հարցերում։ Այլ կերպ չի կարելի բացատրել այն, որ Ֆրանսիան ՆԱՏՕ-ի հրամանատարության տակից դուրս բերեց իր կործանիչ ավիացիան և միջերկրածովյան նավատորմը, հրաժարվեց իր տերիտորիայում ամերիկյան ատոմային ռմբակոծիչներ տեղավորելուց։ Եվ, չնայած այն բանին, որ Արևմտյան Գերմանիայի ղեկավարները ձգտում են ընդհանուր լեզու գտնել Ֆրանսիայի ղեկավար շրջանների հետ, բայց հակաֆրանսիական նոտաները հաճախ են հնչում ԳՖՌ-ի քաղաքական հորիզոնում։ Այսպես, անցյալ տարվա նոյեմբերի 10-ին Ադենաուերն իր ելույթում մեղադրում էր Ֆրանսիային այն բանում, որ նա ձգտում է յուրահատուկ քաղաքականություն վարել ՆԱՏՕ-ում, որ նա հեռացնում է Եվրոպան ԱՄՆ-ից, որ նա տառացիորեն ցանկանում է «ներսից քայքայել» Ատլանտյան դաշինքը և այլն։

Ակամա հիշում ես Վ. Ի. Լենինի այն խորաթափանց գնահատականը, որ իմպերիալիստական միությունները «ինչ ձևով էլ որ կնքվեն, մեկ իմպերիալիստական կոալիցիայի ձևով ընդդեմ մի այլ իմպերիալիստական կոալիցիայի, թե՛ բոլոր իմպերիալիստական տերությունների ընդհանրական միության ձևով,—այս միություններն անխուսափելիորեն հանդիսանում են միայն «դադարներ» պատերազմների միջև. խաղաղ միությունները նախապատրաստում են պատերազմներ և իրենց հերթին առաջանում են պատերազմներից, մեկը մյուսին պայմանավորելով, համաշխարհային տնտեսության ու համաշխարհային քաղաքականության իմպերիալիստական կապերի ու փոխհարաբերությունների հ ե ն ց մ ի և ն ո ւ յ ն հողից ծնելով խաղաղ, ու ոչ խաղաղ կռվի ձևերի փոփոխություն» (Երկեր, հ. 22, էջ 396)։

Բերված փաստերն այն բանի պերճախոս արտահայտությունն են, որ ժամանակակից պայմաններում միջիմպերիալիստական հակասությունները հանդես են գալիս, մի կողմից մեջ, որպես հակասություններ ԱՄՆ-ի և կապիտալիստական մյուս տերությունների միջև, մյուս կողմից մեջ՝ իմպերիալիստական տարբեր միավորումների մասնակիցների միջև։ Եվ ամեն մի փորձ հաշվից դուրս գցելու իմպերիալիզմի լագերում ծավալվող պայքարը, զուրկ է որևէ հիմքից։

Կասկածից վեր է, որ դեռևս այդ հակասությունները միջազգային կյանքում վճռական դեր չեն խաղում: Այդ մասին է վկայում այն փաստը, որ արևմտաեվրոպական բուրժուազիան կոմունիզմի և ազգային ազատագրական շարժումների հանդեպ ատելությունից կուրացած վաճառում է իրենց երկրների սուվերենությունը ռազմական բազաներ տրամադրելով իմպերիալիզմի ամենառազմատենչ ուժերին: Էլ ուրիշ ինչո՞վ կարելի է բացատրել այն, որ Ֆրանսիայի կառավարողները երկրի տերիտորիայում թույլ են տվել արևմտագերմանական զորքերի տեղաբաշխում: Լոնդոնի «Դեյլի Էքսպրես» թերթը միանգամայն դիպուկ կերպով մատնանշում էր, որ երբ 1944 թվականին գերմանական զորքերը նահանջում էին Ֆրանսիայից, ֆաշիստները գրում էին տների պատերի վրա, որ իրենք կվերադառնան: «Նրանք վերադարձան... Այսօր պաշտպանության մինիստր Շտրաուսը Եվրոպան դիտում է որպես մի տերիտորիա, որտեղ կարելի է աճող բանակի համար բազա ստեղծել սկսած հունական կղզիներից մինչև Շոտլանդիայի արևմտյան կղզիները»:

Սակայն ինչքան էլ որ իմպերիալիստները ջանքեր թափեն միասնական ճակատ ստեղծելու սոցիալիզմի ու ազգային-ազատագրական շարժումների դեմ, ինչքան էլ որ այդ ուժերի նկատմամբ ունեցած բիոլոգիական ատելությունից արբեցած արևմտաեվրոպական բուրժուազիան զոհաբերում է իր երկրների սուվերենությունը, միևնույն է, իմպերիալիզմն անզոր է փրկվելու իր սեփական հակասությունների մահացու գալարումներից:

Իմպերիալիստական պետությունների միջև ծավալվող հակասություններն ընդհարումների սերմեր են ցանում կապիտալիզմի լագերում: Իր սեփական հակասությունների մագիլներից դուրս պրծնելու համար իմպերիալիզմը կարող է ռազմական ավանտյուրաների ուղին ընտրել: Ուստի, ինչպես երբեք, այսօր ժողովուրդներն ուժեղացնում են իրենց զգոնությունը: Նրանք անխոնջ պայքար են մղում պատերազմի հրձիգների հանցագործ ճանապարհը փակելու համար:

---

# ԴՐԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԻ ՄԵԾ ՈՒԺԸ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցումը պահանջում էր աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, նոր կարգապահություն, մարդկանց միջև հասարակական արտադրության նոր կապեր, որոնք, բնականաբար, չէին կարող իսկույն ստեղծվել: Այդ առումով էլ Վ. Ի. Լենինը ասում էր.

«Աշխատանքի նոր կարգապահություն կառուցել, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր կառուցել, մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու պրիոմներ կառուցել — դա շատ տարիների և տասնամյակների աշխատանք է:

Դա շատ շնորհակալ և շատ ազնիվ աշխատանք է:

Մեր բախտն է, որ, տապալելով բուրժուազիային և ճնշելով նրա դիմադրությունը, մենք կարողացանք մեզ համար նվաճել հող, որի վրա այդպիսի աշխատանքը **հնարավոր դարձավ**:

Եվ մենք այդ աշխատանքին ձեռնամուխ կլինենք ամբողջ եռանդով: Տոկունություն, հաստատակամություն, պատրաստակամություն, վճռականություն և հարյուրավոր անգամ փորձելու, հարյուրավոր անգամ ուղղելու և, ինչ էլ որ լինի, նպատակին հասնելու ունակություն — այդ հատկությունները պրոլետարիատն իր համար մշակել է 10, 15, 20 տարիներում մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան, նա դրանք մշակեց երկու տարվա ընթացքում, այդ ռևոլյուցիայից հետո, կրելով չտեսնված զրկանքներ, սով, քայքայում, աղետ: Պրոլետարիատի այդ հատկությունները երաշխիք են, որ պրոլետարիատը կհաղթի» (Երկեր, հատ. 30, էջ 662—663):

Վ. Ի. Լենինի խոսքերն ամբողջովին իրականացան: Ռուսաստանի պրոլետարիատը հաղթանակեց և Սովետական իշխանության առաջին իսկ տարիներին ցուցաբերեց ստեղծագործական աշխատանքի այնպիսի անզուգական օրինակներ, ինչպիսիք էին կոմունիստական առաջին շաբաթօրյակները: Դրանք աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմաններ ստեղծելու գործում բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնության փայլուն դրսևորումն էին:

Կոմունիստական առաջին շաբաթօրյակները Վ. Ի. Լենինն անվանեց «Մեծ նախաձեռնություն»՝ սկիզբը մի հեղաշրջման, որն ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական էր, քան բուրժուազիայի տապալումը: Իր հանճարեղ մտքի խորաթափանցությամբ նա կոմունիստական շաբաթօրյակների մեջ տեսավ կոմունիզմի ծիլերը, շարքային բանվորների կամավոր

ու ստեղծագործական աշխատանքի դրական օրինակը, որն իր մեծ ուժով միլիոնավոր մարդկանց ոտքի էր հանում սոցիալիստական շինարարության գործը յոթմղոնանոց քայլերով առաջ մղելու։

Ընթանալով մեծ Լենինի գծած ուղիով, սովետական ժողովուրդը տնտեսության, կուլտուրայի ու գիտության բնագավառներում իր կատարած ստեղծագործական աշխատանքով պատմականորեն կարճ ժամանակում հասավ զարգացման բարձր աստիճանի։

Մեր երկրի հետագա զարգացման համար նոր, ավելի լայն հեռանկարներ է բացել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, որի ժամկետից շուտ կատարումը սովետական ամեն մի քաղաքացի համարում է իր պատվի ու փառքի գործը։

Յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցումն արագացնելու համար սովետական ժողովրդի մղած պայքարի ընթացքում ծնվում են արտադրության հազարավոր ու տասնյակ հազարավոր տաղանդավոր նորարարներ ու կազմակերպիչներ, նորի, առաջավորի իսկական ջահակիրներ, որոնք իրենց փառավոր գործերով մեզ մոտեցնում են կոմունիզմին։ Մեր կյանքի բոլոր ասպարեզներում նրանք ցույց են տալիս ստեղծագործական աշխատանքի վառ օրինակներ և գործնականում ապացուցում սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի հանդեպ՝ նախ և առաջ աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում մեծ դեր է խաղում դրական օրինակը, այն մարդկանց օրինակը, որոնք փնտրում ու գտնում են աշխատանքի նոր, առաջավոր ձևեր ու մեթոդներ, կատարելագործում են տեխնիկան ու արտադրության տեխնոլոգիան։ Նրանք լավ են հասկացել Լենինի այն միտքը, թե աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։

Խիստ բնորոշ է, որ մեզ մոտ աշխատանքի արտադրողականությունն աճում է ոչ թե մարդու ֆիզիկական աշխատանքն ավելացնելու, այլ արտադրությունը մեքենայացնելու և ավտոմատացնելու, նորագույն տեխնիկան օգտագործելու, արտադրության կազմակերպումն ու ղեկավարումը կատարելագործելու և բանվորների մասնագիտական որակավորումը բարձրացնելու միջոցով։ Այդ գործում հրաշալի օրինակ են ցույց տալիս արտադրության առաջավորները, սովետական ժողովրդի անվանի զավակներն ու դուստրերը։

Բերենք մի քանի օրինակ։

Երևանի կոմպրեսորների գործարանի Հ. Քամալյանի ղեկավարած ցեխի կոլեկտիվը, մտնելով ՍՄԿԿ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, որոշել է ընթացիկ տարում ավտոմատացնել եռակցման աշխատատար բոլոր պրոցեսները։ Կոլեկտիվի ուժերով նախագծվել և արդեն պատրաստվել է ավտոմատ եռակցման երկու նոր ստենդ։ Նոր հարմարանքների գործարկմամբ ավտոմատացվել է օդահավաքման օղակաձև և ուղղաձիգ կարերի եռակցումը։ Դրանով 1,5—2 անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

Նույն գործարանի գործիքային ցեխի առաջավոր բանվոր Հրանտ Նալբանդյանը պատրաստել է մի նոր հարմարանք, որի գործարկումով աշխատանքի արտադրողականությունը բարձրանալու է երեք անգամ։



Ամբողջ երկրին հայտնի դոնեցի ածխահատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Նիկոլայ Մամայը աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ կիրառելու շնորհիվ գործնականում ցույց տվեց, որ կարելի է ավելի շատ ածուխ արդյունահանել, քան նախատեսված է պլանով։ Նրա ղեկավարած բրիգադան, որը նվաճել է կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչումը, անցյալ տարի պարտավորվել էր պլանից ավելի արդյունահանել հինգ հազար տոննա ածուխ։ Այդ բարձր պարտավորությունը բրիգադան կատարեց տասն ու կես ամսում։ Բրիգադայի անդամները 10 ամսում աշխատանքի արտադրողականությունը բարձրացրին 20 տոկոսով, զգալիորեն իջեցրին արդյունահանվող վառելիքի ինքնարժեքը։

Ն. Մամայի ղեկավարած բրիգադան բավարարվե՞ց արդյոք այդ նշանավոր հաղթանակով։ Ոչ, չբավարարվեց։ Հանքում աշխատանքի արտադրողականությունն էլ ավելի բարձրացնելու նպատակով, բրիգադան համարձակորեն գործողության մեջ դրեց «ՈՒԿՐ» նոր կոմբայնը և ամբողջապես մեքենայացրեց ածխի դուրսբերման աշխատատար պրոցեսները։ Դրա շնորհիվ բրիգադան մինչև տարվա վերջը պլանից դուրս երկրին տվեց ևս հարյուրավոր տոննա որակյալ ածուխ։

Կոմունիստական պարտիայի կողմից դաստիարակված մարդիկ երբեք չեն հանգստանում ձեռք բերած հաջողություններով։ Նրանք քաջ գիտեն, որ իրենց առջևում կան ավելի բարդ խնդիրներ, նոր բարձունքներ։ Հասնել աշխատանքային նորանոր հաջողությունների, հայտաբերել ու գործողության մեջ դնել նորանոր ռեզերվներ, ներդնել նոր տեխնիկա, ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը — ահա թե ինչի են ձգտում Սովետական երկրի բոլոր աշխատավորները։ Նրանցից յուրաքանչյուրն աշխատում է որքան կարելի է շատ արտադրանք տալ և իր լուման մուծել յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու, մեր ժողովրդի համար աշխարհում ամենաբարձր կենսամակարդակն ապահովելու մեծ գործում։

Այդ ուղղությամբ կատարվող աշխատանքում մեծ դեր է խաղում դրական օրինակը, որի ուժը ցայտուն կերպով երևում է գյուտարարական ու ռացիոնալիզատորական ասպարեզներում։ Արտադրության բազմաթիվ առաջավորներ կատարելագործում են մեքենաներն ու գործիքները, գտնում են աշխատանքի ավելի ռացիոնալ ձևեր ու մեթոդներ, որոնք մեծ օգուտ են տալիս ժողովրդական տնտեսությանը։ Ամեն մի գյուտ կամ նորարարական առաջարկություն լուրջ հետաքրքրություն է առաջացնում տվյալ կոլեկտիվում, շարժում բոլորի մտքերը, որոնք ձգտում են հավասարվել առաջավորներին։ Սովետական մարդուն հատուկ հասարակական ակտիվությունը, ընդհանուրի շահերի համար ոչինչ չխնայելը ցանկալի արդյունքի են հասցնում։

Այդ են ցույց տալիս գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժման ծավալն ու թափը։ Բավական է ասել, որ միայն 1960 թվականին երկրում մոտավորապես 2 միլիոն 400 հազար գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ արտադրության կատարելագործման ավելի քան 4 միլիոն առաջարկություն են արել։ Ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են ավելի քան 2 միլիոն 500 հազար գյուտեր և ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնք տարեկան տալիս են մոտավորապես 1,4 միլիարդ ռուբլու խնայողություն։

Մեր ռեսպուբլիկայից միայն Կիրովականի քիմիական կոմբինատի առաջավորները մեկ տարվա ընթացքում արել են 873 ռացիոնալիզատորական առաջարկություն, որից արտադրության մեջ ներդրվել են 496-ը: Դրանից ձեռնարկությունը ստացել է 200 հազար ռուբլու տնտեսական օգուտ (նոր փողով):

Քիմիական կոմբինատի կոլեկտիվի ռացիոնալիզատորների 75 տոկոսից ավելին բանվորներ են: Նրանցից կարբիտի ցեխի մեխանիկ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Առաքելյանի առաջարկությամբ փոխվել է ցիանական միացությունը թմբուկի մեջ լցնելու և նստեցնելու պրոցեսը, որը տարեկան տալիս է մի քանի տասնյակ հազար ռուբլու (նոր փողով) տնտեսական օգուտ:

Դեռևս 1920 թվականին Վ. Ի. Լենինը նշում էր. մենք կաշխատենք մասսաների գիտակցության մեջ, սովորույթի մեջ արմատավորել «բոլորը մեկի և մեկը բոլորի համար» կանոնը, աստիճանաբար, բայց անշեղորեն մտցնել կոմունիստական կարգապահություն և կոմունիստական աշխատանք: Լենինյան այս պատգամի կենսագործման ուղղությամբ Կոմունիստական պարտիան, ամբողջ ժողովուրդը կատարել ու կատարում են առաջընթաց խոշոր քայլեր: Աշխատանքը ծանր բեռից, ինչպիսին կապիտալիստական հասարակարգումն է, մեզ մոտ դարձել է փառքի և պատվի գործ:

Արտադրության միջոցների հանրային սեփականությունը, մարդու կողմից մարդու շահագործման վերացումը, ըստ աշխատանքի որակի ու քանակի վարձատրությունը մարդկանց մոտ նոր վերաբերմունք է առաջ բերել աշխատանքի հանդեպ: Այդ գործում որոշակի դեր են խաղում անձնական նյութական շահագրգռվածությունն ու աշխատանքի նկատմամբ բարոյական գործոնները, որոնց ճիշտ զուգակցումը լավ նախապայմաններ են ստեղծում առաջընթաց շարժման համար, նյութական բարիքների արտադրության առատության և դրա հիման վրա՝ ըստ աշխատանքի բաշխման սկզբունքից, ըստ պահանջմունքի բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար:

Այժմ, երբ մեր երկիրը գտնվում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, մեծ նշանակություն են ստանում աշխատանքի նկատմամբ ինչպես նյութական շահագրգռվածության, այնպես էլ բարոյական գործոնների զարգացումը: Բարոյական գործոնն, իհարկե, նույնպես նյութական շահագրգռվածություն է, բայց դա ոչ թե անմիջականորեն անձնական նյութական շահագրգռվածություն է, այլ ընդհանուրի, ամբողջ հասարակության նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման բարձր գիտակցություն, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք, որի հետագա զարգացման գործում նշանակալից դեր է խաղում դրական օրինակը: Դրա վառ ապացույցներից է Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վալենտինա Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությունը, որը քաջ հայտնի է բոլորին:

Աշխատանքի նկատմամբ Գագանովայի ցույց տված կոմունիստական վերաբերմունքի օրինակն իրեն դրսևորեց ամբողջ ուժով. այն լայնորեն տարածվեց ՍՍՌՄ բոլոր ռեսպուբլիկաներում: Նրա օրինակով արտադրության հազարավոր առաջավորներ աշխատանքի անցան ետ մնացող բրիգադաներում ու տեղամասերում և նրանց հասցրին առաջավորներին: Այստեղ, բնականաբար, նրանք ժամանակավորապես նյութական վնաս կրեցին, բայց դրա փոխարեն օգտվեցին մյուսները, ամբողջ հասարակությունը:

Աշխատանքի ու վարձատրության նկատմամբ կոմունիստական վերաբեր-



մունքի փայլուն օրինակ տվեց նաև հայտնի խոզապահ Յա. Ջիժը: Նա կոլտնտեսության վարչությունում երեք անգամ առաջարկություն է մտցրել խոզերի կերակրման վարձաչափը իջեցնելու մասին: Հանդես գալով ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումում, նա ասաց. ես կոլտնտեսության վարչությունից խնդրեցի մեկ անգամ ևս վերանայել աշխատանքի դիմաց վճարման չափը: Իմ աշխատանքի պայմաններն ամեն անգամ բարելավվում են և ցածր արտադրական նորմաների դեպքում աշխատավարձը մնում է բարձր: Մինչդեռ խոզերի կերակրման պայմանները բարելավում է մեծ կոլեկտիվը և անարդարացի կլիներ, եթե դրանից օգտվեր միայն մեկ մարդ: Այո, առաջավոր մեթոդը ես չեմ համարում իմ սեփականությունը, որով կարելի է առևտուր անել, այն սովետական ժողովրդի ձեռք բերածն է: Բոլոր առաջավորներին ուզում եմ ասել, որ եթե դուք ցույց եք տալիս, թե ինչպես կարելի է նոր ձևով աշխատել, նախ թելադրեք, որ չմնան հին նորմաներն ու վարձաչափը:

Շարքային կոլտնտեսականի մեջ առաջացած այս նոր տրամաբանությունը, նրա դրական օրինակն անձնական ու հասարակական շահերի միասնության դրսևորումն է, ընդհանուրի բարօրության վեհ ձգտումը:

Բայց, ցավոք սրտի, դեռևս մեզ մոտ կան նաև այնպիսի մարդիկ, որոնք անձնական շահն են առաջ մղում, ձգտում են թեթև աշխատանքով մեծ եկամուտ կորզել, ուրիշի աշխատանքի հաշվին ապրել: Նրանցից ոմանք գողում են հասարակական ունեցվածքը, զբաղվում են սպեկուլյացիայով, խուսափում են հասարակական հանրօգուտ աշխատանքից: Այդպիսի մարդկանց նկատմամբ, որքան էլ փոքր լինի նրանց թիվը, պետք է համապատասխան միջոցներ ձեռք առնել: Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակությունը, ներկա պայմաններում «ով չի աշխատի, նա չի ուտի» սկզբունքի անխախտ կենսագործումը, լոդրների և պորտաբույծ տարրերի մնացորդների դեմ պայքարը պետք է գտնվեն պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, մեր ամբողջ հասարակայնության ուշադրության կենտրոնում:

Ամենաարդար հասարակարգի՝ կոմունիզմի կառուցման կոնկրետ ուղիները սահմանելով, ՍՄԿՊ-ն սովորեցնում է հոգատարությամբ պաշտպանել բանվորների ու գյուղացիների ամեն մի արժեքավոր նախաձեռնություն, որն արտահայտում է ռևոլյուցիոն գիտակցական ստեղծագործություն: Մեր օրերում այդպիսի նախաձեռնության հրաշալի օրինակ է կոմունիստական աշխատանքի բրիգադայի ու հարվածայինի կոչման համար ծավալված մրցությունը: Այդ մրցության նախաձեռնողները եղան Մոսկվա—Ռյազան, Մոսկվա—Սարտիրովոչնայա դեպոյի աշխատողները: Նրանք իրենց դրական օրինակով, հայրենասիրական նոր նախաձեռնությամբ միլիոնավոր մարդկանց պայքարի դուրս բերին կոմունիստաբար աշխատելու, ապրելու և սովորելու համար: Դա սոցիալիստական մրցության զարգացումն է, նրա ավելի բարձր աստիճանը:

Հետապնդելով վեհ նպատակներ և ունենալով մեծ ապագա, կոմունիստական աշխատանքի ու հարվածայինի կոչման համար ծավալված մրցությունը ջերմ պաշտպանություն և ամենալայն տարածում գտավ ամբողջ երկրում: Այժմ այդ մրցությանը երկրում մասնակցում են ավելի քան 8 միլիոն բանվոր ու ծառայող: Մեզ մոտ, Հայաստանում մինչև անցյալ տարվա կեսերը կոմունիստական աշխատանքի ու հարվածայինի կոչման համար մրցում էին մոտ 22 հազար մարդ: Այդ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայում 250 կոլեկտիվ

արժանացան կոմունիստական աշխատանքի բարձր կոչման, իսկ 2000 բանվորի շնորհվեց կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում:

Կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժումը, որպես մեծ
ուժ ունեցող դրական օրինակ, չմնաց միայն բրիգադաներում, հերթափոխու-
թյուններում ու ցեխերում: Այն տարածվեց խորությամբ ու լայնությամբ և
ընդգրկեց ամբողջ ձեռնարկություններ ու առանձին քաղաքներ: Երկրում
ավելի քան 50 ձեռնարկություն արդեն նվաճել են կոմունիստական կոչվելու
իրավունք: Դրանցից է Մոսկվա-Սարտիրովոչնայա լոկոմոտիվային դեպոն,
որի աշխատողների կոլեկտիվին ընկեր Ն. Ս. Խրուշչովը ջերմորեն շնորհավո-
րեց կոմունիստական աշխատանքի ձեռնարկության բարձր կոչում շնորհելու
առթիվ:

Կոմունիստաբար աշխատելու նոր շարժումն իր հետ բերում է դրական
օրինակի բազմապիսի ձևեր: Առաջավոր ձեռնարկությունների շատ բրիգադա-
ներում, ցեխերում ու հերթափոխություններում բանվորներն իրենք են կատա-
րում աշխատանքի հաշվառումը, աշխատում են առանց տեխնիկական վերա-
հսկողության: Այսպես, օրինակ, Ռոստովի շոգեքարշային նորոգման գործա-
րանի Վ. Բոլենկոյի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայում
չկա մեկը, որ խոտան արտադրանք տա և բարեխղճորեն չկատարի իր գործը:
Այստեղ յուրաքանչյուր բանվոր պատասխանատվություն է զգում ոչ միայն
իր, այլև ընկերոջ աշխատանքի համար: Նրանք տալիս են միայն բարձրորակ
արտադրանք և աշխատում առանց խոտանող հսկիչի:

Կոմունիստաբար աշխատող բանվորները գտան, որ ցեխում ավելորդ է
նաև տաբելշչիկը:

— Շչակը տալուն պես մենք արդեն աշխատանքի տեղում ենք և լիովին
վստահում ենք բրիգադայի բոլոր անդամներին. գիտենք, որ նրանք աշխա-
տանքից չեն ուշանա. հետևապես կարիք չկա, որ մեկ ուրիշը հսկի ու հաշվա-
ռում անցկացնի,— պարտկոմում առաջարկեցին բրիգադայի անդամները:
Նրանց առաջարկությունն ընդունվեց:

Տարիներ շարունակ բրիգադայում կար օժանդակող բանվոր, որը դետալ-
ներ էր մոտեցնում, հարկ եղած դեպքում դրանք կտրելու կամ եռակցելու հա-
մար մասնագետ հրավիրում: Բրիգադայի անդամները միմյանց հետ խորհրր-
դակցեցին և գտան, որ այդ աշխատանքներն իրենք էլ կարող են կատարել:
Նրանք հրաժարվեցին օժանդակող բանվորից և որակյալ գազաեռակցում կա-
տարողների մոտ սովորեցին այդ մասնագիտությունը, որի շնորհիվ այժմ դե-
տալների ամբողջ նորոգումը (սկզբից մինչև վերջ) իրենք են կատարում:
Պրակտիկան ցույց տվեց, որ աշխատանքի այս ձևը պրոգրեսիվ է:

Բրիգադայի անդամները երբեք չեն հանգստանում ձեռք բերած հաջողու-
թյուններով: Նրանք որոշել են յոթնամյա պլանով նախատեսված աշխատանքի
արտադրողականության բարձրացման առաջադրանքը կատարել հինգ տա-
րում: Դրա համար նրանք փոխեցին կրակակայլների հավաքման տեխնոլոգիան,
ներդրեցին դրանց նորոգման խմբային մեթոդը, բարելավեցին աշխատանքի
կազմակերպումը և բրիգադայում մտցրին տնտեսական հաշվարկը:

Այժմ տեսնենք, թե բրիգադայի նոր ձևով աշխատանքը տնտեսական ինչ
արդյունք է տվել:

Առանց հսկիչի աշխատելու շնորհիվ բրիգադան կարճ ժամանակում խնա-
յել է 270 ռուբլի (այս և հետագա դրամական հաշվարկները տրվում են նոր



փողով), իսկ կաթսայական ցեխը, որն ընդօրինակել է այդ բրիգադային և
հսկիչների թիվը կրճատել կրկնակի չափով, տնտեսել է 2500 ռուբլի: Եթե նկա-
տի ունենանք, որ տվյալ գործարանում հսկիչների վարձատրության համար
տարեկան ծախսվում է 28400 ռուբլի, իսկ տաբելշչիկների համար՝ 4400 ռուբլի,
ապա պարզ կդառնա, թե Վ. Բոլենկոյի ղեկավարած կոմունիստական աշխա-
տանքի բրիգադայի՝ ինքնահսկման ու ինքնասպասարկման առաջավոր եղա-
նակի ամենուրեք արմատավորումը ինչպիսի մեծ օգուտ կտա երկրի ժողովըր-
դական տնտեսությանը:

Հաշվի առնելով այդ, առանձին ձեռնարկություններ, բազմաթիվ բրիգա-
դաներ ու ցեխեր ընդօրինակել են Բոլենկոյի ղեկավարած բրիգադային: Այս-
պես, օրինակ, Բաքվի վագոնանորոգման գործարանում արտադրանքի քանակի
ու որակի հսկողությունն այժմ կատարում են հենց իրենք՝ բանվորները: Նրանք
ինքնուրույն կերպով փակում են կարգագրերը և չկա հավելագրման կամ ան-
որակ արտադրանքի որևէ դեպք:

Երևանի Կիրովի անվան գործարանի 30—30ա և մի քանի այլ ցեխերի
կոլեկտիվներ սկսել են աշխատել առանց տեխնիկական վերահսկողության:
Դրա շնորհիվ գործարանի ցեխերում տեխնիկական վերահսկողության 36 աշ-
խատողի փոխարեն մնացել են 11-ը և դրանից գործը միայն շահել է: Բան-
վորներն իրենց բարձր գիտակցականության շնորհիվ տալիս են միայն բարձր
որակի արտադրանք և հետզհետե ավելի են զարգացնում աշխատանքի ինք-
նահսկման ու ինքնասպասարկման առաջավոր եղանակը:

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում առաջացած այդ
դրական օրինակի՝ ինքնահսկման ու ինքնասպասարկման գլխավոր էությունը
կայանում է նրանում, որ այն բերում է ոչ միայն միջոցների տնտեսում և աշ-
խատանքի արտադրողականության աճում, այլև բանվորների գիտակցականու-
թյան զարգացում, աշխատանքում բարոյական խթանի դերի բարձրացում:

Կոմունիստական աշխատանքի համար մրցությունում դրական օրինակի
ուժը դրսևորվում է նաև կոլեկտիվիզմի, ընկերական փոխօգնության մեջ: Կո-
մունիստաբար աշխատողներն իրենց համար ընտրել են «Բոլորը մեկի, մեկը՝
բոլորի համար» նշանաբանը: Հավատարիմ այդ նշանաբանին, նրանք իրենց
գիտելիքները, հմտությունը տալիս են աշխատանքային ընկերոջը, ժամանակին
օգնության հասնում ետ մնացողներին:

Այդպիսի բան չկա ու չի կարող լինել կապիտալիստական հասարակար-
գում, ուր արտադրության այս կամ այն առաջավոր եղանակը, տեխնիկական
հայտնագործությունը մնում է որպես անհատ մարդու սեփականություն, ծա-
ռայում է միայն նրա օգտին: Այս տեսակետից հատկանշական է հետևյալ
երևույթը, որին արտասահմանում եղած ժամանակ ականատես է եղել կոմու-
նիստական առաջին շաբաթօրյակների մասնակից Յա. Մ. Կոնդրատևը:

— Ձեռնարկություններից մեկում,— պատմում է նա,— ես տեսա բա-
վականին տարօրինակ պատկեր. ցեխում, ուր զբաղված էին հարյուրավոր
բանվորներ, փայտյա վահանիկի հետևի անկյունում մենակ աշխատում էր ինչ
որ մարդ:

— Ի՞նչ է պատահել նրան,— հարցրի ինժեներից, որն ինձ ցույց էր տալիս
ձեռնարկությունը:

— Դե, առանձնապես ոչինչ, հենց այնպես: Նա ստեղծել է հարմարանք-
ներ, որոնց օգնությամբ երկու անգամ ավելի արտադրանք է թողարկում, քան

մյուսները։ Եվ, բնականաբար, չի ուզում, որպեսզի մյուսները օգտվեն իր նվաճումից, դրա համար էլ ծածկվել է։

Սրա կողքին որքան վեհ ու ազնիվ են կոմունիստաբար աշխատողները, սովետական մարդիկ, որոնց մոտ թագավորում է կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունը։ Նրանք իրենց հայտնագործությունները, տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման պրոգրեսիվ եղանակները, աշխատանքի դրական օրինակները սիրով հաղորդում են բոլորին։ Չէ որ սովետական ամեն մի քաղաքացի գիտի, որ հասարակական հարստության աճման համար անհատ մարդկանց ռեկորդները միայն բավական չեն։

Նյութական բարիքների լիակատար առատություն ստեղծելու և բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար հասարակության բոլոր անդամները, բոլոր կոլեկտիվները պետք է բարձր արտադրանք տան։ Դա համարելով իրենց հիմնական նպատակը, սովետական մարդիկ հրաշալի օրինակներ են ցույց տալիս միմյանց օգնելու գործում։ Այստեղ ինչպե՛ս չնշել Ստալինգրադի ձեռնարկություններում, հատկապես նավաշինարանում տարածված մրցության նոր ձևը, որը կոչվում է «Մեկ–երկու»: Դա նշանակում է, որ արտադրության մեկ առաջավորը պարտավորություն է ստանձնել օգնելու եռ մնացող երկու ընկերոջ՝ աշխատանքում և ուսման մեջ առաջավոր դառնալու։ Այս ազնիվ քայլին նրանք դիմել են գիտակցորեն, առանց որևէ վարձատրության: Մեր կյանքը լի է այդպիսի բազմաթիվ օրինակներով, որոնք կոլեկտիվիզմի, ընկերական փոխօգնության վառ արտահայտությունն են։

Դրական օրինակի ուժը լայն մասշտաբներով դրսևորվում է նաև կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Սոցիալիստական գյուղատնտեսության մեջ ևս աճել են շատ նորարարներ, արտադրության առաջավորներ, որոնցով սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում նրանք հասել են լուրջ հաջողությունների, որը հիացմունք է պատճառում բոլորին։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի խոսքերով ասած՝ գյուղատնտեսության արտադրության առաջավորները մեր փարոսներն են, որոնք նշում են գյուղատնտեսությունը օրինակելիորեն վարելու ամենաբարձր արտադրողականության ուղին։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման բնագավառում այդպիսի անվանի վարպետներից են ամբողջ երկրին հայտնի օղակավար Ի. Դոլինյուկը, որը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 167 ցենտներ եգիպտացորենի հատիկ, մեխանիզատորներ Ֆ. Բոնդարենկոն և Դ. Կոսենկոն, որոնք աճեցրել են 26.000 ցենտներ ճակնդեղ, բրիգադավար Պ. Ատրեկալովը, որի ղեկավարած բրիգադան հեկտարից ստացել է 120 փութ հնդկացորեն և 120 փութ կորեկ, բրիգադավարներ Հ. Մկրտչյանը և Ա. Ենգիբարյանը, որոնց ղեկավարած բրիգադները գարնանացան ցորենի 150 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 53 ցենտներ բերք, օղակավարուհի Ս. Ներսիսյանը, որը յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 34,5 ցենտներ ծխախոտ և այսպիսի բազմաթիվ ընկերներ, որոնք իսկական հերոսություն են ցուցաբերում աշխատանքում։

Նույնը պետք է ասել անասնաբուծության բնագավառում աշխատող հազարավոր առաջավորների մասին, որոնք լուրջ հաջողությունների են հասել



կաթի, մսի, ձվի, բրդի և անասնաբուծական մյուս մթերքների արտադրության ավելացման ասպարեզում։ Ահա նրանցից թռչնապահ Ա. Գետմանը, որը խնամելով 12000 հավ, ստացել է 2 միլիոն 114 հազար ձու, կթվորուհիներ Տ. Կուզմինան, որը մեկ կովից ստացել է 6297, իսկ Ա. Ավետիսյանը՝ 5823 կիլոգրամ կաթ։ Հովիվ Մ. Թունյանը 369 մայր ոչխարից ստացել է 470 գառ և յուրաքանչյուր ոչխարից 5,5 կիլոգրամ բուրդ։ Հետևելով հայտնի խոզապահ Զիժի օրինակին և պրակտիկայում արմատավորելով խոզերի խնամքի ու բտման նրա առաջավոր փորձը, անվանի խոզապահ Բարտուլիսը բտել է 4015, իսկ Պերեշիվկովան՝ 5204 խոզ։ Ընկ. Գրաչովի ղեկավարած Կալինովկա գյուղի կոլտնտեսությունը (Կուրսկի մարզ) հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց արտադրել է 160 ցենտներ միս և 758 ցենտներ կաթ։ Այսպիսի շատ ու շատ օրինակներ կարելի է էլի բերել։ Այդ օրինակներն ասում են այն մասին, թե ինչպես կոլտնտեսային ու սովխոզային արտադրության առաջավորները ագրոզոոտեխնիկների, առաջավոր փորձի և գյուղատնտեսական գիտության նորագույն նվաճումների արմատավորման շնորհիվ խոշոր հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ «Սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորներն ու նորարարները աշխատանքային հրաշալի հատկությունները, գործը խելացիորեն և ռացիոնալ կերպով կառուցելու, տնտեսությունը վարելու հմտությունը ցուցադրում են բազմաթիվ օրինակներով։ Կարծում եմ, որ ներկա պլենումի աշխատանքին մասնակցող բոլոր ընկերների համար հաճելի է ավելի շատ լսել այդպիսի մարդկանց, ուրախանալ նրանց գործերով։ Լսում ես պլենումի նիստի օրերին այս ամբիոնից հանդես եկած ընկերներին և հպարտանում ես նրանցով։ Կարծում եմ՝ չեմ սխալվի, եթե ասեմ, որ այդ ընկերների ճառերի մեջ մեզ բոլորիս զարմացնում էր գործիմացությունը, իրենց մասնագիտությանը սիրահարված լինելը, կրքոտությունն ու շահագրգռվածությունը։ Այդ խոսողները անտարբեր մարդիկ չէին։ Նրանք պլենում էին բերել ոչ թե շաբլոն ֆրազների հավաքածու, այլ մտածված, սրտաբուխ խոսքեր, մեզ պատմում էին իրենց խոհերը։

Այդպիսի մարդիկ եթե ասեն՝ կանեն, իսկ անելով, մտածում են՝ ինչպես շարունակեն առաջ շարժվել։ Այդպիսի մարդկանց հետ մեր աշխատանքը հաջողությամբ գլուխ կգա, այդպիսի մարդկանց վրա է հենվում մեր պարտիան»։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը արմատական միջոցառումներ մշակեց սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հետագա հզոր վերելքի համար։ Պլենումի մշակած միջոցառումների թվում առանձնահատուկ տեղ է գրավում գյուղատնտեսության առաջավորների հարուստ փորձի, նրանց դրական օրինակի տարածումն ու արմատավորումը։ Դա գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, ետ մնացող կոլտնտեսություններին առաջավորների մակարդակին հասցնելու լավագույն միջոցներից մեկն է, որի կենսունակությունը, ժողովրդա-տնտեսական մեծ նշանակությունը ապացուցված է կյանքում։

Գյուղատնտեսության արտադրության հետագա զարգացման համար առանձնապես կարևոր նշանակություն ունի հողագործության և անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ եղած դրական փորձի արմատավորումը, որը հնարավորություն է տալիս միջոցների ու աշխատանքային քիչ ծախսումներով ավելի շատ մթերքներ ու հումք արտա-

դրել։ Այդ գործում հրաշալի նախաձեռնություն ցուցաբերեց Ուզբեկստանի տաղանդավոր կոլտնտեսուհի Թուրսունոյ Ախունովան։

Թ. Ախունովան համարձակորեն ուսումնասիրեց չանաքի մեքենան, հասկացավ նրա լեզուն ու դարձավ հմուտ վարորդ։ Նա բերքահավաքի ժամանակ չանաքի մեքենայով հավաքեց 322 տոննա բամբակ, փոխարինելով 160 մարդու ձեռքի աշխատանքին։ Ախունովայի դրական օրինակը դրսևորվեց իր ամբողջ ուժով. միայն Ուզբեկստանում 1166 կանայք ու աղջիկներ նրա օրինակով ուսումնասիրեցին չանաքի մեքենաները, դարձան վարորդներ և հաջողությամբ հավաքեցին բամբակի բերքը։ Ռեսպուբլիկան մեքենաներով հավաքեց 500 հազար տոննա բամբակ։ Հենց այդ էլ նկատի ունենալով, ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ ուզբեկ կանանց նախաձեռնությունը իսկապես հեղաշրջող նշանակություն ունի։ Այն համոզում է, որ կարելի է կարճ ժամկետում լուծել չանաքի մեքենայացման պրոբլեմը։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում հրաշալի նախաձեռնություն ցուցաբերեց Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի Կիրովի անվան կոլտնտեսության երիտասարդական բրիգադայի բրիգադավար Գրիգոր Բարսեղյանը։ Նա առաջինն էր, որ սեփական նախաձեռնությամբ հիմք դրեց «Հարուստ հեկտարի համար» շարժմանը։ Հայրենասեր, անվանի կոլտնտեսականն իր առջև խնդիր էր դրել՝ հարուստ հեկտարներ ստեղծելու միջոցով բրիգադային ամրացված ամբողջ հողատարածությունից, ընդ որում անբերրի համարվող 20 հեկտար այգիներից, ստանալ բարձր բերք։ Այդ բանին հասնելու համար նա բրիգադայի անդամների հետ միասին հետևողականորեն կիրառեց ագրոմիջոցառումների կոմպլեքսը, յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովեց անհրաժեշտ քանակությամբ բույսեր, հոգատարությամբ խնամեց այգիներն ու ցանքատարածությունները։ Այլ կերպ ասած, նա բարելավեց հողամշակության կուլտուրան և ստեղծեց լիարժեք հեկտարներ, որոնք առատորեն վարձատրեցին կոլտնտեսականների կատարած աշխատանքը։

Բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացավ 43 ցենտներ բամբակ, 137 ցենտներ խաղող, մոտ 590 ցենտներ սոխ, 481 ցենտներ պոմիդոր և 700 ցենտներ վարունգ, որոնց ինքնարժեքը մյուս բրիգադաներում արտադրված մթերքների ինքնարժեքից մոտ 80—120 տոկոսով ցածր էր։

«Հարուստ հեկտարի համար» շարժումը գյուղատնտեսությունն ինտենսիվ ձևով վարելու դրական օրինակ էր, որն իր ամենալայն տարածումը գտավ Հայաստանի կոլտնտեսություններում, սովխոզներում, ինչպես նաև եղբայրական ռեսպուբլիկաների բազմաթիվ շրջաններում։ Այդ արժեքավոր նախաձեռնությունը պաշտպանվեց և հավանության արժանացավ Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի կողմից։

Բերքատվության բարձրացման գործում ստեղծագործական աշխատանքի փայլուն օրինակ տվեց նաև Ախուրյանի շրջանի Ախուրիկ գյուղի կոլտնտեսության երիտասարդ ճակնդեղագործուհի Սեդա Սարգսյանը։

Սեդան կոլտնտեսային արտադրություն է եկել 1958 թվականին, դաշտավարական տեխնիկումն ավարտելուց հետո։ Սկզբում կոլտնտեսության նախագահը ցանկացավ նրան նշանակել բանջարաբուծական բրիգադայի բրիգադավար, բայց Սեդան համեստորեն հրաժարվեց բրիգադավարությունից և խնդրեց իրեն շարքային աշխատանքի ուղարկել ճակնդեղագործական օղակում։

— Ես դեռ անփորձ եմ, ուզում եմ պրակտիկ աշխատանքում կատարելա-



գործվել,— ասաց նա և աշխատանքի անցավ փորձված ճակնդեղագործուհի Զ. Մանուկյանի ղեկավարած օղակում։

Այստեղ Սեդան ուշադրությամբ ուսումնասիրեց առաջավորների փորձը, խորացավ աշխատանքում ու հաջորդ տարում նշանակվեց օղակավար։ Նրա օղակը առաջինն էր, որ ցանքից առաջ յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ տվեց 25 տոննա գոմաղբ, մոխիր և թռչնաղբ։ Դրանից հետո, մեխանիզատորների օգնությամբ, օղակը ճակնդեղը ցանեց ուղիղ շարքերով, որը հեշտացրեց պլանտացիայի հետագա մշակումը։ Սեդայի անձնական օրինակով օղակի բոլոր անդամները ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներում կատարեցին մակերեսային փխրեցումը, քաղհան-նոսրացումը, ոռոգումը և մշակության հետ կապված մյուս աշխատանքները։ Նրանք յուրաքանչյուր հեկտարի վրա մինչև վերջ պահպանեցին 110—120 հազար բույս և դրանով իսկ ստեղծեցին լիարժեք հեկտարներ։ Սեդայի ղեկավարած օղակը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 506 ցենտներ բերք, իսկ անվանի օղակավարուհին իր մշակած հողատարածությունից ստացավ 766 ցենտներ ճակնդեղի միջին բերք։ Դա մինչև օրս եղած բերքատվության ամենաբարձր ցուցանիշն է ինչպես շրջանում, այնպես էլ ռեսպուբլիկայում։ Ձեռք բերած այդ մեծ հաջողության համար օղակավարուհի Ս. Սարգսյանը արժանացավ կառավարական ամենաբարձր պարգևի՝ Լենինի շքանշանի։

Կոլտնտեսություններում և սովխոզներում կան այդպիսի բազմաթիվ առաջավորներ, որոնց փորձի տարածումն ու արմատավորումը գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացման ամենախոշոր և կարևոր ռեզերվներից մեկն է։ Այժմ մեր գյուղատնտեսությունը հասել է զարգացման այնպիսի մակարդակի, որ թույլ է տալիս բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում կիրառել անվանի դաշտավարների, անասնապահների և մեխանիզատորների աշխատանքի ոչ միայն առանձին առաջավոր եղանակները, այլև գիտության ու առաջավոր փորձի նվաճումների ամբողջ կոմպլեքսը։ Առաջավորների նվաճումները բոլորի համար պետք է լինեն օրինակ, փարոս։

Գիտության գործիչների ու արտադրության առաջավորների նվաճումները լուրջ գործոն են մեր հետագա առաջընթացի համար։ Միայն հենվելով գիտության վրա, առաջավոր մարդկանց փորձի վրա, կարելի է ապահովել աշխատանքի արտադրողականության այն մակարդակը, որն անհրաժեշտ է կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։

Դրական օրինակի ուժը միայն արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բնագավառում չէ, որ լայնորեն դրսևորվում է։ Այն երևան է գալիս մեր բազմաբովանդակ կյանքի բոլոր բնագավառներում, մարդկանց կենցաղի ու հոգեբանության մեջ։ Դա սովետական հասարակարգի զարգացման օրինաչափ երևույթներից մեկն է, որը հետզհետե ավելի մեծ ուժով է դրսևորվում ու տարածվում։

---

# ՍՍՌՄ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ 40 ՏԱՐԻՆ


### Գ. ՋԻԲԼԱՁԵ

Վրաստանի Կոմպարտիայի Կենտկոմի քարտուղար


*Ժողովրդի կյանքում լինում են բերկրալի օրեր, երբ հանրագումարի են բերվում անցած ուղու, անխոնջ պայքարի և մեծ հաղթանակների հրաշալի պտուղները։ Դա հաղթանակած ժողովրդի երջանկությունն է, նորոգ երկրի բերկրանքը։ Դա նոր կյանքի արշալույսն է, որը ճառագում է ահեղ փոթորկից հետո և պայծառորեն լուսավորում ազատության ու վերածննդի ուղին։*

*Վրաց ժողովրդի համար այդպիսի արշալույս է 1921 թվականի փետրվարի 25-ը, երբ ապստամբած աշխատավոր մասսաները՝ բանվորներն ու գյուղացիները, ինտելիգենցիան, թևավորված Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով, Վրաստանի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ տապալեցին մենշևիկյան կառավարության լուծը, խորտակեցին բուրժուա-կալվածատիրական կացութաձևը և սկսեցին նոր հասարակարգի, ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական նոր կուլտուրայի կառուցումը։*

*Այդ մեծ իրադարձությունից անցել է քառասուն տարի, անցել է չորս տասնամյակ, որը փոքր ժամանակահատված է համաշխարհային պատմության համար, բայց աննախադեպ ժամանակաշրջան՝ ժողովրդի բարգավաճման համար, տնտեսական հետամնացությունից դեպի ժամանակակից հզոր ինդուստրիայի և առաջավոր սոցիալիստական գյուղատնտեսության ռեսպուբլիկա շտեմված թռիչք գործելու համար։*

*Ամփոփելով պայքարի ու հաղթանակների արդյունքները, վրաց ժողովուրդը Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների հետ միասին ուրախությամբ է նշում իր ազգային մեծ տոնը՝ Վրաստանում Սովետական իշխանության հաստատման և Վրաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման քառասնամյակը։*

*Լենինյան մեծ պարտիայի մարտական ջոկատներից մեկի՝ Վրաստանի Կոմպարտիայի անցած փառապանծ ուղին անխզելիորեն կապված է ՍՄԿՊ-ի պատմության հետ, ամբողջ աշխարհի աշխատավորների հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի անվան հետ։ Վրաստանի Կոմպարտիան աճել ու կոփվել է երեք ռևոլյուցիաների բոցերի մեջ, նվաճել է աշխատավորների լայն մասսաների սերն ու վստահությունը, իր զավակների պայքարի հերոսական օրինակներով*



*ժողովրդին ցույց է տվել, որ ինքը պաշտպանում է Վրաստանի աշխատավորության շահերը, որը պայքարում է պրոլետարական ռևոլյուցիայի մեծ գաղափարների համար։*

*Վրաստանի Կոմպարտիան դաստիարակել է իր ժողովրդի այնպիսի ականավոր զավակների, ինչպիսիք էին՝ Ի. Ստալինը, Ա. Ծուլուկիձեն, Լ. Կեցխովելին, Մ. Ցխակայան, Ֆ. Մախարաձեն, Գ. Թելիան, Վ. Ստուրուան, Ջ. Ջոդրիշվիլին, Մ. Բոճորիձեն և ուրիշներ։*

*Վրաստանի Կոմպարտիայի պատմությունը հագեցած է բուռն իրադարձություններով և սերտորեն շաղկապված է ժողովրդի կյանքի հետ։*

*Անցյալ դարի 90-ական թվականներից ի վեր, երբ Վրաստանում սկսվեց մարքսիզմի տարածումը, առաջին ամենահզոր մարքսիստական կազմակերպությունը «Մեսամե դասի» խումբն էր, որն ստեղծվեց ռուսական ռևոլյուցիոն մտքի ազդեցության տակ։ Այդ խումբը, որը միատարր չէր, սկզբում աչքի էր ընկնում այնպիսի ականավոր գործիչների ռևոլյուցիոն ձգտումներով, ինչպիսիք էին՝ Ն. Նինոշվիլին, Ֆ. Մախարաձեն, Մ. Ցխակայան և ուրիշներ։ Միանգամայն հասկանալի է, որ Վրաստանն այդ ժամանակ չէր կարող ունենալ մարքսիստական կազմակերպություններ, եթե ամբողջ աշխարհի աշխատավորության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը, սկսած 90-ական թվականների կեսերից, անմիջական կապ չհաստատեր Անդրկովկասի ռևոլյուցիոն ուժերի հետ։*

*90-ական թվականների վերջերին, երբ «Մեսամե դասիի» ներսում ստեղծվեց այն ժամանակվա սոցիալ-դեմոկրատիայի ականավոր ներկայացուցիչներից բաղկացած ռևոլյուցիոն կորիզ, այդ խումբը հետզհետե սկսեց հարթել Վրաստանի սոցիալ-դեմոկրատական շարժման ուղին։ Վրաստանում հսկայական դեր խաղաց ռուս այնպիսի ականավոր ռևոլյուցիոն մարքսիստների գործունեությունը, ինչպիսիք էին՝ Ֆ. Աֆանասևը, Ն. Կոզերենկոն, Վ. Կուռնատովսկին, Մ. Կալինինը, Գ. Ֆրանչեսկին, Ս. Ալլիլուևը և ուրիշներ։*

*1898 թ. ստեղծվում է Թիֆլիսի սոցիալ-դեմոկրատական կոմիտեն, սկսվում են բանվորների խոշոր գործադուլներ և մասսայական ռևոլյուցիոն շարժում. պայքարը կազմակերպված բնույթ է ստանում, որի օրինակ կարող է ծառայել Թիֆլիսի բանվորների 1901 թվականի մայիսմեկյան հզոր ցույցը, որին բարձր գնահատական տվեց լենինյան «Իսկրա»-ն։ Ստեղծվում է Վրաստանի առաջին լենինյան-իսկրայական թերթը՝ «Բրձոլան» («Պայքար»), և այդ պահից ի վեր Վրաստանի որոշ շրջաններում առաջ են գալիս ինչպես լենինյան-իսկրայական ուղղության պատկանող խմբեր, այնպես էլ սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ։*

*Վրաստանի ռևոլյուցիոն շարժման զարգացման համար հսկայական նշանակություն ունեցավ Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջին համագումարը, որը տեղի ունեցավ 1903 թվականի մարտին Թիֆլիսում։ Ընտրվեց ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտե, որի աշխատանքին ակտիվ մասնակցություն էին ցուցաբերում Ա. Ծուլուկիձեն, Ի. Ստալինը, Ֆ. Մախարաձեն, Մ. Ցխակայան, Բ. Կնունյանցը, Մ. Բոճորիձեն, Ս. Շահումյանը, Պ. Ջափարիձեն, Մ. Դավիթաշվիլին, Վ. Բոբրովսկին։*

*Միութենական Կոմիտեն ուներ նաև իր օրգանը՝ «Պրոլետարիատի պայքար» թերթը, որը տպագրվում էր Հավլաբարի անլեգալ տպարանում և լույս էր տեսնում ռուսերեն, վրացերեն ու հայերեն լեզուներով։ «Պրոլետարիատի պայքարը» կանգնած էր լենինյան «Իսկրա»-ի սկզբունքների վրա և շատ ու*

շատ բան արեց Անդրկովկասի աշխատավորների ռևոլյուցիոն շարժումն ընդլայնելու համար: Լենինը, բարձր գնահատելով Կովկասի ռևոլյուցիոն մարքսիստների աշխատանքը, գրում էր. «Թող Կովկասի ընկերները ամուր մնան այն ուղու վրա, որի վրա կանգնել են»:

Վրաստանում անհաշտ և սուր պայքար էր մղվում մենշևիկների դեմ: Այդ պայքարում դաստիարակվում էին բոլշևիկյան կազմակերպությունները, որոնց ղեկավարում էին Ի. Ստալինը, Մ. Ցխակայան, Պ. Ջափարիձեն, Ֆ. Մախարաձեն, Ս. Շահումյանը, Գ. Օրջոնիկիձեն և ուրիշներ: Պայքարը հատկապես սրվեց 1905 թվականին, երբ Վրաստանի գյուղացիությունն ակտիվորեն հանդես եկավ ցարական ռեժիմի և կալվածատիրական կարգերի դեմ:

1905 թվականի ապրիլին հանդես գալով ՌՍԴԲՊ երրորդ համագումարում, մեծ Լենինն ասաց. «Կովկասի սոցիալ-քաղաքական կյանքի առանձնահատուկ պայմանները նպաստեցին այնտեղ մեր պարտիայի առավել մարտական կազմակերպությունների ստեղծմանը»:

Վրաստանի և Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժումը սերտորեն կապված էր Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժման հետ: Երբ Մոսկվայի դեկտեմբերյան զինված ապստամբությունը վերջացավ պարտությամբ, Վրաստանի բոլշևիկյան կազմակերպությունները զենքը ցած չդրեցին, նրանք պայքարում ու մերկացնում էին մենշևիկներին՝ որպես աշխատավորների ռևոլյուցիոն շահերի դավաճանների: Եվ 1905—1907 թվականների ռևոլյուցիայի պարտությունից հետո վրա հասած ռեակցիայի տարիներին Վրաստանի բոլշևիկյան կազմակերպությունների կամքը չընկճվեց, անխոնջ պայքար էր մղվում մենշևիկների, լիկվիդատորների, տրոցկիստների, օտզովիստների դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր մարքսիզմ-լենինիզմի քողարկված թշնամիներն էին:

Երբ պայթեց առաջին համաշխարհային պատերազմը, Վրաստանի բոլշևիկյան կազմակերպությունները հսկայական աշխատանք էին կատարում ելնելով պատերազմի ու խաղաղության, ռևոլյուցիոն շարժման հարցերի վերաբերյալ Լենինի ցուցումներից: Վրաստանի բոլշևիկները մերկացնում էին մենշևիկներին, սոցիալ-ֆեդերալիստներին, նացիոնալ-դեմոկրատներին և պրոպագանդում էին պատերազմի վերաբերյալ լենինյան թեզիսները:

1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայից հետո Վրաստանի բոլշևիկները անհաշտ պայքար ծավալեցին Լենինի Ապրիլյան թեզիսների և պարտիայի VII կոնֆերանսի որոշումների իրականացման համար:

Հսկայական նշանակություն ունեցավ նաև այն փաստը, որ 1917 թվականի հոկտեմբերի սկզբներին Թիֆլիսում հրավիրվեց Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին երկրամասային համագումարը և ընտրվեց Երկրամասային կոմիտե, որի մեջ մտան Ս. Շահումյանը, Պ. Ջափարիձեն, Մ. Ցխակայան, Ի. Ֆիոլետովը, Ֆ. Մախարաձեն, Ա. Մռավյանը, Ս. Քավթառաձեն և ուրիշներ:

Պատմական մեծ իրադարձությունը՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիան, որը մարդկության պատմության մեջ բացեց նոր դարագլուխ, Վրաստանում ընդունվեց որպես վրաց ժողովրդի կյանքի ամենաբերկրալի երևույթը: Բայց վրացական մենշևիկների դավաճանության պատճառով ժողովուրդն ընկավ գերմանական, իսկ ապա՝ անգլո-ամերիկյան իմպերիալիստների լծի տակ: Վրաստանը, ինչպես Հայաստանը և Ադրբեջանը, ժամանակավորապես կտրվեց Սովետական Ռուսաստանից: Մենշևիկները գնդակահարում և մասսայական



ռեպրեսիաների էին ենթարկում վրացական բոլշևիկներին և նրանց, ովքեր պաշտպանում էին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գաղափարը:

Իր անփառունակ գոյության երեք տարում մենշևիկյան կառավարությունը Վրաստանի «անկախության» քողի տակ երկիրը վաճառում էր գերմանական, անգլիական և ամերիկյան իմպերիալիստներին: Ժողովրդի դրությունը օրավուր վատթարանում էր. սովին ու տառապանքներին վերջ չկար: Չնայած դրան, Սովետական իշխանության համար Վրաստանի աշխատավորների պայքարը Վրաստանի բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ ծավալվեց գրեթե բոլոր շրջաններում և ավարտվեց պատմական հաղթանակով:

Այդ հիշարժան օրը՝ 1921 թ. փետրվարի 25-ին Գ. Կ. Օրջոնիկիձեն հեռագիր ուղարկեց Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին, որն ազդարարեց Վրաստանում Սովետական իշխանության հաղթանակը. «Թիֆլիսի վրա փողփողում է Սովետական իշխանության կարմիր դրոշը: Կեցցե՛ Սովետական Վրաստանը»:

Մի քանի օր անց, 1921 թվականի մարտի 2-ին, Վ. Ի. Լենինը Գ. Կ. Օրջոնիկիձեին գրեց. «Հաղորդեցեք վրացական կոմունիստներին և հատկապես Վրաստանի Ռևկոմի բոլոր անդամներին իմ ջերմագին ողջույնը Սովետական Վրաստանին»:

Մենշևիկյան լծից Վրաստանի ազատագրման գործում պատմական դեր խաղացին Կարմիր Բանակի Կովկասյան ռազմաճակատի XI բանակի զորամասերը, որոնք Վրաստան եկան Ռևոլյուցիոն կոմիտեի կոչով: Այդ լեգենդար ազատարար բանակի շարքերում էր գտնվում Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը:

Տարակույս չկա, որ Վրաստանում Սովետական իշխանության հաղթանակին նպաստեց Հայաստանի և Ադրբեջանի օրինակը. 1920 թվականի ապրիլին Ադրբեջանում տապալվեց մուսավաթականների տիրապետությունը ու հաստատվեց Սովետական իշխանություն, իսկ մի քանի ամիս անց, նույն թվականի նոյեմբերին հայ ժողովուրդը վռնդեց դաշնակներին և հռչակեց Սովետական իշխանություն:

Նոր իրադարձությունների կապակցությամբ Անդրկովկասում ստեղծվում է ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրո, որի կազմի մեջ մտան լենինյան տիպի այնպիսի ականավոր գործիչներ, ինչպիսիք էին Գ. Օրջոնիկիձեն, Ս. Կիրովը, Ա. Նազարեթյանը:

Վրաստանի բոլշևիկյան ուժերի համախմբման գործում մեծ ծառայություն ունի Ս. Մ. Կիրովը, որը 1920 թվականին Վրաստանում էր գտնվում որպես երիտասարդ Սովետական Ռուսաստանի ներկայացուցիչ:

1921 թվականի փետրվարին վրաց ժողովրդի հաղթանակին նպաստեց ապստամբության օրերին Վրաստանի Ռևոլյուցիոն կոմիտեի ստեղծումը (Ֆ. Մախարաձե, Մ. Օրախելաշվիլի, Մ. Ցխակայա, Շ. Էլիավա, Ա. Նազարեթյան, Ս. Քավթառաձե, Ա. Գեգեչկորի և ուրիշներ):

1921 թվականից նոր կյանք, նոր դարագլուխ սկսվեց վրաց ժողովրդի պատմության մեջ: Վրաստանի Կոմունիստական պարտիան բոլոր միջոցները ձեռք էր առնում իրագործելու Վ. Ի. Լենինի այն դիրեկտիվները, որ նա տվել էր 1921 թվականի ապրիլի 14-ին գրած իր պատմական նամակում՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին»:

Հիմնական հարցերից մեկը ազգային հաշտություն ձեռք բերելն էր, քանի որ Կովկասի խայտաբղետ բնակչությունը, բուրժուա-նացիոնալիստական քաղաքականության հետևանքով հող էր հանդիսանում շովինիստական տրամադրությունների հրահրման համար։ 1922 թվականի փետրվարին ստեղծված ՌԿ(բ)Պ Անդրերկրկոմը, որի ղեկավարներն էին՝ Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ս. Մ. Կիրովը և Ա. Ֆ. Մյասնիկյանը, անխոնջ պայքար էր մղում բուրժուա-նացիոնալիստական թեքման դեմ։

Եղբայրական երեք ռեսպուբլիկաները՝ Վրաստանը, Ադրբեջանը և Հայաստանը միավորվեցին եղբայրական մի ընտանիքի մեջ և միասին սկսեցին կառուցել սոցիալիստական հասարակարգ։

Տնտեսապես խիստ հետամնաց Վրաստանը, Սովետական իշխանություն հաստատվելուց հետո, մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի և երիտասարդ Սովետական Ռուսաստանի օգնությամբ հնարավորություն ստացավ առաջին իսկ տարիներին ձեռնամուխ լինելու 20 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների, այդ թվում էլեկտրակայանների կառուցմանը։

Աշխատավորների խանդավառությունն ու ավյունը 1925—1926 թթ. վերջերին դրսևորվեցին նաև գյուղատնտեսության արդյունքների մեջ. ցանքատարածությունն արդեն գերազանցեց 1913 թվականի մակարդակը։

Ժողովրդի կենսապայմաններն օրեցօր բարելավվում էին, բարգավաճում էր կուլտուրան, վերացվեցին բնակչության անգրագիտությունը և գործազրկությունը։

1940 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1913 թվականի մակարդակը գերազանցեց գրեթե 10,2 անգամ, իսկ խոշոր արդյունաբերության արտադրանքի ծավալը՝ 26,9 անգամ։

Սոցիալիստական մրցության լայն թափը տվեց իր արդյունքները. Վրաստանի աշխատավորները առաջին հնգամյակի առաջադրանքները կատարեցին չորս տարի երեք ամսում, կառուցեցին 46 արդյունաբերական ձեռնարկություններ, դրանց թվում Բաթումիի նավթաթորման գործարանը, մահուդի և մետաքսյա-գործվածքների ֆաբրիկաները, Կասպիի ցեմենտի գործարանը, պահածոյի գործարաններ և այլն։

Երկրորդ հնգամյակում ռեսպուբլիկայի աշխատավորները կառուցեցին. 1933 թվականին՝ Ռիոնի հիդրոէլեկտրակայանը, Զեստաֆոնիի ֆերրոձուլվածքների գործարանը, Աջարայի շաքարի գործարանը, իսկ մեկ տարի անց՝ Թբիլիսիի Կիրովի անվան հաստոցաշինական գործարանի առաջին հերթը, Ցալենջիխիի թեյի ֆաբրիկան. 1935 թվականին կառուցվեցին 25 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և Տղվարչելիի առաջին ածխահորը. 1936 թվականին շահագործման հանձնվեցին Քութայիսիի ապակու և գումբրինի գործարանները, Թբիլիսիի ավտոնորոգման գործարանը, Ինգուրիի թղթի կոմբինատը, թեյի 9 նոր ֆաբրիկաներ։

Երրորդ հնգամյակում ավարտվեց Զագէսի վերջին ագրեգատի կառուցումը, Տղվարչելիի ջերմաէլեկտրակայանը, Թբիլիսիի ջերմաէլեկտրացենտրալը, Գելաթիի ածխահանքերը, Թբիլիսիի տրիկոտաժի կոմբինատը, Ավճալայի շամպայն գինիների գործարանը։

1938 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, Վրաստանի արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 35 անգամ, իսկ տեքստիլ արդյունաբերության արտադրանքը՝ գրեթե 87 անգամ։



Պատերազմը խանգարեց Վրաստանի արդյունաբերության արագ աճին, բայց ռեսպուբլիկան չորրորդ հնգամյակում ոչ միայն գերազանցեց արդյունաբերության նախապատերազմյան մակարդակը, այլև կարողացավ ստեղծել Ռուսթավիի Ստալինի անվան մետալուրգիական գործարանը, Խրամգէսը, Սուխումիի հիդրոէլեկտրակայանը, Ջիտախևիի հիդրոէլեկտրակայանը, թեյի վեց նոր ֆաբրիկա և այլ ձեռնարկություններ։

Ուրախալի է նշել, որ պարտիայի XXI համագումարի հաստատած յոթնամյա պլանը հաջողությամբ կատարվում է։ Յոթնամյա պլանով նախատեսված էր մինչև 1960 թվականը, 1958 թվականի համեմատությամբ, հասնել արդյունաբերության արտադրանքի 12 տոկոս ընդհանուր աճի, այնինչ այդ ժամանակամիջոցում փաստորեն արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 15 տոկոսով։ Արդյունաբերական ձեռնարկությունների պլանը կատարվեց 102 տոկոսով, գերակատարվեց չուգունի, պողպատի, գլանվածքի թողարկման, նավթի վերամշակման, սննդարդյունաբերության և այլ ճյուղերի պլանը։

1960 թվականին Վրաստանում 41 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք թողարկվեց, քան 1913 թվականին։

Սովետական իշխանության տարիներին Վրաստանում կառուցվել է մոտավորապես 1000 արդյունաբերական ձեռնարկություն։ Այժմ Վրաստանում արդյունահանվում է 41 անգամ շատ քարածուխ և 190 անգամ շատ էլեկտրաէներգիա, քան 1913 թվականին։ Վրաստանից արդյունաբերական արտադրանք է արտահանվում օտարերկրյա 50 պետություններ։

Մինչև Վրաստանում Սովետական իշխանության հաստատումը մեր արդյունաբերությունը նույնպիսի ցածր մակարդակի վրա էր, ինչպես Թուրքիայի և Իրանի արդյունաբերությունը, իսկ այժմ մենք ոչ միայն շատ ետ ենք թողել Թուրքիային և Իրանին, այլև բնակչության մեկ շնչի հաշվով արտադրում ենք 4 անգամ շատ չուգուն, 2 անգամ շատ պողպատ, 1,7 անգամ շատ գլանվածք, քան Իտալիան։

Այժմ Վրաստանի արդյունաբերության մեջ աշխատում են 250 հազար բանվորներ ու մասնագետներ։ Դրանք այն կադրերն են, որոնց մասին խոսեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը 1961 թվականի փետրվարի 7-ին երեք եղբայրական ռեսպուբլիկաների՝ Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի գյուղատնտեսության առաջավորների Թբիլիսի քաղաքում կայացած խորհրդակցությունում։ Մենք հիրավի հպարտանում ենք, որ Թբիլիսիում պատրաստված էլեկտրաքարշները հաջողությամբ հաղթահարում են մեր մեծ Հայրենիքի հսկայական տարածությունները։

Հսկայական թռիչք կատարվեց նաև գյուղատնտեսության ասպարեզում։ Երկրի ինդուստրացման լենինյան քաղաքականության հիման վրա իրագործվեց մանր գյուղացիական տնտեսություններից անցումը խոշոր կոլեկտիվ գյուղատնտեսության։ Այժմ Վրաստանի 1115 կոլտնտեսություններ և 121 սովխոզներ լրիվ էլեկտրիֆիկացված են։ Ռեսպուբլիկայում աշխատում են 7.900 տրակտոր, 1700 կոմբայն, 11000 բեռնատար ավտոմեքենա։

Մենք հպարտանում ենք գյուղատնտեսության բարձրորակ կադրերով։ Մենք ունենք գյուղատնտեսության 11200 մասնագետներ, այդ թվում՝ 8300 գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ և անասնաբույժներ։ Ահա այն կադրերը, որոնք ղեկավարում են մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։

Միայն Սովետական իշխանությունը կարող էր ապահովել ոռոգման վիթխարի սիստեմի ստեղծումը։ Ներկայումս Վրաստանում ոռոգվում է 341 հազար հեկտար հող, մինչդեռ 1921 թվականին ոռոգվում էր միայն 95 հազար հեկտար։ Եվ երբ մենք լրիվ կավարտենք Վերին ու Ներքին Սամգորիի ոռոգիչ սիստեմի կառուցումը, երբ կավարտվեն չորացման աշխատանքները Կոլխիդայում, ռեսպուբլիկայի ջրովի հողերի ֆոնդը լրացուցիչ կերպով կավելանա 350 հազար հեկտարով։

Վրաստանը գյուղատնտեսական բազմազան կուլտուրաների ռեսպուբլիկա է։ Մեզ մոտ մեծ տեղ են գրավում թեյը, ցիտրուսային պլանտացիաները, մրգատու այգիները, տեխնիկական ու հացահատիկային կուլտուրաները, անասնաբուծությունը։ Այժմ Վրաստանի թեյի պլանտացիաները գրավում են 55 հազար հեկտար, մինչդեռ 1928 թվականին մենք ունեինք միայն 35 հազար հեկտար։ Վրաստանը տալիս է Սովետական Միության թեյի արտադրանքի 96 տոկոսը։ Անցյալ տարի ռեսպուբլիկան հսկայական հաջողությունների հասավ. մեր աշխատավորների ձեռքով հավաքվեց 157 հազար տոննա թեյի կանաչ տերև, կամ պլանով նախատեսվածից 19 հազար տոննայով շատ։ Մենք ՍՄԿՊ Կենտկոմին և անձամբ ընկեր Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին խոստացել ենք մինչև 1965 թվականը թեյի պլանտացիաների տարածությունները հասցնել 70 հազար հեկտարի, իսկ թեյի կանաչ տերևի հավաքումը՝ 200 հազար տոննայի։

Նույնպիսի տեմպերով կզարգանան և ցիտրուսային պլանտացիաները։ Եթե այժմ ցիտրուսային պլանտացիաները գրավում են 2.750 հեկտար, ապա 1965 թվականին մենք կունենանք 13000 հեկտար, որը հնարավորություն կտա 1961 թվականի 30 հազար տոննայի փոխարեն 1965 թվականին հավաքել 60 հազար տոննա ցիտրուսային պտուղներ։

Մենք զրեթե կրկնապատկում ենք դափնու տերևի արտադրությունը, իսկ ինչ վերաբերում է ռեսպուբլիկայի հիմնական կուլտուրաներից մեկին՝ խաղողին, ապա եթե 1960 թվականին մենք ունեինք խաղողի 83 հազար հեկտար այգի, ապա մինչև 1965 թվականը պետք է յուրացնենք 150 հազար հեկտար. 1965 թվականին մրգատու այգիների տարածությունը 1960 թվականի 10? հազար հեկտարի դիմաց կհասցվի 145 հազար հեկտարի։

Ինչ վերաբերում է ռեսպուբլիկայի անասնաբուծությանը, ապա գյուղատնտեսության այս բնագավառում եղել են խոշոր թերություններ, որոնց համար մեզ միանգամայն արդարացիորեն քննադատեցին ՍՄԿՊ Կենտկոմը և անձամբ ընկեր Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը։

Անխոնջ կերպով կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի պատմական որոշումները, ռեսպուբլիկայի աշխատավորները, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ բոլոր միջոցները ձեռք են առնում վերացնելու գյուղատնտեսության ասպարեզում եղած թերությունները և նոր հաջողությունների հասնելու ի բարօրություն մեր մեծ Հայրենիքի ժողովրդի։

Մենք հատուկ ուշադրություն ենք նվիրում հացահատիկային կուլտուրաների զարգացմանը և անասնաբուծության կերի բազայի ստեղծմանը։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության գլխավոր խնդիրը միշտ եղել ու մնում է հոգատարությունը աշխատավորների կարիքների նկատմամբ, ժողովրդի կենսական շահերի նկատմամբ։ 1960 թվականին ռեսպուբլիկայի կենսաթոշակառուները ստացել են 79 միլիոն ռուբլի։ Բարե-



ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՐՏԵԶԸ

լավվել է բնակչության բուժսպասարկումը. ինչպես հայտնի է, Վրաստանը աշխարհում առաջին տեղն է գրավում բնակչության մեկ շնչին ընկնող բժիշկների թվով։

Ժողովրդի նկատմամբ պարտիայի ու կառավարության հոգատարությունը տվեց իր արդյունքները։ Եթե 1921 թվականին Վրաստանում բնակչության թիվը 2.401.500 մարդ էր, ապա, 1959 թվականի մարդահամարի տվյալներով, այժմ Վրաստանում ապրում է 4 միլիոն 44 հազար մարդ։

Սովետական իշխանության տարիներին Վրաստանում երևան եկան միանգամայն նոր քաղաքներ, դրանց թվում այնպիսի մեծ քաղաք, ինչպիսին է Ռուսթավին։ Անճանաչելիորեն գեղեցկացել է մեր հարազատ Թբիլիսին, հրապուրիչ տեսք են ստացել Վրաստանի այնպիսի քաղաքներ, ինչպիսիք են Քութայիսին, Բաթումին, Սուխումին, Փոթին, Գագրան, Ծիաթուրան, Տղիբուլին, Գորին, Մախարաձեն, Զուգդիդին, Թելավին և ուրիշներ։

Հսկայական հաջողություններ են ձեռք բերվել գիտության ու կուլտուրայի բնագավառում։

Սովետական Միությունը այն երկիրն է, որը կարողացավ առաջինն իրագործել Երկրի արհեստական արբանյակների և տիեզերական հրթիռների արձակումը։ Զուր չէ բուրժուական մամուլը խոստովանում, որ դեպի Վեներա սովետական հրթիռի արձակումը պարզ կերպով հաստատում է այն փաստը, որ Սովետական Միությունը գրեթե երեք տարով այդ ասպարեզում առաջ է անցել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։

Սովետական գիտության մեծագույն նվաճումների ֆոնի վրա աչքի է ընկնում նաև մեր ռեսպուբլիկան՝ հնագույն ժամանակներից ի վեր բազմահարուստ կուլտուրա ունեցող երկրներից մեկը։ Վրաստանում Սովետական իշխանության հաստատումից հետո դաստիարակվեց սովետական նոր սոցիալիստական ինտելիգենցիա։ Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները 40 տարում տվեցին 131 հազար մասնագետներ, իսկ տեխնիկումները՝ 190 հազար։

Վրաստանը համատարած գրագիտության ռեսպուբլիկա է։ Այժմ մենք ունենք 4 664 հանրակրթական դպրոց (որից 282-ը ռուսական), որտեղ սովորում են ավելի քան 700 հազար երեխաներ։ Ռեսպուբլիկայում կա 42 գիշերօթիկ դպրոց՝ ավելի քան 10 հազար երեխայով։ Դպրոցներում աշխատում են 60 հազար մանկավարժ։ Եթե 1925 թվականին ռեսպուբլիկայում կար 90 ադրբեջանական դպրոց, ապա ներկայումս նրանց թիվը հասնում է 158-ի, իսկ հայկական դպրոցները 101-ից հասել են 249-ի։ 18 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 56 հազար ուսանող։ Այս տեսակետից մենք առաջ ենք անցել այնպիսի երկրներից, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, Իտալիան և Անգլիան։

Ռեսպուբլիկան ունի կուլտուր-լուսավորական հիմնարկների հսկայական ցանց։ Եթե 1913 թվականին Վրաստանում կար ընդամենը 300 գրադարան, այժմ մենք ունենք 3 114 գրադարան, որոնց գրքային ֆոնդը կազմում է 1·4 միլիոն կտոր։

Սովետական իշխանության տարիներին կուլտուրայի հսկայական աճն է վկայում նաև այն, որ Վրաստանի տերիտորիայում այժմ գործում են 1935 ակումբ, 20 պետական թատրոն, 1200 կինո-կետ, 64 թանգարան։

Բնակչության կուլտուրական աճին և նրա մարքս-լենինյան դաստիարա-

կության նպաստում է մեծ տիրաժներով ժուռնալների, թերթերի և գրքերի հրատարակումը։ Միայն 1959 թվականին Վրաստանում հրատարակվել է 12 810 հազար գիրք (2 191 անուն), 4 690 ժուռնալ (123 անուն), 138 թերթ ավելի քան մեկ միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։

Եթե մինչև Սովետական իշխանության հաստատվելը Վրաստանում կար միայն մեկ բարձրագույն ուսումնական հաստատություն՝ համալսարան, ապա այժմ մենք ունենք Վրացական ՍՍՌ Գիտությունների ակադեմիա, որը գլխավորում է խոշորագույն գիտնական, աշխարհահռչակ մաթեմատիկոս Ն. Ի. Մուսխելիշվիլին։ Ռեսպուբլիկայում գործում են այնպիսի խոշոր բարձրագույն ուսումնական հաստատություններ, ինչպիսիք են՝ Ստալինի անվան Պետական համալսարանը, Պոլիտեխնիկական, Բժշկական, Գյուղատնտեսական ինստիտուտները։ 1958 թվականին հիմնադրվեց Գյուղատնտեսական գիտությունների ակադեմիան։

Գիտության հուժկու զարգացումը հստակ կերպով դրսևորվում է նաև այն փաստի մեջ, որ եթե 1940 թվականին Վրաստանում կային 3 513 գիտական աշխատողներ, ապա 1961 թվականին ռեսպուբլիկան ունի 8000 գիտաշխատողներ, որոնց թվում գիտությունների 430 դոկտորներ և ավելի քան 3200 թեկնածուներ։ Վերջին տարիների խոշորագույն նվաճումներից է Վրացական Գիտությունների ակադեմիայի ատոմային ռեակտորի կառուցումը, որը ավելի քան երկու տարի է, ինչ աշխատում է հաջողությամբ, ինչպես ասում են, անխափան։

Հսկայական են հաջողությունները գրականության և արվեստի բնագավառում։ Վրացական գրականությունը աշխարհի հնագույն գրականություններից է։ Սովետական իշխանության տարիներին աճել են գեղարվեստական խոսքի ականավոր վարպետներ, որոնք իրենց երկերում արտացոլում են վրաց ժողովրդի կյանքը, նրա ձգտումներն ու իղձերը։

Գրողների հետ միասին ստեղծագործական մեծ աշխատանք են կատարում վրաց կոմպոզիտորները, գեղանկարիչները, քանդակագործները, ճարտարապետները։

Լայնորեն հայտնի են «Վրացֆիլմ» կինոստուդիայի արտադրած ֆիլմերը և այնպիսի առաջնակարգ թատրոնների բեմադրությունները, ինչպիսիք են՝ Զ. Փալիաշվիլու անվան օպերայի և բալետի պետական թատրոնը, Շոթա Ռուսթավելու անվան և Քոթե Մարջանիշվիլու անվան դրամատիկ թատրոնները։

Մենք հպարտանում ենք արտադրության մեր տաղանդավոր կազմակերպիչներով ու նորարարներով։ Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ղեկավարների՝ Գուրամ Ջադունելիի, Ամիրան Պանցուլայայի, Ջաուր Ռուսիայի, Արչիլ Ջամաշվիլու, Ելենա Գեգելաշվիլու, Շոթա Կուբլաշվիլու, Միխայիլ Բաղդասարովի, Կուչկոն Լեյբի, Դավիդ Տեդեևի, Պոլինա Բոգդանովայի անունները լայնորեն հայտնի են մեր ռեսպուբլիկայում։

Մենք ունենք մեր փարոսները՝ կոլտնտեսային արտադրության նորարարները։ Թեյ հավաքողներ Տատյանա Չխեիձեն, Գուլի Ավիձբան, Հովիկ Գեորգի Ջալաբաշվիլին, կթվորուհիներ՝ Սոֆյա Դելիբաշվիլին, Մերի Կվաճանտիրաձեն, Էմմա Կույումչյանը և ուրիշ շատերը ոչ միայն փարոսներ են, այլև դաստիարակում են ուրիշ փարոսների, որոնք անխոնջ կերպով աշխատում են դաշտերում, ֆերմաներում, արոտավայրերում և «կանաչ ճանապարհ» են



տալիս ոչ միայն «դաշտերի թագուհուն», այլև գյուղատնտեսության մյուս
բոլոր կուլտուրաներին։
Ընթացիկ տարում Վրաստանը պետությանը պետք է տա 10 միլիոն փութ
հացահատիկ, 145 հազար տոննա կաթ, 165 հազար տոննա տեսակավոր թեյի
տերև, 60 հազար տոննա միս, 150 հազար տոննա խաղող, 4.100 տոննա
բուրդ, 70 միլիոն ձու, 85 հազար տոննա պտուղ, 30 հազար տոննա ցիտրուս,
1200 տոննա դափնու տերև, 90 հազար տոննա բանջարեղեն, 22 հազար տոն-
նա կարտոֆիլ, 4200 տոննա չերամի բոժոժ։ Խնդիրները հսկայական են,
բայց մենք վստահ ենք մեր հաղթանակին, որովհետև Վրաստանի աշխատա-
վորները իրենց սրբազան պարտքն են համարում իրագործել ՍՄԿՊ Կենտկոմի
Հունվարյան պլենումի պատմական որոշումները և, առանց ուժերը խնայելու,
անխոնջ կերպով աշխատել այն խնդիրների կատարման համար, որոնք Վրաս-
տանի Կոմունիստական պարտիայի առջև դրել են Սովետական Միության Կո-
մունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և անձամբ ընկեր Ն. Ս.
Խրուշչովը։
Մենք երբեք չենք մոռանա մեր Հայրենիքի հավատարիմ զավակներին,
որոնք իրենց կրծքով պաշտպանեցին հարազատ Սովետական հողը և Հայրե-
նական Մեծ պատերազմում թշնամիների դեմ մղած կատաղի պայքարում
քաջի մահով ընկան մարտադաշտում։ Ռուս, հայ և ադրբեջանցի ընկերների
հետ միասին ընդհանուր թշնամու դեմ հերոսաբար մարտնչում էին վրաց ժո-
ղովրդի այնպիսի ականավոր զավակներ, ինչպիսիք են՝ Սովետական Միության
Հերոսներ՝ Զ. Բենդելիանին, Ա. Ցուրցումիան, Շ. Գամցեմլիձեն, Ն. Ադամիան,
Վ. Կանկավան, Ռ. Բարցիցը, Վ. Ջոչիևը, Ի. Ջինճարաձեն, Վ. Մայսուրաձեն,
Մ. Բուխաիձեն, Ռ. Ռուխաձեն և ուրիշ շատերը։
Ռուս ռազմիկ Մ. Եգորովի հետ միասին վրացի ռազմիկ Մ. Կանտարիան
ռայխստագի վրա բարձրացրեց Հաղթանակի դրոշը, որով սիմվոլիկ կերպով
արտահայտվեց ռուս և վրաց ժողովուրդների դարավոր բարեկամությունը։
Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը
այն հզոր ուժն էր, որը կաշկանդում էր թշնամուն և օգնում էր Սովետական
Բանակի ռազմիկներին ջախջախելու թշնամուն։
Անդրկովկասյան ժողովուրդների միջև այդ մարտական բարեկամությունը
շարունակվում է և խաղաղ ժամանակ, որի ցայտուն խորհրդանիշն է Բաքու—
Թբիլիսի—Երևան գազամուղի շինարարության իրականացումը, որի մասին
այնքան լավ է ասել ընկեր Խրուշչովը 1960 թ. ապրիլի 25-ին Բաքվում՝ Ադրբ-
բեջանում Սովետական իշխանության հաստատման և Ադրբեջանի Կոմպար-
տիայի ստեղծման քառասնամյակին նվիրված հանդիսավոր նիստում ար-
տասանած ճառում. «Այդ գազամուղը ժողովուրդն իրավամբ անվանում է
բարեկամության տրասս, նրա բացումը վերածվեց Անդրկովկասի ժողովուրդ-
ների իսկական տոնի»։
Հայ, վրացի և ադրբեջանցի ժողովուրդների բարեկամությունն ու եղբայ-
րությունը հին ժամանակներից ամրապնդվել է, զարգացել և այժմ օր-օրի
կոփվում է ու անխորտակելի միասնություն դառնում։
Վրացիներն ու հայերը հնագույն բարեկամներ են, հարազատ եղբայրներ,
և պատահական չէ, որ մեր ժողովուրդների անցյալի մասին եղած գրավիչ
լեգենդները հավերժացրել են այդ եղբայրությունն ու բարեկամությունը։ Հայ

ժողովրդի հառաչանքը միշտ լսել է վրաց ժողովուրդը, իսկ վրաց ժողովրդի տառապանքները միշտ հասկանալի են եղել հայ ժողովրդին:

Մենք Խաչատուր Աբովյանին, Միքայել Նալբանդյանին, Հովհաննես Թումանյանին, Ավետիք Իսահակյանին, Հակոբ Հակոբյանին, Շիրվանզադեին, Րաֆֆուն սիրում ու գնահատում ենք ոչ միայն նրա համար, որ նրանցից ոմանք որոշակի ժամանակաշրջանում ապրել են վրացական հողում, այլև նրա համար, որ նրանք ոգեշնչված արտահայտել են եղբայրական հայ ժողովրդի խոհերն ու զգացմունքները և միշտ ըմբռնել են Վրաստանի եղբայրական զգացմունքները:

Վրաց և հայ ժողովուրդների համար, ինչպես և Սովետական Միության բոլոր ժողովուրդների համար միշտ անկեղծ ավագ եղբայր է եղել ռուս մեծ ժողովուրդը, որի հետ Հայաստանի և Վրաստանի ժողովուրդները դարավոր բարեկամություն ունեն, սկսած հնագույն ժամանակներից:

Վրաց և ռուս ժողովուրդների եղբայրական բարեկամությունը սերտ է, սրբազան և հավերժական: Այդ բարեկամությունը կոփվել է հնագույն ժամանակներից, երբ ստեղծվում էր ռուսական մեծ պետությունը:

Վրացիները շատ մոտ հարաբերություններ են ունեցել ռուս ժողովրդի հետ, այդ մասին XII դարի վերջերից հիշատակվում է մեր գրականության այնպիսի գլուխգործոցների մեջ, որպիսիք են Շոթա Ռուսթավելու «Վագրենավորը» հանճարեղ ստեղծագործությունը և Գրիգոլ Ջախրուխաձեի «Տամարիանի» պոեմը: Հայտնի են Ռուսթավելու խոսքերը. «Եվ հնդիկները, պարսիկները, ռուսները, ֆրանկները, եգիպտացիները,— բոլորն էլ եկան երգչի կոչով»: Ռուսթավելու ժամանակակից բանաստեղծ Ջախրուխաձեն այսպես է հիշատակում ռուսների մասին. «Նեղ ափով դուրս եկա ռուսների մոտ, Սև ծովից թեթև քամի էր փչում»:

Իր բախտը ռուս մեծ ժողովրդի հետ կապելու՝ վրաց ժողովրդի դարավոր իղձերը իրականացան, երբ 1783 թվականին ստորագրվեց նշանավոր Գեորգիևյան տրակտատը, իսկ 1801 թվականին Վրաստանը միացավ Ռուսաստանին:

Վրաց ժողովուրդը քաջ գիտե և երբեք չի մոռանա, որ միայն ռուս ժողովրդի օգնությունը ապահովեց նրա երկրի վերամիավորումը, օսմանյան կայսրության և շահական Պարսկաստանի լծից նրա փրկությունը, տնտեսական և կուլտուրական զարգացման հնարավորության ապահովումը:

Մեծ գրող ու մտածող Իլյա Ճավճավաձեն զուր չի ասել. «Միադավան մեծ ժողովրդի հովանավորությունը ցրեց անողորմ թշնամիներից ունեցած հավիտենական վախը: Խաղաղվեց վաղուց արդեն հանգստություն չտեսած հոգնած երկիրը, հանգստացավ ավերմունքից և ամայացումից, հավիտենական պատերազմներից ու պայքարից: Անհետացավ երկրի և մեր ընտանիքների գլխին կախված թշնամու սրի ահավոր շողքը, չքացան բորբոքվող հրդեհները, որոնց մեջ կործանվում էին մեր նախնիների տներն ու ունեցվածքը, հավիտենականության գիրկը չքացան կողոպտչական արշավանքները, թողնելով սոսկ մի ահավոր ու ցնցող հուշ: Նոր ժամանակ, հանգստության և անվտանգ կյանքի ժամանակաշրջան սկսվեց արյունաքամ ու խաչված Վրաստանի համար...»:

Վրացական գրականության ու գիտության բոլոր խոշորագույն գործիչները՝ Ալեքսանդր Ճավճավաձեն, Գրիգոլ Օրբելիանին, Նիկոլոզ Բարաթաշվիլին, Իլյա Ճավճավաձեն, Ակակի Ծերեթելին, Նիկո Նիկոլաձեն, Յակոբ Գոգե-



բաշվիլին և ուրիշներ ժողովրդին պատգամել են «...սիրել ռուսներին, բարեկամություն անել նրանց հետ և անբաժան կերպով ընթանալ նույն ճանապարհով»:

Պատմությունն արդարացրեց այդ պատգամը: Լենինյան ազգային քաղաքականությունը Սովետական Միության բոլոր ժողովուրդներին զոդեց միանական, անխախտ ընտանիքի մեջ:

Սովետական իշխանությունը երջանկություն ու բարգավաճում բերեց ոչ միայն վրաց ժողովրդին: Մեր ռեսպուբլիկայում բնակվող բոլոր ժողովուրդները մեծագույն հաջողություններ ձեռք բերեցին սոցիալիստական հասարակարգի կառուցման պայքարում: Վրացական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի կազմի մեջ մտնող Աբխազական ԱՍՍՌ-ն, Աջարական ԱՍՍՌ-ն և Հարավ-Օսեթական ավտոնոմ մարզը անցած քառասուն տարում էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում այնպիսի հաջողությունների են հասել, որոնց մասին երազել անգամ չէր կարելի Վրաստանում Սովետական իշխանության հաստատումից առաջ:

Հսկայական, խիստ պատասխանատու խնդիրներ են կանգնած վրաց ժողովրդի առջև: Վրաստանի բոլոր աշխատավորները անձնվիրաբար պայքարում են արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բնագավառում նոր հաջողությունների հասնելու համար, ՍՄԿՊ XXII համագումարը արժանավայել դիմավորելու, ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի պատմական որոշումները կենսագործելու համար:

Վրաց ժողովուրդը լի է հոյակապ յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու, ՍՄԿՊ XX և XXI համագումարների պատմական որոշումները կենսագործելու վճռականությամբ, որպեսզի Վրաստանը էլ ավելի գեղեցիկ դառնա իր եղբայրակիցների շարքում, որոնք կազմում են մեր ամբողջ մեծ սոցիալիստական Հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության հզորությունն ու հպարտությունը:

---

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ԿՈԼԽԻԴԱՆ

## ՄԻԽ. ԴԱՎԻԹԱՇՎԻԼԻ

Նախառևոլյուցիոն արխիվից վերցված մի պաշտոնական տեղեկանք ասում է. «Փոթիի յուրաքանչյուր հարյուր բնակիչներից երեսունութը հիվանդ է մալարիայով... Բոլոր փայտե շինությունները, հողի խոնավության պատճառով, կանգնած են փայտե ցցագերանների վրա»:

Լեգենդար Կոլխիդայի մայրաքաղաքի՝ Փոթիի այդ պատկերը լրացնում են նրա հին բնակիչները:

— Չորս կողմն այնպիսի ճահիճներ էին, որ դրանցում գոմեշներ կխեղդվեին...

Հենց այդտեղ, ինչպես ասում է արգոնավորդների մասին եղած առասպելը, իջան ոսկե գեղմ փնտրողները: Ավելի քան երկու հազար տարի առաջ արդեն հայտնի էր լեգենդն այն հրաշալի երկրի մասին, որը ծածկված էր շլացուցիչ անտառներով և իր ընդերքում պահում էր անհաշիվ հարստություններ: «Ֆասիսի գետաբերանում (Ռիոն գետի հնադարյան անունը—Մ. Դ.),—գրել է հունական աշխարհագրագետ-ճանապարհորդ Ստրաբոնը մեր թվագրությունից առաջ, I դարում,— ծովափը ավազուտային է, ցածրադիր և ճահճուտ»: Բայց լեռներում, նախնիների վկայությամբ «...գետակները քշում բերում են ոսկի, և այն հավաքում շաղափված տաշտակների ու բրդոտ մորթիների օգնությամբ»: Ստրաբոնը հենց դրանով էլ բացատրում է արգոնավորդների վերաբերյալ առասպելը, նրանց արշավանքը համարելով պատմական փաստ: Նրա կարծիքով արգոնավորդներին հրապուրում էին Կոլխիդայի ո՛չ թե հեքիաթային, այլ իրական հարստությունները՝ ոսկին, արծաթը, կայմափայտը, խեժը, վուշը:

Կոլխիդա աշխարհագրական անունը սերում է վրացական ամենահնագույն ցեղերից մեկի՝ կոլխերի անունից: Հնագույն ժամանակներից այդ անունով էր հայտնի այն ընդարձակ տերիտորիան, որն ընդգրկում էր գրեթե ողջ Արևմտյան Վրաստանը: Այժմ այդ անունն է կրում միայն նրա ցածրադիր մասը, որը տարածվում է ծովափին՝ երկու հարյուր կիլոմետր երկարությամբ և դեպի ցամաքի խորքն է ձգվում միայն Ռիոն գետահովտում:

Դեռ շատ վաղուց 220 հազար հեկտար տարածություն ունեցող այդ երկրամասը հայտնի էր իր ճահճուտներով. բազում դարերի ընթացքում Կովկասյան լեռնաշղթայի լանջերից դեպի Սև ծովը հոսող Ռիոն, Խոբի, Ինգուրի, Կոդորի և մյուս լեռնային գետերի բերած հսկայական քանակությամբ ավազն ու տիղմը երբեմնի ծովածոցում առաջացրել են մի ցամաք, որը համարյա թե չի թեքվում դեպի ծովը և նրանից անջրպետվում է բնական ամբարտակներով:



Հենց որ գետերը հորդանում են կամ անձրևներ տեղում,— իսկ անձրևներն այս-
տեղ հորդ են ու հաճախակի,— հեղեղատները ողողում են ամբողջ երկրամասը:
Ջուրը լճանում է ու ջրիկացնում, տարալուծում հողը:
Անցնում էին տարիներ, տասնամյակներ, դարեր... Արգավանդ հողերն
ավելի ու ավելի էին ճահճանում, իսկ մարդիկ շարունակում էին նահանջել,
ապարդյուն պայքար մղելով սոսկալի չարիքի դեմ: Բայց նրանց հույսը չէր
հատնում: Չար ոգիները, ավանդում է վրացական մի լեգենդ, մարդկանցից
խլել են հարուստ գանձերը և թաղել Պալեոստոմի լճի մոտ, այնտեղ, ուր ողո-
ղում են Ռիոն գետի ջրերը: Այդ գանձերը չար ոգիները ծածկել են ճահիճներով,
շամբուտներով, ջրաշուշաններով: Եվ այն իր տեղը մնալու է այնքան ժամա-
նակ, քանի դեռ մարդը ոտք չի դրել այնտեղ...
Անցյալում ոչ ոք չի մտածել Կոլխիդայի հողերը չորացնելու և օգտագոր-
ծելու մասին: Եվ միայն Սովետական իշխանության տարիներին վիթխարի
փոփոխություններ կատարվեցին այնտեղ: Այդ նպատակով հատկապես ստեղծ-
ված «Կոլխիդշին»-ը կատարեց ամենադժվարին մելիորատիվ աշխատանքներ
վաթսուն հազար հեկտար տարածության վրա:
Ճահիճները միանգամից չէին հանձնվում: Գործի դրվեց ժամանակակից
տեխնիկան: Կոլխիդա բերվեցին հողահան մեքենաներ ու էքսկավատորներ,
հողային պոմպերը: Հողահան մեքենաները
իսկ շուտով դրանց ավելացան հողային պոմպերը: Հողահան մեքենաները
շարժվում էին գետերով, խորացնելով դրանց հատակը, ափերին գոյացնելով
բարձր հողապատնեշներ: Բայց դա գործի կեսն էր. ճահճացումները դադարեց-
վեցին, բայց հարկավոր էր իսպառ ոչնչացնել դրանք: Փորվեցին բազմաթիվ
ջրանցքներ, որոնք քաշում էին ընդերքի ջրերն ու անձրևաջրերը և տանում ծով:
Յոթնամյակի ընթացքում Կոլխիդայում աշխատանքները լայն թափ կըս-
տանան: Յոթնամյակի առաջին տարվա կարևորագույն իրադարձությունը հան-
դիսացավ Փոթիի մոտ այն վիթխարի ամբարտակի կառուցումը, որը կարգա-
վորում է Ռիոնի ջրերի հոսքը: Քառորդ միլիոն խորանարդ մետր երկաթբետոնը
սանձահարեց մոլեգին գետը, որի ջրերն այլևս չեն ավերում ափերը և առ-
ափնյա ծանծաղուտներ չեն առաջացնում:
Ընդ որում այն ամենը, ինչ արված է Կոլխիդայում, ոչ մի կերպ չի կարելի
համեմատել այն բանի հետ, ինչ պետք է արվի առաջիկա տարիներին:
Կոլխիդայի ամբողջ տերիտորիան չորացնելուց հետո Վրաստանի թեյի
պլանտացիաների տարածությունը կավելանա քառասուն-հիսուն հազար հեկ-
տարով: Դա հնարավորություն կտա հայրենական թեյի արտադրությամբ ոչ
միայն լիովին բավարարելու երկրի պահանջմունքը, այլև արտահանելու այն:
Լայն հնարավորություններ կստեղծվեն բանջարաբուծության զարգացման,
առանձնապես վաղահաս և ուշահաս բանջարեղեն աճեցնելու համար, որն իր
հերթին հնարավորություն կտա ամբողջ տարին բանջարեղեն մատակարարել
սեծովյան առափնյա առողջարաններին: Մեծ հեռանկարներ են բացվում
եգիպտացորենի ցանքատարածություններն ընդլայնելու տեղղությամբ:
Ահա մի հետաքրքրական հաշվարկում: Կոլխիդայի ճահճային տարածու-
թյունը կազմում է Վրաստանի տերիտորիայի երեսուներորդ մասը, նրա մշա-
կելի հողերի հինգերորդ և մերձարևադարձային կուլտուրաների տարածության
երրորդ մասը. բայց եթե հաշվի առնենք, որ այստեղ կարելի է զարգացնել
այնպիսի կուլտուրաներ, որոնց յուրաքանչյուր հեկտարն իր տնտեսական նշա-
նակությամբ հավասար է վարելահողերի քառասուն հեկտարի, ապա կստացվի,

որ Կոլխիդայի հարթավայրն իր արժեքավորությամբ կգերազանցի Վրաստանի հիմնական դաշտավարական շրջանների մի քանի միլիոն հեկտար հողերին. 220 հազար հեկտար ճահճուտը կդառնա կախարդական, ամենագեղեցիկ լեգենդներին արժանի մի այգի։

Այդ այգին որոշ չափով արդեն ստեղծված է։ Այն ծաղկում է Կոլխիդայի ցածրավայրի երբեմնի ամենաճահճուտ վայրերում, ձգվելով Սև ծովի ափերին՝ Բաթումիից մինչև Սուխումի։

Դարավոր ճահիճների տեղում ամենուրեք փարթամորեն կանաչին են տալիս եգիպտացորենի դաշտերը, մերձարևադարձային բույսերը, թեյի թփերը, աճում են նարինջը, կիտրոնը, մանդարինը. այստեղ նոր հայրենիք են գտնում Իտալիայի, Ֆլորիդայի, Ճապոնիայի, Հնդկաստանի, Աֆրիկայի, Ավստրալիայի բույսերը, ստեղծվել են ցիտրուսային ու եթերայուղային կուլտուրաների սովխոզներ, երևան են եկել կոլտնտեսային նոր գյուղեր։ Այստեղ վերաբնակություն են հաստատել Վրաստանի լեռնային սակավահող շրջանների բազմաթիվ կոլտնտեսականներ։



Պատկերացնելու համար թե ինչպիսին է մեր օրերի Կոլխիդան, հարկավոր է գոնե մեկ անգամ լինել այնտեղ։ Չինացիներն իզուր չեն ասում, թե ավելի լավ է մեկ անգամ տեսնել, քան հարյուր անգամ լսել։

Սակայն քանի որ մեր երևանյան «Լենինյան ուղիով» ամսագրի բոլոր ընթերցողները չեն, որ կարող են լինել Վրաստանում, մենք կօգնենք նրանց հեռավոր մի ճամփորդություն կատարել Կոլխիդայում։

Եվ այսպես, հարգելի ընթերցող, հետևեցե՛ք ինձ։

Երևակայեցեք, որ դուք գտնվում եք մեքենայում և նա սուրալով ձեզ տանում է վրացական հրաշալի հողի այդ գեղատեսիլ երկրամասը։

...Անցնելով Սամտրեդի քաղաքը և համանուն երկաթուղային հանգույցը, որտեղից և, թերևս, սկսվում է Վրաստանի մերձարևադարձային շրջանը, մեքենան մտնում է մշտադալար բույսերի մի շքեղ այգի և ձեզ տանում դեպի Սև ծովի ափերը։ Վաղորդյան մառախուղի նոսրացող մշուշում ձեր առջև պատկերվում են զմրուխտյա բլուրների ուրվագծերը։

Այստեղ-այնտեղ, զառիթափ լանջերին ձգվում են թեյի թփերի խիտ շարքերը, որոնք իրենց հոծ, գանգուր զանգվածով մերթ ընդ մերթ հիշեցնում են ծովի հանդարտ, անշարժացած ալիքները։ Նրանց հաջորդում են ցիտրուսային այգիները, թունգի (եղրիզենու) պուրակները. փարթամ, սրածայր փշատերև ծառերի և գեղակազմ, ասես դահանակից քանդակված, նոճիների սյուները պահպանում են մերձարևադարձային քնքուշ բույսերը սառը քամիների կործանարար շնչից։ Պտղատու և խաղողի այգիների կանաչի մեջ ժամանակ առ ժամանակ երևում են երկհարկանի տնակներ՝ կարմիր կղմինդրածածկ տանիքներով, և ապա նորից՝ թեյի պլանտացիաներ, խաղողի այգիներ, պուրակներ, դաշտեր, բանջարանոցներ...

Մեքենան շարունակում է սլանալ դեպի արևմուտք... Ամեն րոպե ավելի ուժգին է զգացվում ծովի մոտիկությունը. թեթև վաղորդյան զեփյուռն արդեն բերում է նրա թարմ շունչը։ Եվ ահա, վերջապես, ծառերի արանքից առաջին անգամ երևում է անեզր կանաչ-երկնագույն բնանկարը...



Մենք Նաթանեբիում ենք. երբ խոսք է լինում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջնակարգ ճյուղի՝ մերձարևադարձային կուլտուրաների մշակության մասին, առաջին հերթին մեր աչքի առջև կանգնում է այդ գյուղը։

Մախարաձեի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունը, թերևս, ամենախոշոր տնտեսությունն է ռեսպուբլիկայում։ Նրա ամենամյա եկամուտը, հաշված նոր դրամով, անցնում է մեկ ու կես միլիոն ռուբլուց։ Կոլտնտեսության թեյի և ցիտրուսների պլանտացիաները տարածվում են հարյուրավոր հեկտարներով։ Նաթանեբիի կոլտնտեսությունը լայնորեն հայտնի է Վրաստանում նաև Հայկական ՍՍՌ Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության հետ իր տրադիցիոն բարեկամական մրցությամբ։

Նաթանեբի և Նալբանդյան գյուղերի կոլտնտեսականների բարեկամությունը վրաց և հայ ժողովուրդների բարեկամության անթիվ օրինակներից մեկն է։ Սերտ բարեկամությամբ են կապված Թելավիի ու Եղեգնաձորի, Ախալքալաքի ու Արթիկի, Բաթումիի ու Կիրովականի և շատ ու շատ շրջանների աշխատավորները։ Այդ բարեկամությունը դրսևորվում է եղբայրական երկու ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական կյանքի ամենատարբեր բնագավառներում, այն օգնում է վրացիներին ու հայերին՝ աճելու, հարստանալու։

Նաթանեբի գյուղից դեպի Բաթումի մեր ուղին ընթանում է Քոբուլեթիի շրջանի միջով, Սև ծովի ափի երկայնությամբ։

Ավտոմոբիլային հիանալի խճուղին փայլուն ժապավենի պես ձգվում է կանաչ պլանտացիաների ու այգիների երկայնությամբ, գրեթե զուգահեռ երկաթուղագծին։ Մեքենայի ընթացքի ձախ կողմից մեզ ուղեկցում է մերթ մոտեցող, մերթ հեռացող Աջարո—Իմերեթյան լեռնաշղթան, որ ստորոտներից մինչև գագաթները ծածկված է թավ անտառներով, որոնք ասես փաթաթված են քմահաճ ծալքերով ցած իջնող կանաչ շղարշյա ծածկոցով. ներքևում, դեպի ծով թեքվող հողահարթակների վրա փռված են թեյի պլանտացիաներ, ցիտրուսային պուրակներ, պտղատու այգիներ... Կանաչ գույնի տարբեր երանգները ձգվում են մեր աչքերի առջև, փոխվելով մերթ կապույտի, մերթ դեղինի, մերթ մթնելով մինչև սևանալը, կամ գունաթափվելով և ընդունելով սալաթի նուրբ կանաչավուն երանգ...

Քոբուլեթին տասը կիլոմետր երկարությամբ ձգվում է ծովափին, ծովից չհեռանալով ոչ ավելի քան հինգ հարյուր մետր։ Առողջարանն ուղղված է դեպի ծովը. այդտեղ վերջին տարիներին կառուցվել են մի շարք առողջարաններ ու հանգստի տներ։ Սպիտակափայլ այդ շենքերը հպարտորեն կանգնած են արևի շողերի մեջ, ծովաղեփյուռը նրանց է հասցնում օզոնով և աղերով հարստացված ծովային օդը։ Ամեն տարի այստեղ հանգստանում են ավելի քան քառասուն հազար մարդ։

Բայց Քոբուլեթիում բուժիչ են ո՛չ միայն արևն ու ծովը, անտառն ու լեռները, այլև փարթամ մերձարևադարձային բուսականությունը։ Քոբուլեթիի շրջանում են գտնվում Վրաստանի ամենամեծ մերձարևադարձային այգիները, որոնց պտուղներն ունեն հիանալի համ և սննդային արժեքավոր հատկություններ։

Քոբուլեթիի մոտ կազմակերպված է արևադարձային և մերձարևադարձային բուժանյութային բույսերի միանգամայն յուրահատուկ, երկրում միակ մասնագիտական սովխոզը։ Հարյուր վաթսուն հեկտարի վրա ձգված պլանտա-

ցիաներում մշակվում են ավելի քան հինգ հարյուր տեսակի բուժիչ խոտա-
բույսեր, թփեր, ծաղիկներ:

Այստեղ կտեսնեք դուք և «ոսկե խնձորներ», ինչպես Վրաստանում ան-
վանում են ցիտրուսներին, և հարավային նուրբ տանձ, և մերձարևադարձա-
յին նարնջագույն խուրմա, և հյութալի դեղձ, և շատ այլ մրգեր ու պտուղներ:

Չի կարելի անտարբե՛ր անցնել խճուղու աջ կողմում կուրորտային Ցիխիս-
ձիրի ավանի մոտ գտնվող շքեղազարդ կամարի կողքով: Կամարի վրայի մա-
կագրությունից իմանում ենք, որ այստեղ է գտնվում Ցիխիսձիրիի ցիտրուսային
սովխոզը: Դա ծովափի ամենագեղեցիկ և ինքնատիպ վայրերից մեկն է: Աջա-
րա-Իմերեթյան լեռնաշղթան այստեղ իջնում է ընդհուպ մինչև ծով և մի գա-
հավեժ լեռնաճյուղով ծովափը ճեղքում երկու մասի, որոնցից մեկի վրա վեր
են խոյանում մի հնագույն ամրոցի ավերակները՝ այն կառուցված է IV դա-
րում, ծովափը թշնամական արշավանքներից պաշտպանելու համար, իսկ
«Ցիխիսձիրի» նշանակում է «ամրոցի հիմք»:

1960 թվականին Ցիխիսձիրիի սովխոզը տվել է տասնչորս միլիոն ցիտ-
րուսային պտուղ: Եթե ռևոլյուցիայից առաջ բերքառատ տարիներին հաջողվում
էր ամեն մի ծառից հավաքել 100—129 պտուղ, այժմ սովխոզի յուրաքան-
չյուր ծառից միջին հաշվով հավաքվում է 570 պտուղ: Ցիխիսձիրիի սովխոզը
լավ հայտնի է երկրի այգեգործներին: Նրա հաջողությունները ամեն տարի
ցուցադրվում են Մոսկվայի ժողովրդական տնտեսության ցուցահանդեսում:
Սովխոզ հյուր են գալիս եղբայրական ռեսպուբլիկաների ցիտրուսագործներ,
տուրիստներ, կուրորտներում բուժվողներ:

Ռևոլյուցիայից առաջ Վրաստանում միայն հարուստ կալվածատերերի
այգիներում կարելի էր տեսնել մանդարինի ծառեր, իսկ ավելի նուրբ կիտ-
րոնների ու նարինջների մասին չէին երազում նույնիսկ լավագույն այգեգործ-
էնտուզիաստները: Ցիտրուսային պտուղների տարածությունն այն ժամանակ
երեք հարյուր հեկտարից չէր անցնում: Այժմ այն ընդարձակվել է վաթսուն
անգամ, և դրա կեսից ավելին գտնվում է Աջարիայում: Այսօր արդեն ցիտրու-
սային այգիներ կան ո՛չ միայն սովխոզներում ու կոլտնտեսություններում,
այլև գրեթե բոլոր կոլտնտեսականների տնամերձ հողամասերում:

Վրաստանի կոլտնտեսություններն ու սովխոզներն որոշել են խելացի
ձևով օգտագործել Սև ծովի մերձափնյա ամենապտղաբեր հողերը, որքան հնա-
րավոր է սովետական մարդկանց տալ ավելի շատ արժեքավոր պտուղներ:
1960 թվականին վրացական ցիտրուսագործները պետությանը տվել են հինգ
հարյուր միլիոն մանդարին և արդեն մտածում են միլիարդի մասին: Դա առա-
ջիկա տարիների գործ է:

Մեր մեքենան սլանում է առաջ, հետևում թողնելով Ցիխիսձիրին. շրջա-
պատող բնության բազմերանգ հոյակապ պատկերը ցույց է տալիս, որ ցիտ-
րուսները ամենևին էլ Վրաստանի մերձարևադարձային միակ հարստությունը
չեն: Ավելի հաճախակի են հանդիպում եղրևենու (թունգի) պլանտացիաները,
բամբուկի պուրակները...

Աշնանն ու ամռանը բարձրադագաթ եղրևենիները պատվում են լայն
տերևներով ու պտղակալում. տուրիստները հաճախ դրանք թզենիների տեղ
են ընդունում, բայց դրանց պտուղներն ամենևին էլ քաղցր չեն, դրանց հյութը
թունավոր է և դրանցից մի քանիսն ուտել, նշանակում է հրաժեշտ տալ կյան-



քին: Թզին նմանվող եղրևենու պտուղները արժեքավոր են նրանով, որ դրանք
տալիս են հատուկ յուղ, որը հիանալի հումք է արագ չորացող բարձրորակ լաքի
արտադրության համար: Այդ լաքով ծածկում են նավերի ստորջրյա մասերը,
ինքնաթիռները, ավտոմոբիլները, մոտոցիկլետները, տրանսֆորմատորները,
բարձր լարվածության լարերը, ռադիո սարքավորման դետալները:

Վրաստանում եղրևենիները տասը հազար հեկտար տարածություն են
գրավում, դրանից երկու հազարը՝ Քոբուլեթիի շրջանում: Օչխչամուրիում,
Քոբուլեթիին մոտ, աշխատում է եղրևենու յուղագործարանը, որի արտա-
դրանքն ուղարկվում է երկրի շատ քիմիական ձեռնարկություններ:

Բարձրորակ ողորկ բամբուկը արևադարձային երկրի բնակիչ է, բայց այն
հարմարվել է Վրաստանի ավելի ցուրտ կլիմային:

Սև ծովի առափնյա սովխոզներում աճում են բամբուկի ընտանիքին
պատկանող ավելի քան վաթսուն տարատեսակներ: Թեև բամբուկի բարձրու-
թյունը հասնում է քառասուն մետրի, սակայն այն ծառ չէ, այլ միամյա բույս,
ինչպիսին է ցորենը կամ վարսակը: Այդ հսկա բույսի խողովակաձև ցողուն-
ները հողից մեծ քանակությամբ խոնավություն են ծծում, չորացնելով ճահ-
ճուտային հողամասերը: Դրա ամուր ցողուններից մեզ մոտ ՍՍՌՄ-ում պատ-
րաստում են կահույք, ամանեղեն, սպորտային առարկաներ, երաժշտական գոր-
ծիքներ, նույնիսկ տներ: Բետոնապատ բամբուկի արմատուրան իր ամրու-
թյամբ չի զիջում երկաթբետոնին:

Սև ծովի աջարական ափի մերձարևադարձային և արևադարձային մյուս
բազմաթիվ բույսերից հիշենք խուրման, որի պտուղներն աչքի են ընկնում հիա-
նալի սննդարար հատկություններով, պարունակում են արժեքավոր նյութեր
ու վիտամիններ (Վրաստանում խուրմայի ծառաստանները գրավում են մոտ
յոթ հազար հեկտար տարածություն):

Քոբուլեթիի, ինչպես և հարևան Մախարաձեի շրջանում թեյն առաջատար
գյուղատնտեսական կուլտուրա է. թեյի բերքատվությամբ այստեղի կոլտնտե-
սություններն ու սովխոզները Վրաստանում առաջին տեղն են գրավում: Ապ-
րիլի վերջերից մինչև հոկտեմբեր Քոբուլեթիի պլանտացիաների ակոսապատ
փարթամ գորգերը ծաղկազարդվում են թեյի տերև քաղողների անթիվ սպի-
տակ լայնեզր գլխարկներով:

Աջարիայում ամենաընդարձակ պլանտացիաները տարածվում են Չակվա
Աջարիայում ամենաընդարձակ պլանտացիաները պատկանում են Չակվայի
բանավանի մերձակայքում: Այդ պլանտացիաները պատկանում են Չակվայի
Լենինի անվան սովխոզին, որը հայտնի է ոչ միայն իր գրաված ընդարձակ տե-
րիտորիայով, այլև հարուստ բերքով: Հենց միայն Չակվայի սովխոզն ամեն
տարի հավաքում է այնքան թեյի տերև, որ դրանցից ստացված թեյը փոխա-
դրելու համար կպահանջվի 50 վագոնից բաղկացած մի գնացք: Բայց չէ՞ որ
թեյի տերև են հավաքում Վրաստանի քսանվեց շրջանների կոլտնտեսություն-
ներն ու սովխոզները:

590 տոննա և 157000 տոննա: Այս հարաբերությամբ է արտահայտվում
թեյի տերևի բերքահավաքը Վրաստանում 1921 և 1960 թվականներին: Միայն
այս թվերի համեմատությունը ցույց է տալիս, թե ինչպես է զարգացել թեյի
մշակությունը Սովետական իշխանության տարիներին:

Յոթնամյա պլանով նախատեսված է թեյի տերևի բերքը 1965 թվականին
հասցնել 170000 տոննայի: Վրաստանի թեյագործները, հաշվարկելով իրենց
հնարավորությունները, որոշել են յոթնամյա պլանը կատարել ժամկետից

շուտ՝ 1963 թվականին, իսկ 1965 թվականին տալ 200 000 տոննա տերև։

Այդ պարտավորության մեջ էականը միայն այն չէ, որ թեյի տերևի բերքը 1965 թվականին գրեթե կրկնակի անգամ կգերազանցի 1958 թվականի բերքին, այլ այն, որ դրանով զգալիորեն կհեշտանա պատմական կարևորություն ունեցող մի խնդրի լուծումը՝ հայրենական թեյի արտադրությամբ Սովետական Միության պահանջմունքի բավարարումը։

Ջակվա բանավանը նշանավոր է ոչ միայն իր սովխոզներով։ Այն հայտնի է նաև նրանով, որ այստեղ աշխարհում առաջին անգամ ստացվել է թեյի հիբրիդային կայուն սորտ, որն իր տերևի բերքատվությամբ ու հատկություններով գերազանցում է իր նախորդներին։ Հենց դրա համար էլ Ջակվան անվանում են սովետական թեյի հայրենիք։

Մեր ուղին այժմ ձգվում է դեպի կուրորտային անկյունը՝ Կանաչ Հրվանդանը։ Այն մեզ դիմավորում է իր ապարանք-առողջարաններով, գահավեժ ափերի ծովային պլյաժներով, հարուստ բուսականությամբ։ Այստեղ ծառերը, թփերն ու խոտը այնքան խիտ են աճում, որ մարդու համար անանցանելի արահետները, դեռ հազիվ ծովեզրին հասած, թաղվում են կանաչ թավուտի մեջ, կարծես դրանց կլանում են իսկական ջունգլիները։ Այդ տպավորությունը գրեթե իրականություն է դառնում, երբ, բարձրանալով լեռնալանջով՝ մտնում ենք Բաթումի՝ Սովետական Միության ամենահարուստ բուսաբանական այգու տերիտորիան։ Մի քանի ժամ է հարկավոր այն անցնելու համար... Այդ ժամանակամիջոցում դուք կարող եք ծանոթանալ երկրագնդի բոլոր մասերի բուսական աշխարհի ներկայացուցիչների հետ։ Հարյուր հեկտարանոց այգու լանդշաֆտը այնպես արագ է փոխվում, ինչպես կադրերը կինոէկրանում։

Ավելի քան հիսուն տարի առաջ ռուս աշխարհագրագետ և բուսաբան Անդրեյ Նիկոլաևիչ Կրասնովը, որն անցել էր աշխարհի կեսից ավելին, ուսումնասիրել երկրագնդի արևադարձային ու մերձարևադարձային բուսականությունը, ոտքով անցավ Կովկասյան ծովափը։ Նա տենչում էր արևադարձային ֆլորայի գանձերը տարածել իր հարազատ երկրում։ Կանաչ Հրվանդանի շրջանը, Բաթումիին մոտ, նրան առավել հարմար թվաց իր նվիրական երազանքն իրականացնելու համար։ «Կանաչ Հրվանդանում,— գրել է Կրասնովը,— կարող են բաց երկնքի տակ աճել ամենաջերմասեր էկզոտիկներ. մեր ռուս տուրիստը պետք է մերձարևադարձային ու արևադարձային բույսերի պատրանքներ փնտրի ո՛չ թե Ալժիրում ու Թունիսում, ո՛չ թե Նիցցայում ու Սալոյայում, նույնիսկ Շվեյցարիայում չպետք է հավաքվեն հազարավոր էքսկուրսանտներ, այլ Կանաչ Հրվանդանում»։

Պրոֆեսոր Կրասնովի երազանքներն իրականացան միայն նրա մահից հետո, երբ Վրաստանը դարձավ Սովետական Ռեսպուբլիկա, և Բաթումիի բուսաբանական այգում հավաքվեցին երկրագնդի համարյա բոլոր տաք երկրների բույսերը։

Կանաչ Հրվանդանը Բաթումիից բաժանող ութ կիլոմետրը մենք անցնում ենք գրեթե աննկատ։ Մեքենան անցնում է մանդարինի պուրակների, թեյի պլանտացիաների, մրգատու և խաղողի այգիների միջով, հորիզոնում հեռավոր լեռների սպիտակափառ գագաթներն են, իսկ մեղմ քամին մեզ է բերում ծովի թարմ շունչը...

Այն, ինչ դուք, թանկագին ընթերցող, ապրեցիք, ճամփորդելով մեզ հետ Սև ծովի աջարական ափերով, պետք է բազմապատկել մի քանի անգամ, որ-



պեսզի հասկանաք վրացական մերձարևադարձային մյուս մասի՝ Աբխազիայի հրապույրը։ Այստեղ ամեն ինչ ժպտում է մարդու հոգուն՝ անտառապատ լեռները, սրընթաց գետերը, թեյի, ծխախոտի, եթերայուղատու կուլտուրաների պլանտացիաները, մանդարինի ու կիտրոնի պուրակները, մրգատու այգիները, երկնագույն ծովի ծիծաղկոտ ափերը։ Աջարիայի ափերի նման դրանք Սովետական Միության բոլոր անկյուններից մարդկանց ձգում են դեպի իրենց։ Ձմեռը վերջանալուն պես հազարավոր մարդիկ գնացքներով ու շոգենավերով, ավտոմոբիլներով ու ինքնաթիռներով գալիս են այստեղ՝ հանգստանալու և բուժվելու։

Աբխազիան լեռների երկիր է, դրանք զբաղեցնում են նրա տարածության երկու երրորդը։ Տեղ-տեղ լեռներն այնքան են մոտենում ծովին, որ ծովեզրյա շերտը գրեթե անհետանում է։ Աբխազիայում և աջարական ցածրավայրում նախկինում խիստ տարածված էր մալարիան։ Այժմ դրա հետքն անգամ չկա։ Ամեն տարի Աբխազիայում հանգստանում են մոտ կես միլիոն մարդ. նրանք բոլորն էլ հիացմունքով ու գովեստով են խոսում այս հրաշալի մերձսևծովյան այգու մասին։

— Բոլոր ուժերով զարգացնել հարուստ երկրամասի արտադրողական ուժերը,— գրել է Վլադիմիր Իլյիչ Լենինը Կովկասի կոմունիստներին ուղղված իր նշանավոր նամակում, Վրաստանում Սովետական իշխանության հաստատումից հետո։

Լենինյան պատգամները հանդիսացան երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի բանվոր դասակարգի ու գյուղացիության աշխատանքի հիմքը։

Ամեն տարի ոսկե վալյուտայով միլիոնավոր ռուբլիներ էին ուղարկվում արտասահման թեյ գնելու համար։ Մինչդեռ մեզ մոտ, Վրաստանում, թեյաբույսի մշակման համար պիտանի հիանալի հողերը կամ պարապ ընկած էին, կամ զբաղված էին էժանագին կուլտուրաներով։

Այսօրվա Վրաստանը դարձել է «հավերժական ծաղկանոց»։ Ամբողջ Սովետական Միության համար այնտեղ աճեցվում են արժեքավոր անդամթերքներ՝ ելակից ու վաղ գարնան թեյի տերևից սկսած մինչև ձմռան ոսկեհատ ցիտրուսային պտուղները։ Վրաստանը տալիս է երկրում արտադրվող թեյի 96 տոկոսը, ցիտրուսների 98 տոկոսը, արտադրում է բարձրորակ գինիներ, պտուղներ, դեղին ծխախոտ, ինչպես նաև մետաքս, եթերային յուղեր և այլ տեխնիկական կուլտուրաներ։

Դիմելով Թբիլիսիում կայացած Անդրկովկասյան ռեսպուբլիկաների 1961 թվականի փետրվարի 6—7-ին կայացած գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցներին, Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը ասաց. «Դուք, հարավցիներդ, պետք է մեր ընդհանուր ժողովրդական կաթսայի մեջ ավելի շատ մտցնեք այնպիսի մթերքներ, ինչպիսին խաղողն է, մրգերը, ցիտրուսները, թեյը»։

Ի պատասխան պարտիայի կոչին, Վրաստանի ժողովուրդը փնտրում ու գործի է դնում նորանոր ռեզերվներ գյուղատնտեսության բոլոր մթերքների արտադրության շեշտակի վերելքի համար։ Այն չտեսնված աշխատանքային խանդավառությունը, որ այս օրերին տիրում է վրացական գյուղում, ցույց է տալիս, որ Վրաստանը շուտով կդառնա իսկական առատության ռեսպուբլիկա։ Չէ՞ որ հինավուրց Կոլխիդայի վրա բոցավառվում է Հոկտեմբերի լույսը, իրականացված երազների լույսը։

---

# ՏԱՓԱՍՏԱՆԻ ԱՐԾԻՎԸ

## Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Տափաստանի միջով ձգվում է ճանապարհը։ Այդ ճանապարհով քայլում են երկու մարդ՝ երկու սերնդի ներկայացուցիչներ—ավագ և միջին։ Երկուսն էլ թիկնեղ են, ամրապինդ, ասես պղնձաձույլ մարմնով, բովված, շիկավուն դեմքով։

Եվ նա, որ առավել տարեց է՝ յոթանասունի դռները ծեծող, դեռ գնում է առանց ձեռնափայտի, մեջքն ուղիղ պահած, տափաստանը չափող իր կապույտ, վճիտ աչքերի հայացքը հեռուներն ուղղած։ Ճերմակ, ձյունաթույր մազերը, դեմքն ակոսող մանր ու մեծ կնճիռները տակավին չեն աղոտում նրա աշխույժը։ Ավելի շուտ՝ նա հիշեցնում է ծերունու դեր կատարող այն ջահել արտիստին, որն առաջին իսկ ոգևորության պահին ակամայից մատնում է տարիքը։

Վլադիմիր Ալեքսանդրովիչ Մալիգին—այսպես են կոչում նրան։ Սակայն մեր կողմերում նրան ճանաչում են մի բառով՝ «Ալեքսանդրիչ»։ Ռուսական մետալուրգների ավագ սերնդի ներկայացուցիչներից է նա։ Այս տոհմային մետալուրգի աշխատանքային կենսագրությունը նույնպես հեշտ արտասանվող երկու բառի մի պարզ, հասարակ կապակցություն է՝ կես դար։

Վլադիմիր Ալեքսանդրովիչի ուղեկիցը՝ Ռուսթավիի խոշոր մոնտաժների վարպետ Իվան Բեսեդինը տարիքով, իհարկե, շատ է զիջում նրան, բայց փորձով ու գործով նրա արժանավոր ընկերն է, սրտակիցն ու զրուցակիցը։

Հիմա էլ, վաղորդյան այս ժամին, հաճելի զրույցի բռնված, նրանք գնում են հանգիստ, անշտապ։ Ավելի շուտ՝ Ալեքսանդրովիչը պատմում է մի ինչ-որ վաղեմի բան՝ հոգեպարար, սրտագրավ, իսկ Բեսեդինը, գլուխը կախ, երանելի ժպիտը դեմքին, լուռ լսում է նրան։

Սուլիչից առաջ են դուրս եկել քաղաքից։ Գնում են գործարան։ Հին սովորություն է՝ տարիների թողած մրուր, որ արդեն բնավորություն է դարձել. արթնանալ բոլորից վաղ, բոլորից շուտ էլ հայտնվել աշխատանքի վայրում։

Կարող էին, իհարկե, սպասել ավտոբուսի, բայց վաղորդյան այս ժամին, երբ օդը մաքուր է, վճիտ, շրջապատը՝ խաղաղ ու անդորր, ոտքով քայլելն իր ուրույն հմայքն ունի։

Ու պատմում է Ալեքսանդրիչը։

Երբեմն միայն տափաստանից պոկված մի թեթև քամի նրա շուրթերից խլում-թռցնում է հատ ու կենտ բառեր։ Իվան Բեսեդինը մի պահ կանգ է առնում ճամփամիջում, աչքի մեկը կիսախուփ, հարցական նայում նրա դեմքին, որպես թե՝ «Հետո՞, Ալեքսանդրիչ... լավ չլսեցի»։



Բայց հին մետալուրգը կցան տալու սովորություն չունի։ Նրա մտքերն
ասես ձուլածո են. առանց խոսքը կրկնելու առաջ է տանում զրույցը.

— ...Եվ ասաց Միրոնիչը՝ վե՛ր կաց, Վոլոդյա...

Մեր մետալուրգի զրույցը ռևոլյուցիայի տրիբուն Սերգեյ Միրոնովիչ Կիրովի մասին է, այն բոցաշունչ մարդու, որի հետ Վլադիմիր Ալեքսանդրովիչը շատ մտերիմ է եղել և որին նա համարում է իր առաջին ուսուցիչը։

Իսկ թե ի՞նչ ասաց Միրոնովիչը Վոլոդյային—այ, դրան է, որ ականջը սրած, շունչը պահած պիտի սպասի Իվան Բեսեդինը։

Զրուցակիցները կանգ են առնում մի պահ։ Ալեքսանդրիչը ծխախոտ է վառում, երևի հուզմունքն է մեծ։ Քամին պոկում, տանում է ծխի մի պատառ։ Ասես ծերունու ճերմակ մազերի մի փունջ է քամու տարածը։

— Մխենք...

Բեսեդինը լուռ համաձայնում է։

Եվ զրուցելով նորից քայլում են նրանք՝ շրջապատի հետ միրված, շրջապատի հետ ձուլված այս պարզ, հասարակ, շատ սովորական մարդիկ, իսկական ռուս մարդիկ։

Սակայն կանգ առնենք մի պահ, սիրելի ընթերցող, փորձենք քիչ թե շատ խորանալ նրանց աշխատանքային կենսագրության մեջ, մտքի աչքերով չափել նրանց անցած ուղին։

Այնժամ, թերևս, մեր հայացքի առջև հառնեն երկու իսկական դյուցազուններ—մեր օրերի, մեր ժամանակների այն հերոս մարդիկ, որոնց աշխարհաշեն ձեռքերով կերտված գիգանտ գործարանները, կոմբինատները, մետալուրգիական կենտրոնները եթե կարմրաթև աստղերով նշելու լինենք մեր Հայրենիքի քարտեզի վրա, ապա ամբողջ քարտեզը անհուն երկնակամարի նման կշողշողա կարմրաթև աստղերի փայլից։

Իվան Բեսեդինի աստղաբույլն, օրինակ, մեզ կժպտա Ստալինգրադից, Խարկովից, Կուզնեցկից, Բելգորոդից, Կուրսկից, Բաքվից և, վերջապես, Ռուսթավիից։

Իսկ Վլադիմիր Ալեքսանդրովիչի պայծառ աստղախումբը իր շողքը կտարածի Հեռավոր Հյուսիսից, Սիբիրի վրայով կգնա, կիջնի Լոռվա մթին ձորերը, Ալավերդու հրակայուն աղյուսի գործարանը, ապա՝ Ռուսթավի, Կհասնի մինչև Թումանյանի

Որտե՞ղ միայն չեն եղել նրանք։

Պարտիայի ուղեգրով են նրանք այսպես չափում մեր Հայրենիքի լայնքն ու երկայնքը, ամենուրեք կյանք ու շունչ տալիս մետալուրգիական նորանոր օջախների, դաստիարակում, աճեցնում նոր կադրեր, առաջ մղում հայրենի մետալուրգիան։

Այո՛, ստեղծարար, աշխարհաշեն մարդիկ են նրանք՝ բազմափորձ, բազմահմուտ, լենինյան դարի մարդիկ, որոնց մոգական ձեռքերի տակ գետերը փոխում են իրենց ընթացքը, անապատները ծաղկում, որոնց սրատես, արծվենի հայացքի դիմաց տիեզերքն անգամ օր-օրին բացում է իր խորախորհուրդ գաղտնիքները։

***

Ուղեկիցս՝ գարդաբանցի մի ծերուկ, բանվորական գնացքի պատուհանից մատնացույց է անում Քուռ գետի գոգաձև հովիտն ու կկոցում աչքերը։

Դրսում դեռ կիսամութ է։ Աղջամուղջը եղյամվում է երկաթուղու աջ ու ձախ կողմերում փռվող ընդարձակ տափաստանի վրա։ Վաղորդյան մշուշը հետզհետե նոսրանում, դառնում է բաց-մանիշակագույն, և նրա միջից արդեն որոշակիորեն երևում են Ռուսթավիի նորակառույց գործարանի հսկա կորպուսների ուրվագծերը, շինարարական հրապարակների մետաղե վիթխարի կարկասները, որոնք օդային լարափակոցներ են հիշեցնում։

— Այս տափաստանում ես... որս եմ արել...— ուշացումով, մի քիչ էլ վարանոտ, ասում է գարդաբանցին։ Կարծես ստուգելիս լինի ինքն իրեն՝ արդյոք չի՞ սխալվում, կարո՞ղ էր երբևէ այստեղ որս լինել, լսողները կհավատա՞ն իրեն։

Բայց ինչո՞ւ միայն գարդաբանցի ծերունին։ Երիտասարդ սերունդն անգամ այս տափաստանը տեսել է մերկ ու ամայի, մացառի, ուղտափշի թփերով ծածկված, տեղ-տեղ՝ եղեգնապատ, իսկ ավելի արևմուտք՝ Քուռ գետի ափերը վայրի, անանուն թփերով, անտառներով ցանցված։

Իսկ հիմա՞...

Գիշեր ու ցերեկ ծխում են Ստալինի անվան Անդրկովկասյան մետալուրգիական գիգանտի երկնահուպ ծխանները, հոնդալով գործում են մարտենները, բլյումինգը, գլանող սարքերը, ջերմաէլեկտրակենտրոնը, կոքսի ագլոմեբատի, ազոտային պարարտանյութերի հսկա գործարանները, բազմաթիվ ու բազմապիսի օժանդակ ձեռնարկությունները։

Տափաստանային արծվի նման իր հզոր թևերը փռած, օր-օրի բարձրանում է վրաց մետալուրգների քաղաք սոցիալիստական Ռուսթավին՝ ռեսպուբլիկայի պարծանքը։

Նրա մարկան կրող ընտիր պողպատը, գլանվածքը, խողովակները արդեն հասել են շատ հեռու։ «Միրնի», «Դուդենկա»—երբեմն այսպիսի հասցեագրությամբ ապրանքատար վագոններ են ուղևորվում Ռուսթավի քաղաքից։ Դրանցից մեկը ծայր հարավում է՝ հենց հարավային բևեռի մոտ, մյուսը հյուսիսային բևեռի շրջանում։

Բայց ինչո՞ւ միայն դրանք։

Մեր երկրի ո՞ր անկյունում միայն չի գործադրվում Ռուսթավիի մետալուրգների արտադրանքը։ Մեծ քանակությամբ խողովակներ են ստանում Բրատսկի հիդրոէլեկտրակայանի շինարարները, Խարկովի, Ստալինգրադի տրակտորային, Ռոստովի, Լիպեցկի գյուղատնտեսական մեքենաների գործարանները։ Ռուսթավցիների թողարկած մետաղն արտահանվում է մեր երկրի սահմաններից դուրս՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա, Չինաստան, Վիետնամ, Ալբանիա, Բուլղարիա։ Վրաց մետալուրգների ձեռքով գլանված խողովակները, կտրելով ծովեր ու օվկիանոսներ, հասնում են մինչև հեռավոր Արգենտինա, Հնդկաստան և այլուր։

Բայց չէ՞ որ ընդամենը երկու տասնամյակ առաջ այս գիգանտ գործարանի, նրա սոցիալիստական բարեշեն քաղաքի տեղում մի կատարյալ ամայություն էր, չոր, վայրի տարածություն, ուր ո՛չ միայն գարդաբանցի ծերունին, այլև մեր սերնդի մարդիկ որսի են դուրս եկել, հալածել գայլերի ոհմակը, շամփրել եղեգնուտի մեջ խոոթխոոթացող վայրի վարազին։

Ի՜նչ հրաշքով ծնվեց նոր քաղաքն իր լայն, ասֆալտապատ պողոտաներով, բազմահարկ, գեղեցկատես շենքերով, զբոսայգիներով, պուրակներով, ծաղկանոցներով, այս գիգանտ գործարանն իր հարուստ, կատարելագործված



մեխանիզմներով, ավտոմատ կառավարման սարքերով, ինչպես ստեղծվեցին, աճեցին, առնականացան մետալուրգների այս հմուտ, բանիմաց կադրերը։

Անշուշտ, հրաշք չկա այստեղ։

Սոցիալիստական Ռուսթավին կառուցվեց ու բարձրացավ մեր սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությամբ՝ երկու հարյուր միլիոն զույգ ձեռքերով։

Երբ տափաստանի հողմը սպառնում էր գետնի երեսից պոկել ու շպրտել Ռուսթավիի շինարարների բրեզենտե առաջին գորշ վրանները, հեռավոր Սոլիկամսկը հավաքովի տներ ուղարկեց այստեղ։ Բրյանսկի և Գորկու մարզերի հարուստ անտառանյութերով բեռնված երկաթուղային էշելոնները հասցրեցին իրար։ Լենինգրադի էլեկտրասարքավորումները տեղ հասան նշված ժամկետից շատ առաջ։

Սվերդլովսկի ծանր մեքենաշինական գործարանը Ռուսթավիի համար պատրաստեց Եվրոպայում ամենահզոր խողովակագլանման հաստոցը։ Նովոկրամատորսկի ծանր մեքենաշինական գործարանի կոլեկտիվը Ռուսթավի ուղարկեց սովետական հետպատերազմյան առաջին բլյումինգը։ Նորակառույց քաղաքին և գործարանին օգնության ձեռք մեկնեցին չելյաբինսկցիները՝ ուղարկելով ջերմաէլեկտրակենտրոնի բարդ սարքավորումը։ Դնեպրոձերժինսկը մետաղե կոնստրուկցիաներ տվեց, Դոնբասը՝ պողպատե ռելսեր, Հայաստանը՝ տուֆ, հրակայուն աղյուս, մեծ ճնշման հարմարեցված գազային կոմպրեսորի հաշվիչ սարքեր։

Այսպես, մեր մարդկանց աշխարհաշեն ձեռքերով կառուցվեց, շարք մտավ Անդրկովկասյան գիգանտն՝ իր հոյակապ քաղաքով։



Դեռ նոր էր ձևվում արևախանձ տափաստանը, նոր էին փորվում առաջին խրամատները, նոր էին շարվում առաջին աղյուսները, երբ ռեսպուբլիկայի տարբեր շրջաններից հավաքագրված հազարավոր պատանիներ ու աղջիկներ մեկնեցին դեպի հյուսիս՝ երկրի մետալուրգիական կենտրոններում բազմազան պրոֆեսիաների տիրապետելու, ռուս և ուկրաինացի տոհմային մետալուրգների հարուստ փորձը ուսումնասիրելու։ Որտեղ էլ եղան, ում էլ աշակերտեցին, ամենուրեք նրանք ջերմ, գրկաբաց ընդունելություն գտան։ Ավագ եղբայրների հոգատար ձեռքը այգեպանի հոգատարությամբ աճեցրեց, դաստիարակեց նրանց։

Տարիներ առաջ, գարնան մի առավոտ, Ստալինգրադի «Կրասնի օկտյաբր» մետալուրգիական գործարանի խողովակագլանման ցեխի շեմքում հայտնվեցին մի խումբ վրացի երիտասարդներ՝ ճամփորդական պայուսակներն ուսած։ Նրանց արևախանձ, շիկավուն դեմքերը վկայում էին, որ լեռնցիներ են, իսկ լայն բացված, խաղացկուն աչքերն ասում էին, որ անծանոթ են մեծ գործարանի շունչին։

Նկատելով նորեկների այդ երկչոտությունը, վարպետ Ֆյոդոր Շերշիցկին ժպտադեմ առաջ գնաց։

— Հը, բարի գալուստ, տղանե՛ր, այս ինչո՞ւ ուշացաք,— ասաց այնպիսի սրտաբաց տոնով, որ կարծես վաղուց, վաղուց սպասելիս լիներ նրանց։

Երիտասարդների շփոթմունքն անցավ։ Համարձակ շունչ քաշեցին։ Մի՞թե

խոք, ուշացել էին։ Եվ նրանք աշխուժացան, սկսեցին արդարանալ. գուցե գնացքն է ուշացրել։ Հետո՝ ավտոբուսին մի քիչ երկար սպասեցին և ապա՝ մեծ ճանապարհ է, ո՞վ իմանա, ուշանալու հազար ու մի առիթ է լինում։

— Դե, լա՛վ, լա՛վ, ոչինչ... ուսուցման ընթացքում կհարթենք,—նույն աշխույժ, սրտաբաց տոնով հանգստացրեց վարպետը։— Հիմա գնանք, ցույց տամ մեր ցեխը, տեսեք՝ ինչ աննման գեղեցկուհու գիրկ եք ընկել դուք...

Տղաներն ուրախ քրքջացին, ապա մեկ մեկու հրմշտելով՝ մտան ցեխ։

Այդ պահից էլ սկսվեց Ֆյոդոր Տերշիցկու և նրա սաների մտերմությունը։ Վարպետը իր աշակերտներին թևավորեց մետալուրգիական տեխնիկայի հարուստ գիտելիքներով ու մի գեղեցիկ օր, նրանց իր հետ վերցրած, եկավ Ռուսթավի։ Հիմա նրա աշակերտներն Անդրկովկասյան մետալուրգիական գործարանի առաջավորներ են, կոմունիստական աշխատանքի վարպետներ։ Նրանցից Ռուխաձեն, Տոմատաձեն, Ջիծիգուրին և ուրիշներ, հմուտ մետալուրգի համբավ վայելելով, այժմ իրենք են աճեցնում արագագործ խողովակագլանողների նորանոր ջոկատներ։

Ահա այս ձևով իրենց առաջին մկրտությունը ստացան, թրծվեցին ու հայրենի քաղաքը վերադարձան պողպատ ձուլողների, կոքսագործների, սարքավարների, ավտոմատավարների առաջին կադրերը։ Հետագայում, երբ Ռուսթավիի մետալուրգիական գործարանի բազայի վրա ստեղծվեց նաև ազոտային պարարտանյութերի խոշոր գործարանը, նրա առաջին կադրերի դարբնոցը հանդիսացավ Կիրովականի քիմկոմբինատը։

Եվ ամենևին պատահական չէ, որ հիմա ռուսթավցիները հազար թելերով կապված են մեր երկրի արդյունաբերական շատ ու շատ քաղաքների, նրանց անվանի մարդկանց հետ։ Օր չի անցնում, որ ջերմաշունչ, սրտառուչ նամակներ չստացվեն մեր Հայրենիքի նշանավոր մետալուրգներից։

Ահա դրանցից միայն մեկը։

«Թանկագին բարեկամներ։

Մեր ամբողջ կոլեկտիվը հպարտանում է իր աշակերտներով։ Մենք, որպես սովետական մետալուրգների միասնական ընտանիքի անդամներ, միշտ պատրաստ ենք մեր խորհուրդներով օգնել ձեզ, իսկ եթե պետք լինի, սիրով կգանք Վրաստան, կօգնենք հենց տեղում»։

Այս սրտաբուխ տողերի հեղինակները Ստալինոյի մետալուրգիական գործարանի մարտենյան ցեխի պետ Պյոտր Գլազկովը, պողպատ ձուլողներ Յակով Կուզմինը, Միխայիլ Չեռնիկովն են՝ ռուսթավցիներին քաջ ծանոթ նրանց առաջին դաստիարակները։

Մեծ, բազմամարդ ու բազմազգ է Ռուսթավիի մետալուրգների կոլեկտիվը։ Այստեղ ուս-ուսի, թև-թևի տված, աշխատում են ռուսն ու ուկրաինացին, բելոռուսն ու վրացին, հայն ու ադրբեջանցին, ռումինացին ու իսպանացին, գերմանացին ու իտալացին...

Աշակերտելով երկրի լավագույն մետալուրգներին, այժմ ռուսթավցիներն իրենք են մետալուրգների կադրեր պատրաստում ո՛չ միայն մեր երկրի արդյունաբերական նոր կենտրոնների, այլև՝ ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար։

Տարիներ առաջ Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական ռեսպուբլիկայից Ռուսթավի ժամանեց շինարար Կիմ Խի Ջերը։ Նա եկել էր ուսումնասիրելու, սովորելու երկաթ-բետոնե դետալների պատրաստման տեխնիկան, որպեսզի



հայրենիք վերադառնալով՝ պեմզան և հրաբխային ծագում ունեցող ծակոտկեն մյուս նյութերի հարուստ պաշարները լայնորեն օգտագործի։

Նորեկ շինարարի շեֆությունը վերցրին ռուսթավցիներ Թումանիշվիլին, Հախվերդյանը, Գորձիևը, Աբասովը։ Կիմ Խի Ջերը ո՛չ միայն դարձավ մասնագետ, այլև սովորեց ռուսաց լեզուն, ընդունվեց Մոսկվայի՝ Կույբիշևի անվան շինարարական ինստիտուտը, ավարտեց, դիսերտացիա պաշտպանեց և Կորեա վերադարձավ տեխնիկական գիտությունների թեկնածուի աստիճան ստացած։ Մինչև հիմա էլ երիտասարդ գիտնականը սիրով ու երախտագիտությամբ է հիշում, նամակներ գրում իր ռուսթավցի բարեկամներին։

Այժմ ռուսթավցիները, աշխատելով մետալուրգիական լրիվ ցիկլով, երկրին տալիս են ոչ միայն բարձրորակ պողպատ, չուգուն, կոքս, խողովակներ, ագլոմերատ, գլանվածքներ, ազոտային պարարտանյութեր, ցեմենտ, շինարարական դետալներ, այլև՝ մետալուրգների հմուտ կադրեր, որոնք իրենց փորձն ու գիտելիքներն են հաղորդում նորաստեղծ մետալուրգիական օջախների կոլեկտիվներին, օգնում Հնդկաստանի, Չինաստանի երիտասարդ մետալուրգներին։

***

Այն արժանահիշատակ տարիներին, երբ նոր էր կառուցվում Ռուսթավին, ես, որպես ռեսպուբլիկական թերթի աշխատակից, հաճախ էի լինում շինարարների մոտ, երբեմն գիշերում նրանց հետ։ Բարեկարգ շենքեր չկային։ Ամենուրեք խարխուլ, հանպատրաստից խրճիթներ էին։ Մի գիշեր ուժեղ քամի բարձրացավ։ Սենյակում մենակ էի։ Խրճիթը դողում էր քամուց։ Միջնորմից այն կողմ՝ հարևան սենյակում, նոր բնակություն էր հաստատել միջահասակ մի մարդ։ Ո՞վ էր, չգիտեի։

Երևում էր, որ նա ևս անսովոր է նոր բնակավայրին և քնել չի կարողանում։ Փայտե թախտը սպառնագին ճռճռում էր նրա տակ։

— Դուք քնա՞ծ եք,—վերջապես հարցնում է միջնորմի ճեղքով։

— Ե՞ս։ Ո՛չ... Սատանան տանի, այս քամու բերանում քնե՞լ կլինի...

Հարևանս գալիս է ինձ մոտ։ Ծանոթանում ենք, նստում զրույցի։

— Ա՛յ թե քամի է, հա՜... Դուք չե՞ք կարծում, որ սա մի իսկական հողմերի քաղաք կլինի...

— Դժվար թե։ Հողմը հյուսիսից է՝ ապագա գործարանային թաղամասից։ Հավանորեն քաղաքը կկառուցեն այնպես, որ գործարանների ծուխն ու մուրն այս կողմը չգան։ Այստեղ երկար ժամանակ հետազոտություններ են կատարվել։ Ուսումնասիրել են նաև քամու ուղղությունները... Հողմերի չէ, բայց ահա, գուցե մի օր ծաղիկների, վարդերի քաղաք դառնա...

Ես ժպտում եմ։ Իմ հյուրը կամաց-կամաց աշխուժանում է, բացվում։

— Ճիշտն ասած, ես հենց դրա համար եմ եկել,—խոստովանում է նա։— Պրոֆեսիայով ես պարտիզպան եմ՝ այգեգործ։ Մեր պարտքն է Ռուսթավին զերծ պահել ծխից ու մրից, ինչպես և փոշուց, աղմուկից։ Առանց մեզ իսկական քաղաք չի ստեղծվի։ Բայց դա՝ հետո, երբ արդեն ձև առնեն առաջին բակերը, փողոցները, հրապարակները...

Իմ զրուցակիցը՝ այգեգործ Դավիթ Սեվաստիչ Լոլաձեն, հիմա Անդրկովկասյան մետալուրգիական գործարանի բարեկարգման ցեխի պետն է։ Այո՛, Ռուսթավիում կա նաև այդպիսի ցեխ։ Աճել, մեծացել է նորակառույց քաղաքը,

և բոլորովին նոր պահանջ առաջադրել քաղաքային Սովետին։ Եվ ամենևին պատահական չէ, որ շինարարական այնպիսի վարչությունների կողքին, ինչպիսիք են՝ «Բնակշինը», «Դոմնաշինը» «Գլանվածքշինը», հայտնվել է մի նոր վարչություն ևս՝ «Կանաչշինն», իսկ մետալուրգիական գործարանում՝ բարեկարգման ցեխ։

Այս տարիների ընթացքում Դավիթ Սևաստևիչը շատ ուժ ու ջանք է գործադրել, որպեսզի սոցիալիստական Ռուսթավին փթթի ծաղիկների մեջ, ողողվի թավ կանաչով, զուգվի զբոսայգիներով, պուրակներով, ծառաստաններով, որոնք ամռանը խշշում են քաղցրալուր և իրենց թանձր ստվերը տարածում հարթ, ասֆալտապատ մայթերի ու փողոցների վրա։

Ռուսթավին այսօր կանաչ քաղաք է, մի յուրօրինակ այգի-քաղաք։

Նրա ծառազարդ փողոցներում եղևնու, ակացիայի, խնձորենու կողքին փարթամորեն աճում են՝ արմավենին, նոճին, դրացենին, մերձարևադարձային զանազան զարդաբույսեր, որոնք հմայիչ տեսք են տալիս քաղաքին։ Մետալուրգիական գործարանի ամբողջ տերիտորիան ողողված է կանաչով։ Այստեղ բանաստեղծների գովերգած զանգրասաղարթ կեչին հարևանություն է անում քաղցրաբույր թխկենու հետ։

Հենց միայն անցյալ տարի խողովակագլանման, կոքսա-քիմիական, էլեկտրանորոգման ցեխերի առջև տնկվել են 2000 թուփ ու զարդաբույս։

Մեծանում, փարթամանում է քաղաքը, նրա հետ միասին՝ կանաչ զանգվածը, ծաղկանոցներն ու ծառաստանները։ Քուռ գետի վրա գցած նոր հսկա կամուրջով քաղաքը մի մեծ քայլով անցավ գետի աջ ափը, դրավեց նոր, ահագին տարածություն և արագորեն ծավալվում, մեծանում է, հարազատ որդու նման ընդառաջ գնալով ռեսպուբլիկայի մայրաքաղաք Թբիլիսիին։

Այստեղ շարք են մտնում բնակելի նոր շենքեր, փողոցներ, թաղամասեր։ Շինարարների բանակը մետալուրգների համար կառուցում է գեղեցիկ, հարմարավետ բնակարաններ, որպեսզի քրտնաջան, ստեղծագործ աշխատանքից հետո ռուսթավցին լավ հանգստանա, վայելի այն բոլոր բարիքները, ինչ Սովետական իշխանությունը տվել է աշխատավորներին։

Վաղ առավոտից «Բնակշինի» № 58 տեղամասում, շինարարական լաստակների վրա դուք կտեսնեք ջլապինդ, թխադեմ մի մարդու։ Դա ինժեներ Ժուտա Ջաբիչաձեն է՝ սոցիալիստական Ռուսթավիի կառուցողներից մեկը։ Բրիգադավարներին, աշխղեկներին հերթական առաջադրանք տալուց հետո նա աչալուրջ հսկում, հետևում է երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ, շինարարական դետալներ, բլոկներ, պանելներ փոխադրող մեքենաների, այդ ամենն ամբարձող մեխանիզմների աշխատանքին։ Հենց միայն նրա տեղամասում անցյալ տարի կառուցվեց մոտ չորս հարյուր նոր բնակարան։ Այս տարվա առաջին եռամսյակում հինգ և վեցհարկանի շատ նոր շենքեր կզարդարեն քաղաքի կենտրոնական պողոտան, գեղեցիկ առափնյայով կբարեկարգվի կամրջամերձ հրապարակը։

Հարևան՝ 57-րդ թաղամասում բնակելի բազմահարկ շենքերն ունեն վերելակներ, իսկ պատշգամբներն ունենալու են կախովի ծաղկամաններ, և գարնանը վարդի, շուշանի, քրիզանթեմի թփերը անցորդներին ժպտալու են ո՛չ միայն մայթի եզրերից, այլև շենքերի հինգերորդ, վեցերորդ հարկերից։

Աջափնյա Ռուսթավիի շինհրապարակներն ունեն իրենց առաջավորները, որոնց անձնուրաց քրտնաջան աշխատանքով կառուցողների ողջ կոլեկտիվն է



հպարտանում այսօր։ Ահա նրանցից յոթնամյակի հարվածայիններ՝ որմնադիր Արսեն Միկլաուրին, մոնտաժող Շոթա Մոդեբաձեն, սվաղող Ալեքսի Իրեմաշվիլին, աշխուժ Հակոբ Մարաոյանը և շատ ուրիշներ։ Նրանց հմտության շնորհիվ է, որ այժմ բնակելի շենքերը կառուցվում, շահագործման են հանձնվում նախատեսված ժամկետից զգալիորեն շուտ՝ ընդամենը երեք-չորս ամսում։

Նրանց ջանքերով է, որ օր-օրի ավելի է գեղեցկանում վրաց մետալուրգների քաղաքը, հարստանում կուլտուրայի և հանգստի զբոսայգիներով, ֆիզկուլտուրայի և սպորտի հրապարակներով, նոր մարդու ապրելակերպին վայել կենցաղային սպասարկման բարեկարգ օջախներով։

Տափաստանի միջով կողք-կողքի քայլում են երկու ուղեկիցներ՝ արտաքինով հասարակ, հոգով՝ դյուցազն։

Նրանցից մեկը՝ տարեցը, շարունակում է իր պատմությունը, մյուսը ուշադիր լսում է նրան, երանության ժպիտը դեմքին գլուխը տմբացնում։

Թե ինչից է սկսվել այդ պատմությունը, ինչ առիթով, դժվար է ասել, բայց երբ զարդարանցի ծերուկի և մի խումբ երիտասարդ մետալուրգների հետ միասին մոտենում ենք նրանց, Վլադիմիր Ալեքսանդրովիչը, իր կապույտ աչքերը կկոցած, խաղաղ ձայնով ասում է.

— ...Եվ ասաց Միրոնիչը՝ վե՛ր կաց Վոլոդյա, կառուցի՛ր Աստրախանի հրետանային արհեստանոցը։ Այսօր զենք է պետք. զենք ձուլենք, պաշտպանենք մեր երիտասարդ սոցիալիստական ռեսպուբլիկան։ Իսկ վաղը, երբ աշխարհը խաղաղվի, գութան կշինենք, գազգահ, տրակտոր... Մեզ մետաղ է հարկավոր, շա՜տ... Հե՜յ գիտի, տասնութ թվականին էր դա։ Ի՜նչ ահեղ ժամանակներ էին։ Ինչքա՜ն չարչարվեցինք մի հասարակ արհեստանոց շինելու համար։ Այստեղ հասավ,— և Ալեքսանդրիչը մատը տանում է դեպի կոկորդը։— Իսկ հիմա՞...

Հին մետալուրգը կանգ առավ, հիացայտ նայեց առաջ։ Աչքերը ողողվեցին լույսով։

Նրա դիմաց հաղթականորեն բարձրանում էր Անդրկովկասյան մետալուրգիական գիգանտը՝ իր երկնաբերձ ծխաններով, օդը ցանցող մետաղե կարկասներով, անթիվ, անհամար շենքերով։

Միտք չուներ այլևս խոսքը շարունակել, որովհետև կյանքն ինքն արդեն հստակորեն պատասխանել էր նրա հարցին։

---

## ՎԱՅԵԼՈՒՄ Է ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻ ՎՍՏԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Պրոպագանդիստ Սամսոն Գրիգորյանը արդեն ութերորդ տարին է, որ աշխատում է Ս. Մ. Կիրովի անվան գործարանի 30—30 ա ցեխում։ Նա գործարան եկավ Պոլիտեխնիկական ինստիտուտն ավարտելուց հետո։ Ուսանողական նստարանը նոր թողած երիտասարդի համար բանվորական այս հիանալի կոլեկտիվում սովորելու շատ բան կար։ Ցեխում, իր աշխատանքային ընկերների օգնությամբ, կարճ ժամանակում նա կարողացավ հասկանալ «արտադրության լեզուն», դառնալ ցեխի համերաշխ կոլեկտիվի սիրված անդամներից մեկը։ Շուտով նրան ընտրեցին ցեխի կոմերիտական կազմակերպության քարտուղար, իսկ մեկ տարի անց՝ կոմերիտական քաղխմբակի պրոպագանդիստ։

Անցան տարիներ, կոլեկտիվի հետ աճեց նաև Գրիգորյանը՝ ոչ միայն որպես արտադրության ղեկավար, այլև որպես պրոպագանդիստ։ Նրա պրոպագանդիստական աշխատանքում առաջին քայլերը հաճախ եղել են անհամարձակ ու անհաջող։ Բայց այժմ նա ունի աշխատանքի իր ուրույն մեթոդները, հարուստ փորձ. ունկնդիրները սիրով են լսում նրան։ Հետևում են մնացել դժվարությունները, անփորձությունն ու սխալները։ Իր կոչման մեծագույն պատասխանատվությամբ, նա անընդհատ հարստացնում է իր տեսական և մեթոդական գիտելիքները, խորանում ունկնդիրների հոգեբանության, նրանց հուզող հարցերի մեջ, խուսափում ձևականությունից ու շաբլոնից։

Արդեն չորրորդ տարին է, որ Ս. Գրիգորյանը ցեխի պարտիական կազմակերպության քաղխմբակի պրոպագանդիստն է։ Սկզբնական շրջանում քաղխմբակն ուսումնասիրում էր ընթացիկ մոմենտի կարևորագույն հրադարձությունները, հետո՝ ՍՄԿՊ պատմությունը, իսկ նոր՝ 1960—1961 ուստարում սկսեց ուսումնասիրել արտադրության կոնկրետ էկոնոմիկան։

Նոր ուստարում պրոպագանդիստի առաջ լրացուցիչ դժվարություններ ծառացան։ Գործարանի պարտիական կոմիտեի որոշմամբ պարտիական լուսավորության սիստեմում ավելացավ անպարտիականների թիվը։ Հարկ եղավ զրուցել հերթափոխի բոլոր բանվորների հետ, հաշվի առնել նրանց ցանկությունները, խորհուրդներով օգնել նրանց՝ ճիշտ ընտրելու իրենց տեսական-քաղաքական մակարդակի բարձրացման ձևը։ Այդ զրույցներից հետո միայն կոմպլեկտավորվեց քաղխմբակը։ Քաղխմբակը բաղկացած է 22 հոգուց (ՍՄԿՊ անդամներ՝ 8, ՀամԼԿԵՄ անդամներ 4, անպարտիականներ 10 հոգի)։ Դրանք բոլորը ապարատավարներ և ավագ ապարատավարներ են։

Պրոպագանդիստին հաջողվեց կարճ ժամանակամիջոցում քաղխմբակը դարձնել ամուր կոլեկտիվ, որը ձգտում է խոր ու բազմակողմանի գիտելիքներ ձեռք բերել։ Նա լավ է ճանաչում քաղխմբակի ունկնդիրներին։ Տարիների համատեղ աշխատանքը նրան հնարավորություն է տվել մոտիկից իմանալու յուրաքանչյուր ունկնդրի հետաքրքրությունները, նրա ուժեղ և թույլ կողմերը։ Անհատական մոտեցում յուրաքանչյուր ունկնդրի նկատմամբ—ահա Գրիգորյանի աշխատանքի հաջողության գրավականը։

30—30 ա ցեխը մեծ է, աշխատանքն՝ անսպառ։ Ցեխի պետի տեղակալ ընկ. Ս. Գրիգորյանի աշխատանքային օրը շատ լարված է անցնում, բայց նա միշտ էլ ժամանակ է գտնում ունկնդիրներին օգնելու։ Նրանց հուզող հարցերին ճիշտ պատասխանելու համար հաճախ նա դիմում է մասնագետներին, պարտիական ու սովետական աշխատողներին։ Ցեխի կամ գործարանի պլանային բաժիններից նա միշտ անհրաժեշտ տվյալներ է վերցնում քաղխմբակի պարապմունքների ժամանակ օգտագործելու համար։

Պրոպագանդիստ Գրիգորյանը յուրաքանչյուր նոր պարապմունքի նախապատրաստվում է ամենայն բարեխղճությամբ, որովհետև, ինչպես ինքն է ասում, ծրագրային նյութն իմանալը մի բան է, իսկ այն ունկնդիրներին հասցնելը՝ մատչելի, ամբողջական և տրամաբանորեն շարադրելը մի այլ բան։ Պատահում է, որ պրոպագանդիստը լավ ծանոթ է տվյալ թեմային, սակայն, նրան չի հաջողվում այն մատչելի շարադրել։ Պրոպագանդիստը պետք է կարողանա ոչ միայն լավ շարադրել նյութը, այլև շարժել ունկնդիրների հետաքրքրությունը, ոգևորել նրանց։ Դրա համար անհրաժեշտ է, որ պրոպագանդիստը կարողանա ջոկել թեմայի առանցքային հարցերը պարզաբանող առավել բնորոշ փաստեր, յուրաքանչյուր պարապմունքի համար ընտրել նպատակահարմար ձև։

Պրոպագանդիստ Գրիգորյանը նոր պարապմունքին նախապատրաստվում է այսպես. նախ՝ նա ուսումնասիրում է թեմային վերաբերող գրականությունը, հաճախ օգտագործում է նաև քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների էկոնոմիկային վերաբերող գրականություն, ինչպես նաև համապատասխան ամսագրեր։ Ապա կազմում է պարապմունքի պլանը, իսկ անհրաժեշտության դեպքում՝ ընտրում է համապատասխան դիդակտիկ նյութեր։

Վերջերս մենք ներկա եղանք խմբակի պարապմունքին։ Պարապմունքից առաջ սենյակում հավաքվել էին 10-ից ավելի բանվորներ և զրուցում էին ինչ-որ թեմայի շուրջ։ Հավաքվածները նոր էին վերջացրել աշխատանքը, ոմանք նույնիսկ չէին հասցրել փոխել արտահագուստը։ Պրոպագանդիստ Ս. Գրիգորյանը սենյակի մի անկյունում ուրախ զրուցում էր միջահասակից բարձր, խիստ դեմքով և սպիտակահեր մի բանվորի հետ։

— Եկան,—հանկարծ ասաց ներկա գտնվողներից մեկը, և բոլորը մոտեցան երկար գրասեղանին, նրա շուրջը տեղավորվելու համար։ Ներս մտան մի խումբ բանվորներ։ Դրանք 30 ա տեղամասից էին, նույնպես քաղխմբակի անդամներ։

Պրոպագանդիստը մի հայացք գցեց ունկնդիրների վրա և ապա օրագրում նշումներ կատարելուց հետո պարապ-

մունքն սկսեց։ Թեման էր. «Արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական-տնտեսական գործունեության պլանավորումը»։

Ունկնդիրներին հարցեր առաջադրվեցին, իսկ երբեմն պրոպագանդիստն անվանապես դիմում էր այս կամ այն ունկնդրին։ Աշխատանքի այդ մեթոդի շնորհիվ ունկնդիրները շատ ակտիվ կերպով էին մասնակցում թեմային վերաբերող հարցերի քննարկմանը. խոսեցին գրեթե բոլոր ունկնդիրները։ Նրանք մեխանիկորեն չէին վերարտադրում գրքից կարդացածը։ Թեմայի տեսական հարցերը նրանք կապում էին կյանքի, իրականության հետ։

Պրոպագանդիստ Գրիգորյանը խրախուսում է իր ունկնդիրների աշխատանքի այդ ձևը, օգնում ավելի բնորոշ օրինակներ ընտրելու, ամեն կերպ աշխատում ծրագրային նյութի ուսումնասիրությունն այնպես վարել, որ այն օգնի ունկնդիրներին՝ իմաստավորելու իրենց պրակտիկ գործունեությունը։

Խմբակի պարապմունքների ժամանակ միշտ առաջին պլանի վրա են գտնվում՝ սոցիալիստական արդյունաբերության, Ս. Մ. Կիրովի անվան գործարանի տնտեսա-տեխնիկական գործունեության հարցերը։

Խոսելով սոցիալիստական արդյունաբերության դերի և խնդիրների մասին՝ ունկնդիր Մելքումյան Արմենակն ուղղակի սկսեց իրենց ցեխից.

— Մեր ցեխում արտադրությունն անխափան վարելու համար անհրաժեշտ են բազմաթիվ նյութեր, որոնք արտադրվում են զանազան ձեռնարկություններում։ Առանց պլանավորման այդ ձեռնարկությունները ժամանակին չեն մատակարարի պահանջվող նյութերը և մեր ցեխի աշխատանքները կձախողվեն։ Այսպես եղավ 1954 թվականին, երբ սխալ պլանավորման հետևանքով գործարանի կոշտ վառելիքի պաշարները տարվա կեսին վերջացան, և պլանները կատարվեցին միայն 60 տոկոսով. դրա հետևանքով իրենց պլանները չկարողացան կատարել նաև մի շարք այլ գործարաններ, որոնք աշխատում էին մեր արտադրանքի բազայի վրա։

Այնուհետև ձայն խնդրեց բրիգադավար Վ. Միրաբյանը։ Նա խոսեց պլանավորման մասին, որպես սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականության իրականացման միջոցի։

— Մինչև վերջին երեք տարիները մեր ցեխում բացակայում էր ռիթմիկ աշխատանքը, որովհետև զանազան պատճառներով և, հատկապես, նյութի անկանոն մատակարարման հետևանքով ամեն ամսվա առաջին կեսը աշխատում էինք ոչ լրիվ բեռնվածությամբ, իսկ երկրորդ կեսը՝ գերբեռնվածությամբ. տիրում էր գրոհայնությունը։ Անկանոն մատակարարման գլխավոր պատճառը ոչ ճիշտ պլանավորումն էր։ Այժմ վիճակն արմատապես փոխվել է. մեր ցեխը (և ոչ միայն ցեխը) աշխատում է համաչափ, առանց ընդհատումների։

Հետո քննարկվեց այն հարցը, թե ինչպես պետք է կազմել պլանները, որպեսզի դրանք զերծ լինեին սխալներից։

Ունկնդիրներից մեկն առաջարկեց ցեխերի ընթացիկ պլանները կազմելուց առաջ քննարկել տվյալ ցեխի կոլեկտիվի ժողովում, խորհրդակցել արտադրությունն իմացող մարդկանց հետ և հաշվի առնել նրանց կարծիքը։

Ունկնդիրներից Ա. Ջիրոյանը, խոսելով սոցիալիստական պլանավորման նպատակի մասին, կոնկրետ օրինակներով ցույց տվեց նրա դերը սովետական ժողովրդի հարաճուն պահանջմունքները բավարարելու գործում։

Գրիգորյանը բոլոր հարցերի քննարկման ժամանակ պասսիվ դիտողի դերում չէր։ Նա մասնակցում էր քննարկմանը, հաճախ տալիս էր լրացուցիչ հարցեր, օգնում ունկնդիրներին՝ կյանքից վերցրած կոնկրետ օրինակների վերլուծությամբ ընդհանրացումներ կատարել և այլն։ Խոսվեց պլանաչափ-պրոպորցիոնալ զարգացման տնտեսական օրենքի մասին և պրոպագանդիստը նկատեց, որ ունկնդիրներից ոմանք լավ չեն պատկերացնում օրենք հասկացությունը, հանգամանորեն պարզաբանեց այն։

Կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրությունն այս ձևով կազմակերպելու շնորհիվ քաղխմբակի պարապմունքը չի վերածվում արտադրական խորհրդակցության (մի երևույթ, որ հաճախ է նկատվում այդ տիպի քաղխմբակների աշխատանքում), այն հանդիսանում է կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների վերլուծման միջոցով մարքսիստական տեսության հարցերի խոր ուսումնասիրությունը կազմակերպելու կարևորագույն մեթոդ։

Մտքերի փոխանակությունն ավարտվում է պրոպագանդիստի շատ համառոտ ամփոփման խոսքով, ապա նա սկսում է շարադրել նոր թեման։ Պրոպագանդիստը խոսում է պարզ, հասկանալի լեզվով, իսկ գիտական տերմիններ օգտագործելիս բացատրում է դրանք։ Իր մտքերը հիմնավորելու համար նա բերում է օրինակներ ցեխի աշխատանքից։ Խոսքի տպավորիչ դառնալուն խիստ օգնում է նրա ավյունը։ Հաճախ նրա զրույցն ընդունում է կըրքոտ բանավեճի բնույթ, իսկ Գրիգորյանը վիճում է ոչ թե առարկություն չընդունող իմաստունի տեսքով, այլ որպես հավասարը հավասարի հետ և աշխատում է ունկնդիրներին ներգրավել սրտաբաց զրույցի մեջ։

Այդ է պատճառը, որ ունկնդիրները նրան դիմում են ամեն տեսակ հարցերով՝ հաստատ համոզված լինելով, որ պրոպագանդիստը, անկախ հարցի բնույթից, դրանց կպատասխանի անկեղծորեն և կօգնի հասկանալու բարդ հարցերը։

Նոր թեման շարադրելուց հետո պրոպագանդիստը պատասխանում է ունկնդիրների հարցերին, որից հետո հանձնարարություններ է տալիս նրանց։ Բայց քաղխմբակի պարապմունքը դրանով չի ավարտվում։ Այս քաղխմբակում տրադիցիա է դարձել յուրաքանչյուր պարապմունքի վերջում զրուցել առօրյա միջազգային հարցերի շուրջ։

Քաղաքական աշխատանքի լավ դրվածքն իր դրական ազդեցությունն է թողել ցեխի արտադրական պլանները սիստեմատիկաբար կատարելու վրա։ Եվ պատահական չէ, որ աշխատանքային լավագույն հաջողությունների շնորհիվ ցեխն արժանացել է կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման։

Պրոպագանդիստ Ս. Գրիգորյանն անհանգիստ բնավորություն ունի։ Նա անընդհատ պրպտում է, խորհում և տընտեսական մեծ էֆեկտ ունեցող ռացիոնալիզատորական առաջարկություններ անում։ Հենց միայն վերջերս նրա մասնակցությամբ գործարանի մի խումբ ինժեներներ արեցին ռացիոնալիզատորական մի առաջարկություն, որի տարեկան պայմանական էֆեկտը կազմում է 640 հազար ռուբլի։

Բայց Ս. Գրիգորյանը միայն ռացիոնալիզատոր չէ, այլ նաև ռացիոնալիզատորական շարժման ակտիվ կազմակերպիչ: Քաղխմբակի պարապմունքների ժամանակ նա հաճախ է ունկնդիրների ուշադրությունը հրավիրում արտադրական այս կամ այն պրոցեսի կատարելագործման անհրաժեշտության վրա։ Երբեմն առանձին ունկնդիրների առաջարկում է զբաղվել այս կամ այն պրոցեսի կատարելագործմամբ, սիստեմատիկաբար հետևում նրանց աշխատանքների ընթացքին, ոգևորում և մասնագիտական խորհուրդներ է տալիս նրանց։ Օրինակ՝ նկատելով, որ նաիրիտի հակավորման գոյություն ունեցող պրոցեսը պիտանի չէ և բանվորների համար լրացուցիչ դժվարություններ է

ստեղծում, պրոպագանդիստը քաղխմբակի պարապմունքներից մեկի ժամանակ Մարտիրոսյանին և Մեսրոպյանին առաջարկեց զբաղվել այդ պրոցեսի կատարելագործմամբ։ Մի քանի օր անց վերջիններս ներկայացրին իրենց առաջարկը, որը մի քանի անգամ հեշտացնում է բանվորների աշխատանքը։

Այսպիսի օրինակները եզակի չեն։ Պրոպագանդիստ Ս. Գրիգորյանն ամեն կերպ աշխատում է քաղխմբակը դարձնել կոնկրետ գործերի նախաձեռնման և կազմակերպման վայր, օգտագործել նրա հնարավորությունները՝ ունկնդիրների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունն անընդհատ բարձրացնելու համար։ Եվ, պատահական չէ, որ քաղխմբակի բոլոր ունկնդիրներն իրենց արտադրական պլանները սիստեմատիկաբար կատարում են 107—110 տոկոսով, պայքարում արտադրության բարձր կուլտուրայի և բարձր արտադրողականության համար։

Քաղխմբակի ունկնդիրներն աշխատանքում և կենցաղում արիության, առաքինության, ազնվության օրինակ են հանդիսանում։

Թե՛ երիտասարդ և թե հասակն առած ունկնդիրները, բոլորն էլ սիրում են իրենց պրոպագանդիստին։ Իսկ պրոպագանդիստը չի չարաշահում ունկնդիրների վստահությունը, այլ ամենայն ակնածանքով և ուշադրությամբ է վերաբերվում նրանց հետ։ Մարդու համար չկա ավելի մեծ հատուցում,—ասում է նա,—քան այն, որ աշխատանքային ընկերներդ քեզ վստահում, հավատում և սիրում են, քեզ համարում են իրենց բարեկամն ու խորհրդատուն։

Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ
Ս. ՊՈՂՈՍՅԱՆ

## ԱԳԻՏԱՏՈՐԸ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՎԻՐԱԿՆ Է

Այժմ, քան երբեք, բարձրացել է քաղաքական ագիտացիայի մակարդակը, այն դարձել է ավելի կոնկրետ, կոմունիստական շինարարության պրակտիկայի կարևորագույն հարցերին համապատասխան։ Բարձրացել է նրա կազմակերպող և մոբիլիզացնող դերը։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների կողմից առաջադրվել և աշխատավորական լայն մասսաների շրջանում ագիտացիոն աշխատանք են տանում ավելի քան 35 հազար ագիտատորներ։ Նրանց մեծ մասն արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորներ են, կոլտնտեսությունների ու սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։ Նրանք աշխատավորական ամենալայն մասսաներին լուսաբանում են պարտիայի և կառավարության որոշումները, պրոպագանդում կոմունիզմի վեհ գաղափարները, մեր երկրի ներքին և միջազգային կյանքի կարևոր իրադարձությունները։ Ագիտատորը ընդհանրացնում և տարածում է արտադրության առաջավորների ու նորարարների փորձը, մոբիլիզացնում բանվորներին և կոլտնտեսականներին, ռեսպուբլիկայի ողջ աշխատավորությանը՝ յոթնամյակի պլանները հաջողությամբ կատարելու համար։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումներն ու ձեռնարկումները կոլտնտեսության աշխատավորներին ժամանակին բացատրելու և նրանց ուժերի մոբիլիզացման գործում պարտիական կազմակերպությանն ակտիվ կերպով օգնում են Սիսիանի շրջանի Շաղաթ գյուղի կոլտնտեսության ագիտատորները։ Նրանք վերջերս լայնորեն մասսայականացրին ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները։ Շատ կոլտնտեսականներ ագիտատորների զրույցներից հետո պարտավորություններ ստանձնեցին։ Այսպես՝ անասնապահական ֆերմայի կթվորուհի Թ. Բաբայանը ստանձնեց լրացուցիչ պարտավորություն՝ իր խնամած 12 կովից ստանալ 12 հորթ, պլանով նախատեսված 1700-ի փոխարեն 2250-ական կիլոգրամ կաթ։ Լրացուցիչ պարտավորություններ ստանձնեցին նաև Շ. Մկրտչյանը, Հ. Մելքումյանը և ուրիշներ։

Ամենօրյա ագիտացիոն աշխատանքը մեծ չափով օգնում է Սևանի շրջանի Դդմաշեն գյուղի կոլտնտեսությանը՝ անասնապահների ուժերը մոբիլիզացնելու և անասնաբուծության բնագավառում հաջողությունների հասնելու գործում։ Իրենց բարեխիղճ, լավ աշխատանքով աչքի են ընկնում հատկապես ագիտատորներ Ա. Ղարիբյանը, Ա. Գրիգորյանը և ուրիշներ։ Ագիտացիոն պարապմունքները նրանք անց են կացնում կենդանի զրույցի ձևով, թեմաները սերտորեն կապում են կոլտնտեսության ամենօրյա գործերի ու խնդիրների հետ։

Մինչև վերջերս ՀԿՊ քաղկոմ-շրջկոմները և սկզբնական պարտիական կազմակերպությունները մասսայական-քաղաքական աշխատանքը հիմնականում տանում էին ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, շինարարական կառույցներում, որի հետևանքով այդ աշխատանքի ոլորտից դուրս էր մնում բնակչության զգալի մասը՝ տնային տնտեսուհիները, թոշակառուները և ուրիշներ։ Մասսայական-քաղաքական աշխատանքների շրջանակներն ընդլայնելու նպատակով պարտիական կազմակերպությունները ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թ. Հունվարի 9-ի որոշումից հետո սկսեցին հատուկ ուշադրություն հատկացնել մշտական գործող ագիտկետերի գործունեությանը։ Եթե մինչև ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը ռեսպուբլիկայում կային մի քանի տասնյակ ագիտկետեր, ապա այժմ դրանց թիվը 200-ից անցնում է։ Պարտիական կազմակերպությունները լրացուցիչ կարգով ագիտկետերի համար առաջադրել են ավելի քան 3000 ագիտատոր։

Պարտիական կազմակերպությունները մշտապես հետևում են, որ բնակչության շրջանում տարվող ագիտացիոն աշխատանքը լինի կոնկրետ, բովանդակալից, բոլորին ներգրավի քաղաքական կյանքի ոլորտը, նպաստի նրանց ակտիվության ու նախաձեռնության զարգացմանը։ Ագիտկետերն ունեն քաղաքական, գեղարվեստական հարուստ գրականություն, ամսագրեր և ամենօրյա թերթեր։

Ագիտկետերի ագիտատորները մոտիկից հետաքրքրվում են բնակչության կյանքով ու կենցաղով, հաշվի առնում նրանց պահանջներն ու ցանկությունները, օգնում են նրանց հուզող հարցերի լուծմանը։

Ուսանելի աշխատանք է կատարում Լենինական քաղաքի № 3 ագիտկետը, որի վարիչն է մանվածքային ֆաբրիկայի պարտբյուրոյի քարտուղար Խ. Հակոբյանը։ Ագիտկետը դարձել է թաղամասի բնակիչների հաճելի վայրը։ Այստեղ ամեն երեկո հավաքվում են տնային տնտեսուհիներ, թոշակառուներ և ուրիշներ։ Ագիտկետն իր աշխատանքային պլանի համաձայն կազմակերպում է զանազան կարգի հետաքրքրական միջոցառումներ՝ դասախոսություններ, զեկուցումներ, հանդիպումներ և այլն։ Ընթացիկ տարում զեկուցումներ են կարդացվել Կոմունիստական և բանվորական պարտիաների մոսկովյան խորհրդակցության արդյունքների, ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի նյութերի մասին։ Աշխույժ ու հետաքրքրական էր ագիտկետում վերջերս կազմակերպված «Աշխատել, ապրել կոմունիստաբար» թեմայով երեկոն։ Երեկոյի մասնակից-

ները ստացան իրենց հետաքրքրող շատ հարցերի սպառիչ պատասխանը։ Շատ շատերը մասնակցեցին մտքերի փոխանակությանը։

Ագիտկետերի աշխատանքի ուսանելի փորձ են ձեռք բերել նաև ռեսպուբլիկայի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները։ Նրանք ագիտկետեր են ստեղծել ոչ միայն գյուղում կամ արտադրական օբյեկտներում, այլև գյուղից հեռու գտնվող անասնապահական ֆերմաներում։ Իջևանի շրջանի գրեթե բոլոր անասնապահական ֆերմաներն ունեն ագիտկետեր։ Լավ է գործում Ենոքավան գյուղի կոլտնտեսության անասնապահական ֆերմայի ագիտկետը։ Այնտեղ ագիտատորները հաճախ կազմակերպում են զրույցներ, զեկուցումներ, պատմում ռեսպուբլիկայի առաջավոր անասնապահների աշխատանքի փորձից։ Ժամանակին են այստեղ հասնում ամսագրերը, օրվա թերթերը, գեղարվեստական գրականություն և այլն։ Ագիտկետում գեղեցիկ ձևավորված ստենդների վրա ցուցադրված են կոլտնտեսության նվաճումները, նրա հեռանկարները յոթնամյակում։ Աչքի զարնող տեղում փակցված տախտակի վրա գրանցվում են կթվորների ամենօրյա ցուցանիշները։

Հատկապես աշխույժ են անցնում հարց ու պատասխանի երեկոները Երևանի, Կիրովականի, Գորիսի և այլ քաղաքների ու շրջանների շատ սկզբնական կազմակերպություններում։

Լավ նախապատրաստված հարց ու պատասխանի երեկոն մեր պրոպագանդայի լավագույն ձևերից է։ Այն նպաստում է աշխատավորական ամենալայն մասսաների հետ պարտիական կազմակերպությունների կապի ամրապնդմանը, օգնում նրանց՝ ժամանակին ուսումնասիրելու աշխատավորների տրամադրությունները, ճիշտ որոշելու գաղափարական աշխատանքի ուղղությունը։

Հաջող են անցնում նաև թեմատիկ երեկոները։ Թեմաների ճիշտ ընտրությունը և դրանց խնամքով նախապատրաստումը երեկոների հաջողության լավագույն գրավականն են։ Լավ էին կազմակերպված վերջերս Ալավերդու շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում անցկացված «Ով չի աշխատում, նա չի ուտի» թեմայով երեկոները։

1958 թվականից սկսած յուրաքանչյուր տարի հոկտեմբերի 16-ին Ապարանի շրջանի աշխատավորները՝ հատկապես անասնապահները, մեծ ոգևորությամբ տոնում են հովվի օրը։ Շրջանի բոլոր հովիվներն այդ օրը մասնակցում են իրենց աշխատանքի արդյունքների ամփոփմանը։ Կատարվում է փորձի փոխանակում, առաջավոր հովիվներին տրվում են թանկարժեք նվերներ։ Այդ ամենից հետո սկսվում են մասսայական պարն ու երգը, խաղերը և այլն։

Պարտիական կազմակերպությունների կողմից մասսայական-քաղաքական աշխատանքի այսպիսի բազմազան ձևերի օգտագործումն ավելի գործնական է դարձնում պարտիական պրոպագանդան ու ագիտացիան։

Շատ պարտիական կազմակերպություններ որոշակի հաջողություններ են ձեռք բերել կանանց շրջանում տարվող աշխատանքում։ Ռեսպուբլիկայի բոլոր քաղկոմ-շրջկոմներին կից ստեղծվել են կանանց խորհուրդներ։ Եղեգնաձորում, Ապարանում, Արտաշատում, Կիրովականում ստեղծվել են նաև կանանց ակումբներ։ Պարտիայի Շամշադինի շրջանային կոմիտեին կից գործող կանանց խորհուրդը, որտեղ ընդգրկված են շրջանի ակտիվ կանայք, պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներ, արտադրության առաջավորներ, տնային տնտեսուհիներ և ուրիշներ, սիստեմատիկաբար գումարում են նիստեր, քննարկում կանանց շրջանում տարվող աշխատանքի հարցերը, հետևում ձեռնարկված միջոցառումների կատարմանը։ Խորհուրդն իր խմբերն ունի գյուղերում։ Դրանցից հատկապես լավ են գործում Մովսես, Ղրղի և Թովուզ գյուղերի խմբերը։ Մովսես գյուղի խումբը, որի ղեկավարն է բժշկուհի Ս. Մուրադյանը, ակումբին կից ստեղծել է կար ու ձևի և տնավարության խմբակներ։ Խմբի նախաձեռնությամբ գյուղի կանանց համար կազմակերպվել են դասախոսություններ «Կնոջ հիգիենիան», «Երեխաների դաստիարակությունը ընտանիքում», «Միջազգային տեսություն» և այլ թեմաներով։

Ագիտացիոն աշխատանքի հաջողությունը ամենից առաջ պայմանավորված է ագիտատորների կազմով։ Պարտիական կազմակերպությունները որպես ագիտատորներ պետք է առաջադրեն բազմակողմանիորեն պատրաստված, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների էկոնոմիկան լավ իմացող, քաղաքական աշխատանք սիրող, աշխատավորության շրջանում հարգանք վայելող մարդկանց, որոնք կարողանան ստեղծագործաբար, մատչելի ձևերով բացատրել մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն դրույթները, պարտիայի և կառավարության որոշումները՝ դրանք սերտորեն կապելով կյանքի հետ։

Պետք է ասել, որ վերջին ժամանակներս զգալի չափով բարելավվել է ագիտատորների որակական կազմը։ Այժմ ռեսպուբլիկայի ագիտատորների 60 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, 40 տոկոսը արդյունաբերության, գյուղատնտեսության մասնագետներ են։ Աշխատավորների շրջանում ագիտացիոն աշխատանք են կատարում արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարները։

Կիրովական քաղաքի բոլոր հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները պրոպագանդիստներ կամ ագիտատորներ են։ Կամոյի անվան շրջանի Այգեվանք գյուղի կոլտնտեսությունում ագիտատորներ են՝ կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Դադիկյանը, պարտկազմակերպության քարտուղար Ս. Ավետիսյանը և ուրիշներ։ Հենց վերջերս Մեղրու շրջանի Ալդարա գյուղի ինտելիգենցիայի ներկայացուցիչները կոչ արեցին շրջանի ինտելիգենցիային՝ ակտիվորեն մասնակցելու շրջանի բնակչության մեջ տարվող հասարակական-քաղաքական աշխատանքներին։ Այդ կոչը լայն արձագանք գտավ շրջանում։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորների համար սիստեմատիկաբար հրավիրվում են սեմինարներ, խորհրդակցություններ։ Բացի դրանից կազմակերպված են նաև ագիտդպրոցներ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 63 այդպիսի դպրոցներ։ Դպրոցներն ագիտատորներին տալիս են սիստեմատիկ գիտելիքներ, նրանց զինում տեսական ու մեթոդական անհրաժեշտ պատրաստականությամբ։ Լավ են գործում Լենինական քաղաքի, Արթիկի, Արտաշատի շրջանների շատ ագիտդպրոցներ։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքներում ձեռք բերված դրականը մեզ չի կարող հանգստացնել, մանավանդ, որ պարտիական շատ կազմակերպություններ մշտական ուշադրություն չեն հատկացնում քաղաքական ագիտացիայի բովանդակությանը, նրա ներգործությանը։ Այդ պատճառով էլ ագիտացիան հաճախ լինում է կյանքից կտրված, չի կապվում տվյալ ձեռնարկության կամ կոլտնտեսության կոլեկտիվի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ, կրում է ձևական բնույթ։ Զրույցներում անբավարար են օգտագործում ցայտուն, կենսական, դրական փաստեր ու օրինակներ, որի հետևան-

քով այն հաճախ չի նպաստում արտադրական խնդիրների լուծմանը։ Այդպիսին է ագիտացիոն աշխատանքների վիճակը, օրինակ, Բասարգեչարի, Մարտունու, Կալինինոյի, Եղեգնաձորի շրջանների որոշ սկզբնական կազմակերպություններում։

Հաճախ ագիտացիոն աշխատանքը չի խթանում պայքարը գույքողականության, պետական շահերն արհամարհելու, աշխատանքային և արտադրական կարգապահությունը, սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների դեմ։ Երբեմն ագիտատորներն անցնում են ժողովրդական սեփականության հափշտակման, հարբեցողության ու հակահասարակական այլ երևույթների կողքից, չեն խարազանում հանրօգուտ աշխատանքից խուսափողներին։ Թալինի, Ստեփանավանի շրջանների մի շարք գյուղերում կան հանրօգուտ աշխատանքից խուսափող երիտասարդներ, սակայն դեռևս նրանց դեմ պայքար, կամ նրանց շրջանում դաստիարակչական աշխատանք չի տարվում։

Յուրաքանչյուր ագիտատորի խնդիրը պետք է լինի՝ կյանքից վերցրած դրական, ուսանելի օրինակներով դաստիարակել կոմունիստական հասարակության արժանի, լավագույն հատկություններով օժտված և բազմակողմանիորեն զարգացած մարդիկ։ Աշխատավորներին դաստիարակել պարտիայի ու ժողովրդի գործի նկատմամբ անսասան հավատի, կոլեկտիվիզմի ու աշխատասիրության, թերությունների նկատմամբ անհաշտության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության, նոր հասարակության բարոյական վսեմ սկզբունքների ոգով։

Դեռևս անբավարար են օգտագործվում ագիտացիոն աշխատանքի բազմազան ձևերը, հատկապես անհատական աշխատանքը մարդկանց հետ։ Անբավարար աշխատանք է տարվում գիշերային հերթափոխություններում, անասնապահական ֆերմաներում, հանրակացարաններում և այլուր։ Նոյեմբերյանի, Ապարանի շրջանների առանձին գյուղերի կոլտնտեսություններում բնակչության որոշ մասն ընդգրկված չէ ագիտացիոն խմբակներում։

Մեծ ու պատվավոր է ագիտատորի համեստ ու անխոնջ աշխատանքը։ Ահա թե ինչու պարտիական կազմակերպությունները իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում պետք է պահեն ագիտատորների հետ տարվող աշխատանքը, նրանց սիստեմատիկ օգնություն ցույց տան։ Պարտիական կազմակերպությունները միշտ պետք է հիշեն Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ ագիտատորը Սովետական իշխանության լիազոր ներկայացուցիչն է մասսաների մեջ, որ հանձին ագիտատորի աշխատավորները տեսնում են պարտիայի և պետության պատվիրակներին, որոնք կոչված են պատասխանելու նրանց հետաքրքրող բոլոր հարցերին, օգնելու իրենց առջև դրված բոլոր խնդիրների լուծմանը։

Պ. ՍԱՖՅԱՆ

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԿԱԹԻ ԱՎԵԼԱՑՄԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Զ. ԴՈՒԼԱՆՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը խնդիր դրեց՝ ապահովել գյուղատնտեսական արտադրության այնպիսի աճ, որով ապահովվի բնակչության օրավուր աճող պահանջմունքները։ Իսկ դա մեծ և կարևորագույն խնդիր է։ Բավական է նշել, որ միայն 1965 թվականին անհրաժեշտ է արտադրել 100—105 միլիոն, որից ապրանքային՝ 50 միլիոն տոննա կաթ։

Հայկական ՍՍՌ-ում 1965 թվականին կաթի համախառն արտադրանքը պետք է կազմի 500 հազար տոննա, որից ապրանքային կաթ՝ 200 հազար տոննա։ Այս տարի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են կաթի համախառն արտադրանքը հասցնել 212,6 հազար տոննայի։

Նշված քանակությամբ կաթ արտադրելու համար ամենից առաջ անհրաժեշտ է նախիրում կովերի գլխաքանակը հասցնել 45—50 տոկոսի և բարձրացնել ֆուրաժային յուրաքանչյուր կովի կաթնատվությունը։

Համախառն և ապրանքային կաթի արտադրության ավելացման ինչպիսի՞ աղբյուրներ կան Հայաստանում։

1. Կաթի համախառն արտադրությունն ավելացնելու ամենավճռական պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այդ նպատակով ռեսպուբլիկայում առաջին հերթին պետք է ընդարձակել հատիկակերային կուլտուրաների ցանքատարածությունները։ Հատիկային կուլտուրաներից հատուկ ուշադրության է արժանի եգիպտացորենը, որպես բարձր բերքատու կուլտուրա և արժեքավոր կեր։ Ընկ. Ն. Ս. Խրուշչովը բազմիցս հաշվարկումներ է կատարել, ցույց տվել եգիպտացորենի առավելությունները մյուս կուլտուրաների համեմատությամբ, մեկ հեկտար ցանքատարածությունից ստացվող կերի միավորների տեսակետից։

Եգիպտացորենի բարձր բերք կարելի է ստանալ, հատկապես, ոռոգվող հողերից։ Արարատյան հարթավայրում եգիպտացորեն կարելի է ցանել ոռոգվող հողերում՝ որպես հիմնական կուլտուրա և խոզանացան։ Խոզանացանի ժամանակ եգիպտացորենի կողրերը կարելի է հասցնել մոմային հասունացման և կանաչ մասսայի հետ միասին սիլոս պատրաստել։ Եգիպտացորեն կարելի է ցանել նաև Նոյեմբերյանի, Շամշադինի, Իջևանի, Ալավերդու, Կոտայքի, Թալինի շրջաններում և ստանալ հատիկ ու կանաչ մասսա։

Որոշ նախալեռնային և լեռնային շրջաններում պետք է ցանել կարճ վեգետացիոն շրջան ունեցող եգիպտացորեն, բերքը հավաքել կողրերի մոմային հասունացման շրջանում, իսկ որտեղ այդ հնարավոր չէ, կանաչ մասսայից սիլոս պատրաստել։

Գիտա-հետազոտական հիմնարկները պետք է ընտրեն եգիպտացորենի հիբրիդային այնպիսի սորտեր, որոնք կհարմարվեն մեր ռեսպուբլիկայի տարբեր գոտիներին։ Անհրաժեշտ է օգտագործել բոլոր հնարավորությունները եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակելու համար։ Մյուս հատիկային կուլտուրաներից, հատկապես լեռնային շրջանների համար, ուշադրավ են գարին ու տարեկանը։ Աշնան տարեկանը վաղ գարնանը կարելի է օգտագործել որպես կանաչ կեր և այդ տարածությունները տրամադրել հաջորդ ցանքսերին։

Այս տեսակետից ռեսպուբլիկայի շրջանների մեծամասնության համար կերի կայուն բազա ստեղծելու կարևոր ռեզերվ է հանդիսանում երկրորդ ցանքի կատարումը, որի շնորհիվ տարվա ընթացքում միևնույն տարածությունից ստացվում է երկու բերք։ Առաջին բերքի համար կարելի է ցանել աշնան գարի ու տարեկան և նրանցից ստացվող կանաչ մասսայով կերակրել կովերին, սկսած վաղ գարնանից։ Այդ վաղահաս կուլտուրաներից հետո կարելի է ցանել եգիպտացորեն և այն սիլոսացնել կաթնամոմային հասունացման շրջանում։ Պարզ է, որ աշխատանքը այս ձևով կազմակերպելու դեպքում միևնույն տարածությունից կարելի է ստանալ ավելի շատ կերի միավոր։ Այդ մասին վկայում են հետևյալ մոտավոր հաշվումները։ Աշնան գարու կամ տարեկանի ցանքի դեպքում հեկտարից կարելի է ստանալ 300 ցենտներ կանաչ մասսա կամ 5400 կերի միավոր։ Որպես երկրորդ ցանք եգիպտացորեն ցանելու դեպքում հեկտարից կստացվի 350 ցենտներ սիլոսային մասսա՝ կաթնամոմային հասունացման շրջանում կամ 6300 կերի միավոր։ Այսպիսով երկու բերքի ընթացքում կարելի է ստանալ 11700 կերի միավոր։

Կովերի կաթնատվությունը բարձրացնելու տեսակետից արժեքավոր կեր է շաքարի ճակնդեղը, որը մեր ռեսպուբլիկայում բարձր բերք է տալիս։ Շաքարի բարձր պարունակության շնորհիվ այն բարձրացնում է կաթի յուղայնությունը։ Շաքարի ճակնդեղ կարելի է ցանել ռեսպուբլիկայի շատ շրջաններում և ստանալ ավելի շատ կերի միավոր։ Մեկ հեկտարից 300 ցենտներ շաքարի ճակնդեղի արմատի և 150 ցենտներ փրերի դեպքում կստացվի 10800 կերի միավոր։

Մեր ռեսպուբլիկայում ցանովի խոտաբույսերից հիմնականում ցանում են լոբազգի խոտեր, Արարատյան հարթավայրում՝ առվույտ։ Այն շատ օգտակար կուլտուրա է, տալիս է բարձր բերք, հարուստ է սպիտակուցով և շատ անհրաժեշտ է կթվող կովերի համար։ Սպիտակուցի քանակը կաթի մեջ հատկապես կարևոր նշանակություն ունի մեր արդյունաբերության հիմնական ճյուղի՝ պանրագործության համար, այդ պատճառով էլ կովերի ռացիոնը պետք է բալանսավորվի ըստ սպիտակուցի։ Անհրաժեշտ է ընդարձակել առվույտի ցանքատարածությունները։ Լեռնային և ենթալեռնային մի շարք շրջաններում կորնգանի ցանքատարածություններն ընդարձակելու հետ մեկտեղ կարելի է և ցանել վիկ-վարսակային խառնուրդ և այլ կերակուլտուրաներ։

Ցանքատարածությունների ընդարձակմանը զուգընթաց կարևոր նշանակություն ունի և ցանովի խոտերի բերքը ժամանակին հավաքելը։ Մի շարք տնտեսություններում բերքն ավելացնելու նպատակով ուշացնում են դրա հավաքը, որի հետևանքով խոտը կորցնում է իր կերային արժեքը, հատտանում է թաղանթանյութը, իսկ նուրբ տերևները թափվում են։ Ցանովի խոտաբույսերի բերքը պետք է հավաքել ծաղկման շրջանում և լավ կլինի չորացնել ստվերոտ տեղում։



Մեր ռեսպուբլիկայում անհրաժեշտ է կազմակերպել առվույտից խոտալյուրի ստացումը, քանի որ այն լիովին փոխարինում է խտացրած կերին և պարունակում է մեծ քանակությամբ (18—22 տոկոս) սպիտակուց ու շատ վիտամիններ։ Խոտալյուր կարելի է պատրաստել ոչ միայն առվույտից, այլև կորնգանից ու այլ բարձրորակ խոտերից։

Զոոանասնաբուժական ինստիտուտի կերակրման ամբիոնի փորձերը ցույց են տվել, որ խոտալյուրը լիովին կարող է փոխարինել խտացրած կերին։ Խոտալյուրը լայնորեն կիրառվում է արտասահմանում, մասնավորապես՝ Հոլանդիայում։

Խոտալյուր պատրաստելու գործարաններ կարելի է կառուցել մի քանի կոլտնտեսությունների, անգամ մի ամբողջ շրջանի համար։ Խոտալյուրի արտադրության կազմակերպումը մեծապես կնպաստի բոլոր տեսակի գյուղատնտեսական կենդանիների մթերատվության բարձրացմանը և կլուծի խտացրած սպիտակուցային կերերի պրոբլեմը, որի մեծ կարիքն ունի մեր անասնապահությունը։

Ռեսպուբլիկայի կերի բալանսում մեծ տեսակարար կշիռ ունեն բնական
մարգագետինները և արոտավայրերը։ Բնական կերային տարածությունների
ժամանակակից վիճակը անբավարար է, լավ չեն խնամվում դրանք և բեր-
քատվությունը շատ ցածր է, մինչդեռ դրանց միջոցով կարելի է հսկայական
չափերով ավելացնել անասնաբուծության համար պահանջվող կերի պաշարը։
Հոլանդիայում կաթնատու անասուններին տրվող կերի 75 տոկոսը ստաց-
վում է բնական մարգագետիններից ու արոտավայրերից։ Պարարտացման,
խոտերի ենթացանքի և բնական արոտավայրերը լավ խնամելու շնորհիվ նրանք
մեկ հեկտարից ստանում են 4000-ից ավելի կերի միավոր։ Բնական մարգա-
գետիններն ամեն տարի պարարտացվում են 3—6 ցենտներ ֆոսֆորական,
2—4 ցենտներ կալիումական և 3—4 ցենտներ ազոտական նյութերով, իսկ
հաջորդ տարին՝ 20—30 տոննա գոմաղբով և միզանյութով։ Բնական մարգա-
գետինների խոտի բերքատվությունը 2—3 քաղի դեպքում մեկ հեկտարից
կազմում է 80—100 ցենտներ, ցանովի առվույտինը 3 քաղի դեպքում՝ 100—
120 ցենտներ, իսկ երեքնուկինը 2 քաղի դեպքում՝ մինչև 100 ցենտներ։
Մեր ռեսպուբլիկայում ցանովի խոտերի բերքատվությունը չի զիջում Հո-
լանդիային։ Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունները ստանում են
100—120 ցենտներ առվույտ և երբեմն ավելի։ Նախալեռնային և լեռնային
առաջավոր կոլտնտեսություններում մեկ հեկտար կորնգանի բերքատվությու-
նը հասնում է 50—60 ցենտների։

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության Անասնաբուծու-
թյան-անասնաբուժական ինստիտուտի կերահայթայթման բաժնի փորձերը
ցույց են տվել, որ արմատական բարելավման և խոտախառնուրդներ ցանելու
դեպքում ստեղծվում են բերքառատ մարգագետիններ՝ 60—140 ցենտներ խո-
տի բերքատվությամբ. այդ մարգագետինները երկար (10 և ավելի) տարիներ
տալիս են կայուն բերք։ Այդպիսի մարգագետինների մեկ հեկտարից ստաց-

վում է 3000—5000 կերի միավոր: Մեր առաջավոր կոլտնտեսությունների պրակտիկան նույնպես ցույց է տվել, որ պարարտացումը մեծ չափով ավելացնում է մարգագետինների և արոտավայրերի բերքատվությունը:

Սովետական Միության մի շարք ռեսպուբլիկաներում, ինչպես՝ ՌՍՖՍՌ-ում, Ուկրաինայում, Բելոռուսիայում, Լատվիայում սկսել են ստեղծել երկարատև կուլտուրական արոտավայրեր: Այդպիսի արոտավայրերի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 3500—4000 կերի միավոր, 300—500-ի փոխարեն, որն ստացվում էր նախքան այդպիսի արոտավայրեր կազմակերպելը: Երկարատև կուլտուրական արոտավայրերի ստեղծումը հնարավորություն է տալիս ավելացնելու կովերի կաթնատվությունը, բացառում է խտացրած կերով նրանց լրացուցիչ կերակրումը և մեծ չափով իջեցնում կաթի ինքնարժեքը: Կուլտուրական արոտավայրերի ստեղծման համար կատարած ծախսերը մարվում են նրանց օգտագործման հենց առաջին տարիներին: Այսպիսի փորձ գոյություն ունի նաև մեր ռեսպուբլիկայի Կալինինոյի շրջանում, Հայկական ՍՍՌ-ի Գյուղատնտեսության մինիստրության Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի հենակետային տնտեսությունում: Պրոֆ. Շ. Մ. Աղաբաբյանի նախաձեռնությամբ այդ տնտեսությունում ստեղծված կուլտուրական արոտավայրերի յուրաքանչյուր հեկտարից երեք տարվա ընթացքում ստացվել է միջին հաշվով 4000 կերի միավոր կամ 4,5 անգամ ավելի, քան մինչև նրանց ստեղծումը:

Այդպիսի արոտավայրերի առանձին հեկտարներից նրանց օգտագործման առաջին տարում ստացվել է 7000—8000, իսկ երկրորդ ու երրորդ տարիներին՝ 6000—7000 կերի միավոր: Ստացվում է, որ այդ տնտեսության կուլտուրական արոտավայրերի յուրաքանչյուր հեկտարից ստացվող 4000 կերի միավորը հավասարազոր է 40 ցենտներ հատիկի, որը հնարավոր չէ ստանալ մեկ հեկտար հատիկային կուլտուրայի ցանքատարածությունից: Միաժամանակ ցածր է եղել նաև այդ արոտավայրերից ստացվող կերի ինքնարժեքը: Այսպես, մեկ կիլոգրամ կանաչ մասսայի ինքնարժեքը կազմել է 1,1—1,2 կոպեկ, իսկ մարսելի սպիտակուցինը՝ 8—9 կոպեկ (դրամի նոր կուրսով): Այդպիսի արոտավայրերի յուրաքանչյուր 0,3 հեկտար մեկ կովին հատկացնելու դեպքում տարեկան կարելի է ստանալ 3000 լիտր կաթ:

Թվում է, որ այս միջոցառման ներդրումը ռեսպուբլիկայի լեռնային և նախալեռնային շրջանների տնտեսություններում խիստ անհրաժեշտ է: Պրոֆ. Ա. Մաղաքյանն ապացուցել է, որ բնական մարգագետինների և արոտավայրերի անգամ մակերեսային բարելավումը շեշտակիորեն բարձրացնում է բերքատվությունը:

Այդ կապակցությամբ փորձեր են կատարված Կալինինոյի, Ստեփանավանի, Հրազդանի, Կոտայքի և այլ շրջաններում: Մակերեսային բարելավման աշխատանքները հիմնականում ընթացել են պարարտանյութեր մտցնելու, խոտախառնուրդների ենթացանք կատարելու, քարերից, թփուտներից ու գուղձերից ազատվելու ուղղությամբ: Կիրառված միջոցառումների շնորհիվ բարելավվել է խոտակազմը, մեծացել է արոտավայրերի օգտագործվող մակերեսը, և բերքատվությունն ավելացել է 20—30 տոկոսով:

Այժմ Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի բուսաբուծության ամբիոնը դոցենտ Ե. Ս. Ղազարյանի ղեկավարությամբ աշխատանքներ



է տանում միկրոէլեմենտների օգտագործմամբ բնական կերի տարածությունների որակն ու բերքատվությունը բարձրացնելու նպատակով:

Փորձերի նախնական արդյունքները ցույց են տվել, որ բորը, մոլիբդենը, ցինկը, պղինձը և այլն բույսերի զարգացման տարբեր փուլերում հողի մեջ մտցնելիս խոտի բերքատվությունն ավելացել է 15-ից մինչև 30—35 տոկոսով:

Բացի արմատական և մակերեսային բարելավումներից անհրաժեշտ է կարգավորել դրանց շահագործումը: Շատ տնտեսություններում չկա արածեցման գաղոնային սիստեմ, որը հնարավորություն է տալիս զգալի չափով իջեցնելու անասնաբուծական մթերքների ինքնարժեքը: Ժամանակակից տեխնիկայի պայմաններում էլեկտրական «հովիվների» կիրառումն առանձին դժվարություն չի ներկայացնում:

Արածեցման գաղոնային սիստեմի դեպքում կովերը պետք է թողնել ամենալավ տեղամասերում, ոչ հեռու կթելու տեղից, եթե այդ հնարավոր չէ, ապա կիթը պետք է անցկացնել արոտավայրերում և կաթը տեղափոխել: Արածելիս կովերը պետք է անցնեն 4—5 կիլոմետրից ոչ ավելի: Կերը հիմնականում պետք է ծախսվի կաթնագոյացման և ոչ թե շարժումների վրա: Կաթնատվությունը կարելի է զգալի չափով ավելացնել, եթե արոտային պահվածքի սկզբնական և վերջնական ժամանակաշրջաններում կազմակերպվի լրացուցիչ կերակրում:

Այդ նպատակով կարելի է օգտագործել հենց արոտավայրում պատրաստված սիլոսը: Սիլոսը անփոխարինելի միջոց է կովերի կաթնատվությունը բարձրացնելու համար: Կոլտնտեսությունն ամեն մի գլուխ կովի համար պետք է պատրաստի 10 տոննա սիլոս: Լավագույն սիլոսը ստացվում է եգիպտացորենից, բայց կարելի է պատրաստել նաև այլ կուլտուրաների և բանջարեղենի մնացորդներից:

Երևանի Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի կերակրման ամբիոնի փորձերը ցույց տվեցին, որ եգիպտացորենի կանաչ մասսայից պատրաստված սիլոսով կերակրելիս, յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելանում է 2 կիլոգրամով, կաթի յուղայնությունը հավասար է եղել կոնտրոլ խմբի կովերի կաթի յուղայնությանը, որոնք մինչ այդ կերակրվել են ենթալպյան մարգագետինների այլախոտերից պատրաստած սիլոսով:

Վերջին տարիներում ինչպես ՍՍՌՄ-ում, այնպես էլ արտասահմանում կատարված հետազոտությունները ցույց են տվել, որ սիլոսացված կերը բարձրացնում է մսուրային պահվածքից ստացված կաթի սննդարժեքը և, հատկապես, հարստացնում այն «Ա» վիտամինով: Այդ բացատրվում է նրանով, որ սիլոսացնելիս կերի մեջ պահպանվում է կարոտինը և եթե կովերին կերակրում են այդպիսի սիլոսով, ձմեռային կաթը պարունակում է բավարար քանակությամբ «Ա» վիտամին:

2. Կաթի համախառն արտադրությունն ավելացնելու մյուս աղբյուրը զոոտեխնիկական կոմպլեքս միջոցների կիրառումն է:

Ռեսպուբլիկայում վերջին տարիներս ստեղծվել է խոշոր եղջերավոր անասունների նոր՝ «Կովկասյան գորշ» ցեղը: Հանրային հոտի ցեղային կազմի բարելավումը՝ տոհմաբուծության ճիշտ կազմակերպման, սերմնավորման կետերի ցանցի ընդլայնման, ճիշտ ընտրության և զուգընտրության ճանապարհով, ստերջությունը վերացնելու նպատակով կիրառվող միջոցներն, անշուշտ, կավելացնեն կաթի համախառն արտադրությունը: Բավական է նշել, որ առան-

ձին շրջաններում կովերի ստերջությունը հասնում է 20—25 տոկոսի, որը խիստ
անդրադառնում է խոշոր եղջերավոր անասնաբուծության զարգացման վրա։
Ստերջությունը սահմանափակում է հոտի նորմալ վերարտադրությունը։
Եթե սրան ավելացնենք մատղաշների կորուստը, ապա կտեսնենք, որ ռես-
պուբլիկան ամեն տարի չի ապահովում հոտի նորմալ վերարտադրությունը։
Որոշ տնտեսություններում յուրաքանչյուր 100 կովից ստացվում է միայն
60—70 հորթ, մինչդեռ առաջավոր տնտեսություններում յուրաքանչյուր կո-
վից ստացվում է մեկ հորթ։ Շատ տնտեսություններում հորթերը հիվանդա-
նում են ստամոքսաաղիքային տրակտի հիվանդություններով, որն անկումների
պատճառ է դառնում։ Մեր հետազոտությունները ցույց են տվել, որ հորթերին
մածնով կերակրելիս, նույնիսկ օրվա կաթի նորմայի 25—30 տոկոսը մածնով
փոխարինելիս, բացառվում են այդ հիվանդությունները և ստացվում է լրա-
ցուցիչ քաշաճ 15—20 տոկոսի չափով։
ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը հրապարակել է հրահանգ
հորթերը մածնով կերակրելու մասին։ Սակայն մեր անպահանջկոտության
հետևանքով այն չի կիրառվում բոլոր տնտեսություններում։ Մասնագետները
արտադրության մեջ պետք է հետևողականորեն ներդնեն և կիրառեն գիտու-
թյան նվաճումները և առաջավոր փորձը։ Բոլոր շրջաններում կաթնագործա-
րանները կոլտնտեսություններին կարող են ապահովել սերզատած կաթից
պատրաստած մածնով։ Ամենուրեք կիրառելով այս միջոցառումը՝ կարող ենք
աղգաբնակչությանը մատակարարել մեծ քանակությամբ կաթ, հորթերին
տրվող անարատ կաթի նորմայի կրճատման հաշվին։
Կաթի արտադրությունն ավելացնելու շատ էֆեկտիվ միջոցառումներից է
կովերի լիակթումը, որը պետք է անցկացնել ամենուրեք և ժամանակին։ Լիա-
կթումը պետք է կազմակերպել լակտացիայի հենց առաջին ամսից, երբ կեն-
դանու օրգանիզմը հակված է դեպի կաթնագոյացման պրոցեսը։ Կաթնագոյա-
ցումը կապված է ծնի ակտի հետ. ծնից հետո կովը լակտացիայի առաջին ամ-
սում տալիս է ամենաբարձր օրակիթը։ Երկրորդ ամսից սկսած լակտացիայի
կորագիծը նորմալ պայմաններում սկսում է ընկնել։ Եթե այդ ժամանակ կո-
վերին առատ կեր տան, հնարավոր կլինի երկար ժամանակ բարձր մակար-
դակի վրա պահպանել լակտացիայի կորագիծը և շատ կաթ ստանալ։ Լակտա-
ցիայի վերջին ամիսներին կազմակերպած լիակթումը չի տա նշված էֆեկտը
և բացասաբար կանդրադառնա կաթի ինքնարժեքի վրա։
Լավ արդյունք է տալիս կովերի ամառա-մսուրային և մսուրա-ճամբարա-
յին շրջանում կանաչ կոնվեյերի կիրառումը։ Երևանի Զոոտեխնիկական-անասնաբուժական
ինստիտուտի խոշոր եղջերավոր անասնապահության ամբիոնի աշխատողները
ուսումնասիրել են Արարատյան հարթավայրի պայմաններում կանաչ կոնվե-
յերի ազդեցությունը կովերի կաթնատվության և կաթի յուղայնության վրա։
Նրանց տվյալներով՝ գարնան-ամառային և աշնան-ձմեռային շրջաններում
ծնած կովերի կաթնատվությունը կարելի է բարձրացնել (1350 մինչև 3222 կգ)
կիրառելով կանաչ կոնվեյեր, որի շնորհիվ կաթի յուղայնությունը որոշ չափով
բարձրանում է, միջին հաշվով տատանվելով 3,9—4,0 տոկոսի սահմաններում։
Կանաչ կոնվեյերի մեջ օգտագործել են հետևյալ կուլտուրաները՝ առվույտ
(միշտ), վիկավարսակային խառնուրդ (30 օր), սուդանական խոտ (25 օր),
եգիպտացորենի կանաչ մասսա (2 ամիս), պտղատու այգիների խոտ (երբեմն),
իսկ աշնանը՝ դդմիկ, կերի ձմերուկ և դդում (ոչ սիստեմատիկաբար)։



Կաթի արտադրության ավելացման գործում կարևոր դեր է խաղում նաև
կթելու տեխնիկան, որն ազդում է կաթնագոյացման և նրա արտազատման
պրոցեսի վրա։ Ստացվող կաթի քանակը կախված է կրծի տարողությունից,
նրա նախապատրաստումից, կթելու ռիթմից, կթի եղանակից և մի շարք այլ
պատճառներից։
Կթի ամենալավ եղանակը մեքենայական կիթն է, որի դեպքում միաժա-
մանակ կթվում են չորս բաժինները։ Սակայն պետք է նշել, որ մեր ռեսպուբ-
լիկայի և ոչ մի տնտեսությունում էլեկտրական կիթը չի կիրառվում։
Մինչև էլեկտրական կթին անցնելը պետք է կարգավորել ձեռքի կիթը։
Ձեռքով կթելու դեպքում անհրաժեշտ է, նախ՝ կթել հետին կեսը, որտեղ կու-
տակված է կաթի մեծ մասը, իսկ հետո՝ առջևի մասը։ Կրծի բաժինները հեր-
թականությամբ կթելու դեպքում ավելի քիչ կաթ ստացվում է վերջին կթված
բաժնից, որի յուղայնությունը ևս ցածր է։ Կրծի վերջում կթած կաթի մի մասը
ցիստեռններից անցնում է ալվեոլային խողովակները և ալվեոլները։ Մեծ
նշանակություն ունի արագ, անընդհատ և ռիթմիկ կթելը։ Ավելի լավ է կթել
բռունցքով, թույլ հրելով կուրծը։ Այդ եղանակը ավելի նման է հորթի ծծելու
ակտին և կենդանու մոտ ռեակցիա չի առաջացնում։ Պակաս ռեակցիա չունի
լրիվ կթելը։ Կրծում մնացած կաթը պակասեցնում է կաթի քանակը և իջեց-
նում նրա յուղայնությունը, իսկ կաթնագեղձի լրիվ դատարկումը ուժեղացնում
է կաթնագոյացման պրոցեսը։
Մեր երկիրն ունի մեծ քանակությամբ (15 միլիոն տոննայից ավելի)
զտած կաթ, որն ստացվում է կարագագործությունից։ Մեր ռեսպուբլիկայում
զարգանում է պանրագործությունը և անարատ կաթի արդյունաբերությունը։
Նպատակահարմար կլինի, որ հորթերին տրվող անարատ կաթի մի զգալի մա-
սը փոխարինվի այդ զտված չոր կաթով, իսկ ազատվող զգալի քանակությամբ
անարատ կաթը կվաճառվի բնակչությանը։
Անասնաբուծությունը գյուղատնտեսության աշխատատար ճյուղերից մեկն
է, որտեղ ֆիզիկական աշխատանքին պետք է զուգակցվի մտավոր աշխատան-
քը, ավելի մեծ չափերով պետք է ներդրվեն գիտության նվաճումները։ Անաս-
նաբուծության բնագավառում անհրաժեշտ է ընդգրկել միջնակարգ և բարձրա-
գույն կրթություն ունեցող երիտասարդների՝ անասնաբուծության կուլտուրան
բարձրացնելու նպատակով։
Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը պետք է լրջորեն զբաղվի այդ գործով և կոչ
անի ռեսպուբլիկայի կոմերիտականներին՝ հանրային անասնապահության
գործը իրենց ձեռքը վերցնելու։ Անասնապահության բնագավառում աշխատող
երիտասարդության շրջանում ավելի լայն չափերով պետք է ծավալվի սոցիա-
լիստական մրցությունը, նրանց համար ստեղծվի նյութական շահագրգռվա-
ծություն և ձեռնարկվեն խրախուսանքի շատ միջոցներ։
Նշված և բազմաթիվ այլ միջոցառումների կիրառումը գյուղատնտեսության
աշխատողներին հնարավորություն կտա պատվով կատարելու անասնաբուծու-
թյան բնագավառի 1961 թվականի համար ստանձնած պարտավորությունները
և յոթնամյա պլանը։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ ԻՄ ՀՈՒՇԵՐԻՑ

*Դ. Զ. ՄԱՆՈՒԻԼՍԿԻ*

*Вопросы истории КПСС*

Փարիզում ինձ վիճակվեց ծանոթանալ Վլադիմիր Իլյիչ Լենինի հետ: Հայտնի է, թե ինչպիսի ծանր պայմաններում էր ապրում ռուս քաղաքական էմիգրացիան արտասահմանում: Էսեռներն ու մենշևիկները, որոնց թվում կային բուրժուական դասակարգերի ծոցից ելած բազմաթիվ մարդիկ, սիստեմատիկ օգնություն էին ստանում Ռուսաստանում ապրող իրենց հարազատներից: Այլ էր բոլշևիկների, մանավանդ բանվոր բոլշևիկների դրությունը: Ֆրանսիացի ձեռնարկատերերը նրանց չէին թողնում գործարաններում ու ֆաբրիկաներում աշխատելու, վախենալով նրանց ազդեցությունից ֆրանսիացի բանվորների վրա: Բոլշևիկ էմիգրանտները ստիպված էին իրենց գոյությունը պաշտպանել պատահական աշխատանքներով:

Մենք վարձով մաքրում էինք ռեստորանների և մանր խանութների լուսամուտների ապակիները: Դրա համար հարկավոր էր վեր կենալ գիշերվա ժամը 2-ին՝ վարձակալից սանդուղք, դույլ, սպունգ և կավիճ վերցնելու համար: Աշխատանքն սկսում էինք առավոտյան ժամը 5-ին և ավարտում առավոտյան ժամը 9-ին: Գիշերային այդ աշխատանքի համար մենք ստանում էինք 1 ֆրանկ, այսինքն՝ մոտ 37 կոպեկ, մինչդեռ մեկ ճաշի գինը ամենաէժան ռեստորանում մեկ ու կես ֆրանկից պակաս չէր: Մենք վարձով հատակն էինք փայլեցնում, ձեռնասայլակներով կահույք էինք տեղափոխում, որպես վարպետի աշակերտներ էինք աշխատում էմիգրանտներին (ոչ քաղաքական) պատկանող փոքրիկ արհեստանոցներում: Այդ էմիգրանտներն իրենց բանվորներին ֆրանսիացի ձեռնարկատերերից պակաս չէին շահագործում: Ռուս բոլշևիկ էմիգրանտների թվում կային մեծ թվով կոշկակարներ, դերձակներ, ներկարարներ, պաստառողներ, որոնք պատվերներ էին ստանում մասնավոր անձերից և վարձատրվում շուկայի գներից երկու-երեք անգամ ավելի պակաս: Էմիգրանտներից ոմանք սևագործ բանվորություն էին անում գարաժներում, որպեսզի կարողանան ուսումնասիրել մոտորները և սովորեն մեքենա վարել:

Վլադիմիր Իլյիչը ծանոթ էր բոլշևիկ էմիգրանտների կարիքներին և աշխատում էր ինչով կարող էր ամեն կերպ օգնել ընկերներին. հիվանդների մոտ բժիշկ էր ուղարկում ռուս էմիգրանտներից, ամեն կերպ ձգտում էր աշխատանքի տեղավորել գործազուրկներին, օտարերկրյա լեզուներ իմացող ընկերների համար թարգմանություններ էր ճարում այդ լեզուներով: Լենինի անձնական հմայքն այնքան մեծ էր, որ ռուս սոցիալ-դեմոկրատներին (բոլշևիկներին) համակրող ֆրանսիացիներից, շվեյցարացիներից շատերը նրա տնօրինությանն էին ուղարկում նվիրաբերությունների ոչ մեծ գումարներ և խնդրում, որպեսզի նա ըստ իր հայեցողության այդ գումարները բաշխի առավել կարիքավորներին:



Փարիզում գոյություն ուներ էմիգրանտական փոխադարձ օգնության դրամարկղ, որի տնօրինողներն էին էսեռները: Նրանք օգնություն էին ցույց տալիս գլխավորապես իրենց համախոհներին: Վլադիմիր Իլյիչն ինքը չէր մասնակցում այդ դրամարկղին, բայց բոլշևիկներից պահանջում էր ուշադրությամբ հետևել և հսկել նրա գործունեությունը:

Նա այցելում էր ժողովները, տպարաններն ու գրադարանները: Նրան սովորաբար ուղեկցում էր Աբրահամ Բելենկին՝ այն բանվորը, որը հետագայում, Սովետական իշխանության հաղթանակից հետո մասնակցում էր Իլյիչի անձնական պահակախմբի կազմակերպմանը: Վլադիմիր Իլյիչը հաճախ հեծանիվով մեկնում էր Փարիզի հեռավոր բանվորական շրջանները, երբեմն նա մի քանի օրով մեկնում էր Փարիզից:

Լենինը Փարիզում էր ապրում ռեակցիայի ամենածանր տարիներին: Անդուլ աշխատանքով էր անցնում նրա կյանքը: Այնտեղ է նա ավարտել «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» իր աշխատությունը, շատ երեկոներ անցկացրել Ազգային գրադարանում: Այնտեղից էր նա արձագանքում Ռուսաստանի կենսահույզ, հրատապ իրադարձություններին, այնտեղից էր նա շարունակում իր սիստեմատիկ նամակագրությունը պարտիական կազմակերպությունների և առանձին ընկերների հետ: Ռուսաստանում ապրող նրա քույրերը նրա ցուցումների, խորհուրդների և դիրեկտիվների հաղորդիչներն էին, իսկ հավատարիմ ընկերը և կինը՝ Կրուպսկայան, նրա անդավաճան օգնականն էր Ռուսաստանի հետ նորանոր կապեր հաստատելու գործում:

Վլադիմիր Իլյիչը Նադեժդա Կոնստանտինովնայի հետ ապրում էր քաղաքի պրոլետարական շրջանում՝ Մարի-Ռոզ փողոցի № 4 տանը: Ոչ բարդ ամբողջ տնտեսությունը վարում էր Նադեժդա Կոնստանտինովնան: Օրական ընդամենը երեք ժամ աշխատող երբևեկ ֆրանսուհի աղախինը բնակարանն էր հավաքում և ամանները լվանում, իսկ ճաշը, ընթրիքը և առավոտվա թեյը պատրաստում էր ինքը՝ Նադեժդա Կոնստանտինովնան:

Վաղ առավոտյան, մոտ ժամը 8-ից էր սկսվում Վլադիմիր Իլյիչի աշխատանքային օրը: Թեյ խմելուց հետո նա հեծանիվով գնում էր Ազգային գրադարան, տպարան էր տանում իր հերթական հոդվածը «Պրոլետարի» և «Սոցիալ-Դեմոկրատ» թերթերի համար, որոնց խմբագիրը ինքն էր: Բայց նա լոկ խմբագիր չէր: Նա ինքն էր կատարում սրբագրությունը, ինքն էր ուղղումներ մտցնում հոդվածում, երբ այն գրելու պահից մինչև տպագրվելը տեղի էր ունենում որևէ նոր իրադարձություն:

Երբ տեղի էին ունենում խոշոր ցույցեր, որոնց հիմնականում մասնակցում էին ֆրանսիական բանվորները, Վլադիմիր Իլյիչը գնում էր այդ ցույցերը: Հիշում եմ, երբ Իսպանիայում, Մոնտյուիսն ամրոցում մահապատժի էին ենթարկել անարխիստ պրոֆեսոր Ֆեռերին, և ֆրանսիական պրոլետարիատը հարյուր հազարանոց ցույցով արձագանքեց դրան, Վլադիմիր Իլյիչը բանվորների հետ էր ընթանում այդ ցույցում և լոզունգներ չափում նրանց հետ: Նրա աչքերը փայլատակում էին պատանեկան կրակով, և երբ ոստիկանությունը փորձում էր կտրել ցուցարարների ճանապարհը, Վլադիմիր Իլյիչը, ձեռքը

ձեռքի տված մյուս բանվորների հետ, խանգարեց ոստիկանությանը՝ ցրելու ցույցը, ծեծելու ցուցարարներին: Իսկ չէ՛ որ Վլադիմիր Իլյիչը լավ գիտեր, թե իրենցից ինչ են ներկայացնում Ֆեռերի տիպի իսպանացի անարխիստները: Իր ելույթներում նա անողոք կերպով քննադատում էր անարխիզմը, բայց դրա հետ միասին նա գիտեր, որ իր տեղը այնտեղ է, ուր ընթանում է բանվոր դասակարգը:

Հիշում եմ ես Վլադիմիր Իլյիչին նաև այլ պայմաններում: Թաղում էին Մարքսի փեսա Պոլ Լաֆարգին, որը 70 տարեկան հասակում ինքնասպանություն էր գործել Մարքսի աղջկա հետ, որի հետ ինքն ամուսնացած էր: Թաղման ելույթ ունեցան բազմաթիվ մարդիկ, հանդես եկավ նաև Ալեքսանդրա Միխայլովնա Կոլոնտայը, որը հուզմունքով պատմում էր Լաֆարգի մասին: Մյուս հռետորներից հետո վերջում հանդես եկավ Վլադիմիր Իլյիչը: Նրա ճառը 15 րոպեից ավելի չտևեց բայց այդ 15 րոպեում նա վառ կերպով պատկերեց Պոլ Լաֆարգին որպես ականավոր դեմք, որը բուրժուազիայի դեմ ուղղված իր մարտական պամֆլետներով անջնջելի ավանդ է մուծել Ֆրանսիայում մարքսիզմի պրոպագանդայի գործում: Իր ճառը նա ավարտեց վստահություն հայտնելով, որ մոտենում է մարքսիզմի գաղափարների ոգով կազմակերպված ու դաստիարակված պրոլետարիատի ռևոլյուցիոն ճակատամարտերի դարաշրջանը, պրոլետարիատի, որը կտապալի բուրժուազիայի տիրապետությունը ու կհաստատի կոմունիստական հասարակարգ:

Ամեն տարի Փարիզի բանվորները, ի նշանավորումն Փարիզյան կոմունայի, մասսայական երթ էին կազմակերպում Կոմունարների պատի մոտ, Պեր-Լաշեզ գերեզմանոցում: Սովորաբար այնտեղ, Կոմունարների պատի մոտ, հանդես էր գալիս Փարիզյան կոմունայի մասնակից, սոցիալիստական պարտիայի լիդերներից մեկը՝ ծերունի էդուարդ Վայանը: Ֆրանսիական կառավարությունն այդ օրը մոբիլիզացնում էր մի քանի հազար ոստիկաններ, որոնք շարվում էին պատի երկայնքով և բանվորներին սպասում էին ծեծով: Ֆրանսիական ոստիկանության պրեֆեկտն էր այն ժամանակ իր դաժանությամբ աչքի ընկնող Լեպինը: Քաղաքացիական հագուստով, գլխին կատելոկ, հաստ ձեռնափայտը ձեռքին, նա լկտիորեն ընդհատում էր Վայանին, որը փորձում էր խոսել, ծաղրանքով աղաղակում էր. «Դու դեռ չե՞ս վերջացրել քո անցյալ տարվա ճառը»,— և ոստիկաններին դիմելով, հրամայում էր. «Դուրս արեք դրան այստեղից»— «Բալյաե մուա սա»: Ոստիկանները վայրի բիզոնների հոտի նման նետվում էին ցուցարարների վրա և սկսվում էր մասսայական ծեծը:

Պետք էր տեսնել Վլադիմիր Իլյիչի դեմքն այդ րոպեներին՝ աչքերը զայրույթից կրակ էին կտրել, բռունցքներն էր սեղմում, և զգում էիր, որ մեծ դժվարությամբ էր իրեն զսպում: Դժբախտաբար, ուժը ոստիկանների կողմն էր լինում, և կոմունարների թոռները ստիպված էին լինում նահանջել:

Իլյիչը խարազանում էր ֆրանսիական բուրժուական «դեմոկրատիան» մամուլում, խիստ քննադատում էր ֆրանսիական դեմոկրատական պարտիայի օպորտունիստական վարքը: Դա այն տարիներն էին, երբ սոցիալիստական պարտիայի ղեկավարն էր Ժան Ժորեսը, որը կողմնակից էր բուրժուական մինիստրությունում սոցիալիստների մասնակցությանը: Նրա համախոհներն էին Միլյերանը, Բրիանը և Վիվիանը՝ բուրժուազիայի կողմն անցած այդ սոցիալիստները: Միլյերանը դարձավ ֆրանսիական ռեսպուբլիկայի պրեզիդենտ, Բրիանը՝ կառավարության պրեմիեր, Վիվիանը՝ աշխատանքի մինիստր:



Վլադիմիր Իլյիչը շատ անգամ էր հանդես գալիս Փարիզյան Կոմունայի տարեդարձին նվիրված էմիգրանտների ժողովներում: Այդ ժողովները տեղի էին ունենում պրոլետարական շրջանում գտնվող ավենյու դե Շուազիում, իսկ երբեմն «Օդեոն» թատրոնից ոչ հեռու գտնվող Դանտոնի Մեծ դահլիճում: Փարիզյան Կոմունայի դասերի վերաբերյալ իր ելույթներում Իլյիչը անխնա ջախջախում էր ռեակցիոն գյուղացիության «մուժիկի հակակոլեկտիվիստական գանգի» մասին ծամծմող և բանվորներին հանուն սոցիալիզմի համար պայքար մղելուց հրաժարվելու կոչ անող մենշևիկներին: Իլյիչը Փարիզյան Կոմունայի սխալը համարում էր այն, որ նա չէր գրավել պետական բանկը, թողել էր այն վերսալցիների ձեռքում, որ նա անցել էր պաշտպանության տակտիկային և դրանով իսկ թշնամուն հնարավորություն էր տվել կազմակերպվելու, մինչդեռ ապստամբությունը սկսելուց հետո հարկավոր էր անընդհատ հարվածներ հասցնել թշնամուն, ինչպես սովորեցնում էր Մարքսը:

Իլյիչի բնավորության բնորոշ գիծն էր այն, որ մի կողմ էր թողնում անձնականը, հրաժարվում էր մանր վեճերից և ինտրիգներից, որոնցով մենշևիկները, «վպերյոդցիները», էսեռները թունավորում էին քաղաքական մթնոլորտը էմիգրացիայում, որ սկզբունքային բարձրության վրա էր դնում էմիգրացիայի շրջաններում ծնունդ առնող քաղաքական վեճերը և պարտիայի սկզբունքային գծին համապատասխան էր կառուցում իր հարաբերությունները այն հոսանքների, խմբավորումների և առանձին մարդկանց հետ, որոնց նա հանդիպում էր աշխատանքում ու պայքարում: 1905—1906 թվականներին նա հարգանքով էր խոսում Կաուցկու մասին, քանի որ Կաուցկին այդ շրջանում որոշ չափով հասկանում էր ռուսական ռևոլյուցիայի առանձնահատկությունը, բայց ավելի ևս մեծ վրդովմունքով և կրքոտությամբ նա հարձակվեց Կաուցկու վրա, երբ վերջինս 1914 թ. հանդես եկավ այն ստոր տեսությամբ, թե բանվորական Ինտերնացիոնալը «խաղաղության գործիք է», և որ այդ «գործիքը» դադարում է գործելուց, հենց որ ռազմադաշտում սկսում են խոսել թնդանոթները:

Լենինը մի անգամ չէ, որ տարակարծիք էր լինում Կլարա Ցետկինի հետ. բայց դա նրան չէր խանգարում մեծ հարգանքով վերաբերվել Ցետկինին: Նա անխնա քննադատում էր Ռոզա Լյուքսեմբուրգին ազգային հարցում բռնած նրա դիրքի համար, բայց նրա հետ միասին հանդես էր գալիս գերմանական սոցիալ-դեմոկրատական պարտիայի ներսում եղած աջերի ու կենտրոնի կողմնակիցների դեմ, քանի որ Ռոզա Լյուքսեմբուրգն այդ հարցում ճիշտ դիրք էր բռնել: Վլադիմիր Իլյիչը ջախջախում էր Պլեխանովին՝ «Հարկավոր չէր զենքի դիմել» լոզունգի համար, որը վերջինս հայտարարել էր Մոսկվայի դեկտեմբերյան ապստամբությունից հետո, բայց երբ Պլեխանովը հանդես եկավ լիկվիդատորների դեմ, Իլյիչը ձեռք մեկնեց նրան երկու ճակատներում՝ լիկվիդատորների և օտզովիստների դեմ համատեղ պայքար մղելու համար:

Վլադիմիր Իլյիչի հակառակորդները էմիգրացիայում վախենում էին Լենինի հետ ունեցած բանավեճերում բացեիբաց դնել քաղաքական հարցեր: Նրանք վախենում էին Լենինի անդիմադրելի տրամաբանությունից, նրա հսկայական էրուդիցիայից, նրա խարազանիչ սարկազմից: Նրանք ձգնում էին թաքցնել իրենց տարաձայնությունների իսկական բնույթը, խարդավանական բնույթի մանրուքներ էին խառնում բանավեճին, ֆրակցիոն ճիչերով նրանք ձգնում էին խլացնել Իլյիչի հստակ, հանգիստ ձայնը: Վլադիմիր Իլյիչը քա-

ղաֆական մարտ էր մտնում չհողարկելով իր նպատակը, անկեղծորեն ու սրտաբաց կերպով: Նա աղյուծի նման «հոշոտում էր» իր հակառակորդներին, իսկ նրա ընդդիմախոսները նման էին դարբասատակից հաչող չնիկների: Գորկին իր հիշողություններում պատմում է, թե ինչպես Լենինը նրան ասել է. «Չէ՞ որ դուք տուրուդմբոց սիրում եք: Հիմա այստեղ մեծ տուրուդմբոց կլինի»:

Հիշում եմ Փարիզի «Դե Լիոն» սրճարանում տեղի ունեցած բանավեճը՝ Դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի սոցիալ-դեմոկրատների վերաբերմունքի մասին: «Վպերյոդական» պարագլուխները սիրտ չէին անում բացահայտ դնել սոցիալ-դեմոկրատական պատգամավոր-բոլշևիկներին Պետական դումայից ետ կանչելու հարցը: Բոգդանովը, Ալեքսինսկին և ուրիշներ առաջարկում էին ուլտիմատում ներկայացնել դումայի ֆրակցիային, որ կամ նրանք բոլորովին փոխեն իրենց ելույթների բնույթը, կամ հեռանան Տավրիկյան պալատից: Բայց «վպերյոդականներին» միացան մարդիկ, որոնք ուղղակի ժխտում էին Դումայում սոցիալ-դեմոկրատների մասնակցության թույլատրելիությունը և անհրաժեշտությունը: Որպես անարխոսինդիկալիստական այդ հայացքների արտահայտիչ հանդես եկավ Եֆիմ ծածկանունով ուրալցի մի երիտասարդ ինտելիգենտ: Խորհրդակցությանը, բացի Կամենևից ու Զինովևից, ներկա էին Ռուսաստանից ժամանած Ռիկովը և լեհ սոցիալ-դեմոկրատ Վարսկին:

Ժողովը հեգնանքով ընդունեց Եֆիմի ճառը: Ես որոշեցի «ուղղել» Եֆիմին: Հայտարարելով, որ ես դեմ եմ ուլտիմատիստներին, ես ասացի, որ իմ կարծիքով, պետք է ուղղակի և անկեղծորեն դնել սոցիալ-դեմոկրատական պատգամավոր-բոլշևիկներին Պետական դումայից ետ կանչելու հարցը, քանի որ բոլոր այդ ուլտիմատումները ոչ այլ ինչ են, քան կոմեդիա, և ոչ ոքի չեն կարող մոլորության մեջ գցել: Ես չեմ պատկանում,— ասացի ես,— ոչ մեծ, ոչ էլ փոքր Եֆիմներին: Այստեղ ես նկատեցի, որ «վպերյոդականների» դեմքին անբավականություն երևաց, բայց Վլադիմիր Իլյիչը ուղղակի ցնծում էր. «Ոչ, ընկեր Գործազուրկ,—ուրախ ասաց նա տեղից,—դուք փոքր Եֆիմ չեք, դուք մեծ Եֆիմ եք, ես նույնիսկ կասեի՝ մեծագույն Եֆիմ»: Լսվեց ունկնդիրների աղմուկն ու ծիծաղը:

Իմ ելույթից հետո Վլադիմիր Իլյիչը խոսք վերցրեց և մի քանի րոպեում լիակատար պարտության մատնեց ինձ: Նա ասում էր. «Այն, ինչ «վպերյոդական» պարագլուխներ Բոգդանովը և մյուսները խնամքով թաքցնում են «ուլտիմատումի» նման զանազան մշուշապատ լոզունգներով, դիվանագիտության մեջ անփորձ ընկեր Իվան Գործազուրկը միամտությամբ բերնից դուրս թոցրեց «Վպերյոդական պարագլուխները գիտեն, որ եթե իրենք ասեին այն ամենը, ինչ մտածում են, ապա բանվորները կդադարեին նրանց ունկնդրելուց: Շատ լավ է, որ մեր «վպերյոդական» փորձված դիվանագետների թվից գտնվեց քաղաքականապես մի անփորձ երեխա, որն արշի ծառայություն մատուցեց իր բարեկամներին»:

Այնուհետև Լենինը խոսեց ևս մոտ մի ժամ, համակողմանիորեն զարգացնելով մասսաների ագիտացիայի ու մոբիլիզացման համար Պետական դումայի ամբիոնն օգտագործելու տակտիկան, իր ճառն ավարտեց հետևյալ բառերով. «Հակառևոլյուցիան մեզ քշել է մի գոմ, որի անունն է 3-րդ Պետական դումա: Մենք չպետք է քնզքնզանք և տեղի տանք դժվարությունների հանդեպ, այլ նույնիսկ այդ գոմում պետք է աշխատենք հօգուտ ռևոլյուցիայի»:



Ժողովն ավարտվելուց հետո ինձ մոտեցավ Նադեժդա Կոնստանտինովնա
Կրուպսկայան և առաջարկեց վաղը երեկոյան թեյ խմելու գալ իրենց տուն և,
եթե հացնեմ, հետս իմ ելույթի թեզիսներով մի հոդված բերեմ «Պրոլետարի»
թերթի համար:
Խորապես հուզված ես վերադարձա տուն և իսկույն ևեթ սկսեցի հոդվածը:
Իմ միակ խորհրդատուն էր բանվոր լատիշ ընկերը, որն այն պահին աշխատում
էր Վանյա ծածկանունով: Իմ ելույթից զայրացած «վպերյոդական» պարագլուխները ամեն կերպ ընդգծում էին իրենց արհամարհական վերաբերմունքը
իմ նկատմամբ:
Իրոք որ արժեր մտածել: Վլադիմիր Իլյիչն արմատապես համաձայն չէր
ինձ հետ, բայց այնուամենայնիվ անկեղծ, ազնիվ բանավեճի պատրաստ էր
հատկացնել բոլշևիկյան կենտրոնական օրգանի էջերը: Հետևյալ օրը, երբ ես
եկա Վլադիմիր Իլյիչի բնակարանը, նա ինձ այնպես սիրալիր դիմավորեց, որ
կարծես երեկ ոչ մի բանավեճ չէր եղել: Նա ձեռքն իմ ուսին խփեց և ասաց.
«Ձեր հոդվածը կտպագրենք առանց որևէ փոփոխության, կվիճենք նրա հետ
«Պրոլետարիի» էջերում, իսկ դուք կխորհեք, թե ով է արդարացի»:
Եվ Վլադիմիր Իլյիչը կատարեց իր խոստումը: Մի երկու շաբաթ հետո լույս
տեսավ «Պրոլետարին» և այնտեղ առանց որևէ փոփոխության տպված էր իմ
հոդվածը՝ «Օտզովիստ» ստորագրությամբ, և հենց նույն համարում տպագրված
էին մի քանի հոդվածներ, որոնք քննադատում էին թե՛ իմ օտզովիստական
դիրքը, թե՛ այսպես կոչված՝ ուլտիմատիստների դիրքը:

***

1917 թվականը մեզ գտավ Շվեյցարիայում՝ էմիգրացիայում: Ռուսաստանից
ստացվող լուրերը վկայում էին, որ մոտենում է ռևոլյուցիան: Շվեյցարիայում
գտնվող Վլադիմիր Իլյիչը հասկանում էր, որ իր ներկայությունը Ռուսաստանում անհրաժեշտ է: Ռուսաստանում պարտիայի բուն կենտրոնական օրգանը
տատանվող դիրք էր բռնել: Մենք, բոլշևիկների դիրքերում գտնվող էմիգրաներս, Շվեյցարիայում ուժերս ներածի չափ անում էինք ամեն ինչ, որպեսզի
բացահայտենք պաշտպանողականության կործանարար նշանակությունը Ռուսաստանի համար:
Շվեյցարացի ձախ սոցիալ-դեմոկրատ Ֆրից Պլատտենի միջոցով Վլադիմիր Իլյիչը շոշափում էր Գերմանիայի վրայով իր Ռուսաստան վերադառնալու
հնարավորությունը: Գերմանական կառավարությունը տատանումներից հետո
համաձայնում է Լենինին թույլ տալ Գերմանիայով անցնել Ռուսաստան:
Անգլիական, ֆրանսիական ու ցարական հետախուզությունները կատաղի
ագիտացիա ծավալեցին Անտանտայի երկրներում, պետական դավաճանության
մեջ մեղադրելով Լենինին: Մեկնելուց առաջ Լենինը շվեյցարիայի բանվորներին
դիմեց իր հայտնի նամակով, որի մեջ բացատրում էր ռուս բոլշևիկների հնտերնացիոնալիստական դիրքերը և այն շարժառիթները, որոնցով նա որոշել է
Ռուսաստան մեկնել Գերմանիայով:
Դա համարձակ քայլ էր մեծ ռևոլյուցիոների կողմից, որը համոզված էր
իր դիրքերի արդարացիության մեջ:

---

# Արվեստասերի
# ԱՄԲԻՈՆ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԸ

Ալեքսանդր Թամանյանի մահվան 25-ամյակի առթիվ



Հայաստանը դեռ անցյալից հայտնի է եղել որպես քարի ուրույն ճարտարապետության երկիր, որի հազարամյա հոյակապ նմուշները հասել են մինչև մեր օրերը։

Սակայն ճարտարապետական ստեղծագործությունը նյութական մեծ ծախսերի հետ է կապված և կարող է զարգանալ խաղաղ և ավյալ երկրի տնտեսական բարգավաճման պայմաններում։ Իր գոյության ամենածանր ժամանակներում անգամ, պարսկական և թուրքական դաժան լծի տակ և ցարական տիրապետության օրոք, հայ ժողովուրդը գրականության, երաժշտության թատրոնի և կերպարվեստի ասպարեզում տվել է ականավոր դեմքեր։ Սակայն ճարտարապետության բնագավառում, նրա ծաղկման վերջին շրջանի (X—XIV դդ.) հետո, երբ հայ ճարտարապետությունը տվեց այնպիսի հանճարեղ վարպետներ, ինչպիսիք էին՝ Անիի մայր տաճարի և Աղթամարի տաճարի հեղինակներ Տրդատն ու Մանվելը, չեն ստեղծվել նշանավոր գործեր մինչև Հայաստանում սովետական կարգեր հաստատվելը, որովհետև խաղաղությունը եղել է կարճակեցիկ հյուր, տնտեսական վերելք երկիրը չի ապրել։

Սովետական իշխանության հաստատման առաջին օրից Հայաստանում ամենից առաջ սկսվում են երկրի քայքայված տնտեսության վերականգնման աշխատանքները, որ տևում են շատ կարճ՝ 2—3 տարի, մինչև 1923 թվականը։ Դրանից հետո, սկզբում շատ դժվարին պայմաններում, սակայն օրեցօր աճող տեմպերով բոլոր բնագավառներում ծավալվում է նոր, վերածնվող Հայաստա-



նի սոցիալիստական շինարարությունը։ Տնտեսության և կուլտուրայի զարգացման այդ մեծ վերելքի սկզբում հայրենիք է ձգտում հայ մշակույթի տաղանդավոր ներկայացուցիչների մի ամբողջ պլեադա՝ Չարենցը, Սարյանը, Սպենդիարյանը, Փափազյանը և ուրիշներ, որոնց ստեղծագործությունը հայրենի հողի վրա ծաղկում է նոր, հազար գույներով։ 1923 թվականին Հայաստան է գալիս նաև Ալեքսանդր Թամանյանը՝ աշխատանքի, ստեղծագործության ծարավ, եռանդով երիտասարդ, փորձով ու վարպետությամբ ակադեմիկոս, տաղանդավոր ճարտարապետ, որն արդեն մեծ վաստակ ունենալով Հայաստանից
դուրս, փափագում էր ստեղծագործել հայրենի երկրում, կյանք ու շունչ տալ
հայրենի քարերին։ Եվ նա գտավ ինչ փնտրում էր, դառնալով սովետահայ
ճարտարապետության և քաղաքաշինարարության հիմնադիրը։

Ալեքսանդր Հովհաննեսի Թամանյանը ծնվել է 1878 թվականին Եկատերինոդար (այժմ Կրասնոդար) քաղաքում։ Դեռ աշակերտական տարիներին ցուցաբերելով ընդունակություններ նկարչության մեջ՝ հետագայում ընդունվում է Պետերբուրգի Գեղարվեստական ակադեմիայի ճարտարապետական բաժինը, որն ավարտում է 1904 թվականին։

XIX դարի վերջում և XX դարի սկզբում ցարական Ռուսաստանում, ինչպես և մյուս կապիտալիստական երկրներում ճարտարապետությունն անկում էր ապրում, հետադիմական էր և գաղափարազուրկ։ Կապիտալիզմի բուռն զարգացման պայմաններում շինարարական աշխատանքները վարում էր բուրժուազիան, որին չէին հետաքրքրում ընդհանուր շահերը, կամ ազգային կուլտուրայի զարգացման հեռանկարները։ Մի կողմից՝ համակված շովինիստական ձգտումներով, մյուս կողմից՝ ի բնե կոսմոպոլիտ, նա ստորաքարշաբար
հետևում էր արևմտաեվրոպական անկումային կուլտուրային։

Ճարտարապետության մեջ այդ ժամանակ իշխում էր էկլեկտիզմը, որն արտացոլում էր կապիտալիզմի սոցիալական հակասությունները և ճարտարապետական բոլոր ոճերի անսկզբունք մի խառնուրդ էր։ Կապիտալիստը պատվիրելով որևէ շենք, ինքն էր թելադրում ճարտարապետին իր անհատական ճաշակը՝ իր սեփական «ոճը»։ Անգամ այնպիսի քաղաքում, ինչպիսին էր Պետրոգրադը, որտեղ քաղաքի հիմնադրման օրից ամեն ինչ կառուցվել էր հստակ ոճով, պահպանելով քաղաքի ճարտարապետական ամբողջականությունը, այդ
ժամանակ նույնպես ծաղկում էր էկլեկտիզմը և «մոդեռնը»։

Սակայն կային մի խումբ առաջադեմ երիտասարդ ճարտարապետներ՝
Ա. Շչուսևը, Ի. Ֆոմինը, Ի. Ժոլտովսկին, Վ. Շչուկոն և ուրիշներ, որոնք ձգտում էին ճարտարապետությունը դուրս բերել այդ փակուղուց, տանել այն ռուսական կլասիկ ճարտարապետության հետագա զարգացման ուղիով։ Այդ
խմբում էր նաև երիտասարդ Թամանյանը։

Բնականաբար նրանց այդ ճիգերի արդյունքը առանձին ստեղծագործական հաջողություններ էին միայն. նրանք չէին կարող փոխել ընդհանուր դրությունը։ Պատահական չէ, որ հետագայում հենց այդ խմբի անդամներն էլ դարձան սովետական ճարտարապետության ականավոր վարպետներ։

Թամանյանի գործունեության առաջին շրջանը, նախքան Հայաստան գալը, ծավալվում է Ռուսաստանում և աչքի է ընկնում իր բուռն զարգացմամբ ու նպատակասլացությամբ։ Նրա առաջին ինքնուրույն աշխատանքներից մեկը Պետերբուրգի Նևսկի պողոտայի վրա գտնվող հայկական եկեղեցու վերականգնման նախագիծն է, որը XVIII դարի վերջում կառուցել էր ակա-

նավոր ճարտարապետ Ցելտենը՝ Նևայի մոնումենտալ գետափնյա ձևավորում-
ների հեղինակը՝ Լազարյանների պատվերով։ Այդ աշխատանքը Թամանյանը
կատարում է 1904—1906 թվականներին։ Ինչպես այդ, այնպես էլ հետագա
ուրիշ աշխատանքները Պետերբուրգում, Մոսկվայում և Ռուսաստանի այլ քա-
ղաքներում Թամանյանը կատարում է պատասխանատվության մեծ զգացու-
մով, բարեխղճությամբ ու մեծ ճաշակով, կլասիկ ճարտարապետության սկզբ-
բունքներով, բայց նոր և թարմ հորինմամբ, արժանանալով թե՛ ընկերների և
թե հասարակության գովասանքին։ Հատկապես հիշատակության արժանի են
Ցարսկոյե Սելոյի (Ցարսկոյե Սելոյի) ... 
կառուցված տոնավաճառային հրապարակի պավիլիոնները, որոնք կառուցված
են ռուսական փայտաշեն ճարտարապետությանը հարազատ եղանակով և
ցույց են տալիս, որ հեղինակը մեծ վարպետությամբ տիրապետում է փայտի,
որպես շինանյութի թե՛ կոնստրուկտիվ և թե դեկորատիվ ձևերին։ Սիլուետով,
գունավորությամբ, ձևերի բազմապիսությամբ հարուստ ու նրբաշնակ այդ
անսամբլը ռուսական ազգային ինքնատիպ ճարտարապետության անխարդախ
ու փայլուն մի նմուշ է։

Թամանյանը կարողանում էր խորապես զգալ ամեն մի ոճի հատկանշա-
կան կողմը, նրա բուն ոգին և ոչ թե ընդօրինակել կամ ոճաբանել այն։ Թա-
մանյանի նախագծով կառուցված մեծ շենքերից մեկը՝ «Շչերբատովի տունը»
Մոսկվայում, Զայկովսկու փողոցի վրա, մեծ համբավ է բերում հեղինակին.
դրա համար նա արժանանում է Մոսկվայի քաղաքային վարչության կողմից
հայտարարված (1913 թվականին կառուցված լավագույն շենքերի համար)
մրցանակաբաշխության ոսկե մեդալին։ Այդ իրավամբ XX դարի սկզբներին
կառուցված լավագույն շենքերից մեկն է թե՛ իր ընդհանուր լուծումով և թե
հատկապես, ներքին ճարտարապետական մշակմամբ։

1914 թվականին, 36 տարեկան հասակում և ընդամենը 10 տարվա ստեղ-
ծագործական աշխատանքի փորձով, Թամանյանն ընտրվում է ճարտարապե-
տության ակադեմիկոս և դասվում Ռուսաստանի նշանավոր ճարտարապետ-
ների շարքը։

Սակայն ավելի մեծ ջանքեր պետք է թափեր Թամանյանը հայրենի երկ-
րում, ուր նա ամբողջ հոգով ձգտում էր օր առաջ լինել, նախապես զգալով իր
ներկայության մեծ անհրաժեշտությունը իր կիսավեր հայրենիքում։ Երբ Թա-
մանյանը Երևան եկավ, ամբողջ Հայաստանում կային ընդամենը մի քանի
շինարար ինժեներ ու տեխնիկ. նոր, սովետական դպրոցներն ավարտած երի-
տասարդ մասնագետներ դեռ չկային։

1923 թվականի մայիսի 23-ին ՀՍԽՀ Ժողկոմխորհի նախագահ Լուկաշի-
նին ուղղած զեկուցագրից երևում է, որ Թամանյանը շատ լավ էր պատկերաց-
նում տիրող դրությունը և այն ամենը, ինչ անհրաժեշտ էր կատարել շինարա-
րության բնագավառում և, որ գլխավորն է, նա այդ խնդրին չէր մոտենում
որպես իր ծառայությունններն առաջարկող նեղ մասնագետ, այլ որպես քա-
ղաքացի ու հայրենասեր, որպես հասարակական ու պետական գործիչ, հայ-
րենի ավերված երկրի տնտեսության ու մշակույթի վերածնունդը կազմակեր-
պող անձնվեր մշակ։ Ահա թե ինչ է գրում նա այդ զեկուցագրում։

«...Շինարարության ասպարեզում Հայաստանի այժմյան պահանջների
բավարարումը և գոյություն ունեցող ճգնաժամի վերացումը չեն կարող իրա-
կանանալ շինարարության այն կարգի ու ծավալի վերականգնման ուղիով, որ



եղել է Հայաստանի տերիտորիայում մինչև 1914 թվականը։ ...Հայաստանը,
որ այն ժամանակ եղել է մեծ պետության լոկ հեռավոր մի գավառ, որևէ լուրջ
տեղ չի գրավել նրա պետական շինարարության ընդհանուր պլաններում և այն
ամենը, որ այն ժամանակ կառուցվել է նրա տերիտորիայի վրա, բխել է ոչ
այնքան բուն Հայաստանի կարիքներից, որքան նրանից դուրս եղած պատ-
ճառներից։ Այն ժամանակ կատարված բոլոր աշխատանքները չեն տվել քիչ
թե շատ շոշափելի արդյունք Հայաստանի կուլտուրական շինարարության
իմաստով, ընդհակառակը, ամենուրեք զգացվում է լիակատար արհամարհանք
ժողովրդի շահերի ու ազգային կուլտուրայի հանդեպ։ Ոչինչ չի ներմուծվել
Հայաստան նաև համաեվրոպական կուլտուրայից և այն ամենի վրա, ինչ
արվել է, դրված է վհատության և գավառային հետամնացության կնիք։ Այժմ
Հայաստանի համար անհրաժեշտ կառուցումների էությունը հին վերքերի բու-
ժումը չէ և ոչ էլ հին, ավերված կառուցվածքների վերականգնումը, այլ բա-
վարարումն այն պահանջմունքների, որոնք թելադրվում են Հայաստանի կուլ-
տուրական ու տնտեսական վերածնության նոր սկզբունքներով...»։

Նախասովետական Հայաստանի շինարարության վիճակն այդպես ճիշտ
բնութագրելուց հետո, նույն զեկուցագրում Ա. Թամանյանն առաջադրում է
շինարարական աշխատանքների մի ընդարձակ ծրագիր, որի մեջ մտնում են՝
Հայաստանի քաղաքների ու գյուղերի վերակառուցումն ու բարեկարգումը, ճա-
նապարհների շինարարությունը, հիդրոէլեկտրակայան-
ների ու ոռոգիչ ջրանցքների կառուցումը, Հայաստանի հարուստ շինանյու-
թերի օգտագործման խնդիրը, շինարարության կազմակերպման, պլանավոր-
ման և նախագծման կազմակերպումը և այլն։ Լինելով բազմակողմանի զար-
գացած մասնագետ, Թամանյանը մեծ եռանդով մասնակցում է այդ բոլոր
աշխատանքներին, ամեն տեղ հնարավորին չափ ներդնելով իր ուժերն ու ան-
սպառ եռանդը։ Լավ գիտենալով, որ շինարարության ճիշտ ընթացքի հաջողու-
թյունը կախված է առաջին հերթին քաղաքաշինարարական միջոցառումներից,
Թամանյանն առանձին շենքերի նախագծմանը զուգընթաց, ձեռնամուխ է լի-
նում հենց սկզբից Երևանի հատակագիծը կազմելուն, որը նրա կարևորագույն
աշխատանքներից մեկն է։

Այժմ, քառասուն տարի անց, նայելով նոր Երևանին, դժվար է անգամ
վերհիշել, թե որքան խղճուկ էր հին, նախասովետական Երևանը։ Նրա արդյու-
նաբերությունը սահմանափակվում էր կոնյակի, գինու, գարեջրի, կաշվի և
մի քանի այլ մանր, մասնավոր գործարաններով ու արհեստանոցներով։ Էլեկ-
տրաէներգիան հազիվ բավականացնում էր մի քանի փոքր ձեռնարկություն-
ների ու հասարակական շենքերի։ Ջուրը վաճառվում էր դույլերով՝ փողոցնե-
րում գտնվող կետերից. չկար կոյուղի, ասֆալտը դեռ մուտք չէր գործել Հա-
յաստան։ Թեև խաղողի ու պտղատու մասնավոր այգիները գրավում էին քա-
ղաքի զգալի մասը, բայց քաղաքը շրջապատող դժվար ոռոգվող լանջերը զուրկ
էին կանաչից և երեկոյան, երբ բարձրանում էր երևանյան քամին, քաղաքը
կորչում էր փոշու մեջ։ Բնակելի շենքերը մեծ մասամբ 1—2 հարկանի էին,
հողե կտուրներով, շատ քչերն ունեին ճարտարապետական հետաքրքիր կա-
ռուցվածք, դրանցից ավելի ինքնատիպ էին աղյուսաշեն տները, որոնց վրա
նկատվում էր պարսկական ազդեցությունը։ Համեմատաբար նոր, քարաշեն
տները կրում էին «եվրոպականացրած» էկլեկտիկ և պրովինցիալ ճարտարա-

պետության կնիքը (որոնցից դեռ շատերը գոյություն ունեն Աբովյանի, Սպան-
դարյանի, Սվերդլովի և այլ փողոցներում)։

Գորշ և ազգային ինքնատիպությունից զուրկ էր Երևանի ճարտարապե-
տական տեսքը։ Քաղաքի ամենատպավորիչ մասն էր նրա կենտրոնում գտնվող
պարսկական քաղաքներին բնորոշ «ղանթարը» (շուկան)։ Շուկայի կողքին,
ամենաաչքի ընկնող տեղում, բարձրանում էր ռուսական զինվորական եկեղե-
ցին՝ ցարական իշխանության սիմվոլը, սև տուֆից, կեղծ-ռուսական էկլեկտիկ
ոճով, ստանդարտ հինգ գմբեթներով, Թամանյանի հատու արտահայտությամբ՝
որպես մի գորտնուկ Երևանի երեսին։

Պատահական չէ, որ ձեռնամուխ լինելով Երևանի վերակառուցմանը,
Թամանյանն առաջին հերթին վերացրեց պարսկական սարդարների ու ցարիզ-
մի այդ «ժառանգությունները»։

Երևանի վերակառուցման առաջին գլխավոր հատակագիծը Թամանյանն
սկսում է 1923 թվականին և ավարտում մեկ տարում։ Բացի Երևանի հատա-
կագծից, Թամանյանը տարբեր ժամանակներում պատրաստում է նաև մի
շարք բնակավայրերի հատակագծեր (Լուկաշինի, Սովետաշենի, Նոր-Բայազեդի,
Էջմիածնի, Ախտայի և այլ վայրերի), որոնցից, սակայն, միայն մի մասն է
իրականացվել։

Երևանի հատակագիծը 1924 թվականի ապրիլի 3-ին հաստատվում է կա-
ռավարության կողմից։ Նախագիծը կազմված էր 150 հազար բնակչի հաշվով,
ընդգրկելով մոտ 1000 հեկտար տարածություն։ Հետագայում, քաղաքի չափա-
զանց արագ աճման պատճառով, նախագծի մշակման ընթացքում, Թաման-
յանը համապատասխանորեն ավելացնում է տերիտորիաները, պահպանելով
հատակագծի կոմպոզիցիան։ 1935 թվականին Թամանյանն սկսում է կազմել
Երևանի նոր հատակագիծը՝ «Մեծ Երևան» անունով, 500 հազար բնակչի հաշ-
վով, որը, սակայն, նրա մահվան պատճառով ընդհատվեց։ Նոր հատակագծի
նախագծումը հանձնարարվեց Լենինգրադի Գիպրագորին, որտեղ այն կազմ-
վեց, պահպանելով հիմնականում Թամանյանի մշակած սխեման։

Երևանի հատակագիծը նա մշակեց սովետական քաղաքաշինարարական
սկզբունքների կազմավորման վաղ շրջանում և փորձի բացակայության պայ-
մաններում նախագծմանը խոչընդոտում էին նաև արդեն ձևավորված հին փո-
ղոցների ցանցը և այն ժամանակվա համար մեծ արժեք ներկայացնող շենքե-
րի պահպանման անհրաժեշտությունը։ Չնայած այդ դժվարություններին և այն
հանգամանքին, որ հատակագծին հարակից, ոչ ճարտարապետական խնդիր-
ների մշակման համար անհրաժեշտ մասնագետներ չկային, Թամանյանը, լի-
նելով մեծ էրուդիցիայի և բարձր կուլտուրայի տեր մարդ, կարողացավ Երևա-
նի հատակագծում կենսագործել համաշխարհային քաղաքաշինարարության
փորձի առաջավոր կողմերը և, միաժամանակ, մշակել սոցիալիստական քա-
ղաքի հատակագծման համար բնորոշ նոր, հումանիստական սկզբունքները։

Քաղաքը դիտելով որպես մի ամբողջական, կուռ օրգանիզմ, Թամանյանը
բաժանում է այն ֆունկցիոնալ տարբեր հիմնական մասերի՝ բնակելի, արդյու-
նաբերական ու հանգստի, նպատակահարմար կերպով դասավորելով նրանց
տերիտորիաները։ Արդյունաբերությունը՝ երկաթուղային կայարանի մոտ,
հարթ տարածությունների վրա, հաշվի առնելով նաև Երևանի գերակշռող
քամիների ուղղությունը հյուսիսից-հարավ, այսինքն՝ բնակելի մասից դեպի
արտադրություն։ Բնակելի թաղամասերը՝ քաղաքից դեպի վեր ձգվող արևա-



շատ լանջերին։ Հանգստի վայրերը՝ Հրազդանի ափերին և գոյություն ունեցող
այգիների մասսիվների վրա, քաղաքի բոլոր կողմերում։

Թամանյանին հաջողվեց գտնել քաղաքի կանաչազարդման հետաքրքիր
մոտիվներ և հասարակական շենքերի դասավորության հաջող խմբավորում-
ներ, ինչպիսիք են՝ վարչական կենտրոնի ստեղծումը Լենինի հրապարակի
շուրջը, առևտրական քաղաքամասը շուկայի հետ՝ քաղաքի կենտրոնական մա-
սում, համալսարանական քաղաքամասը՝ բարձրագույն հաստատությունների
համար. թատրոնի, կոնսերվատորիայի, գեղարվեստական դպրոցի և արվեստի
այլ ձեռնարկությունների քաղաքամաս, թանգարանային, սպորտի, հանգստի
և այլ քաղաքամասեր։

Թամանյանի ուշադրությունից չէին վրիպում նաև քաղաքի հատակագծ-
ման տեխնիկական և հիգիենիկ պրոբլեմները՝ մայրուղիների ցանցի, հասա-
րակական տրանսպորտի, ջրամատակարարման, կոյուղու, կանաչազարդման
և այլն։ Սակայն Թամանյանի քաղաքաշինարարական ամենամեծ և անգնա-
հատելի ստեղծագործական հաջողությունը Երևանի վերակառուցման գործում
հանդիսացավ այն, որ նա իր մի քանի գլխավոր շենքերով և նրանցով կառուց-
ված անսամբլներով ստեղծեց և հաստատեց Երևանի նոր քաղաքաշինարարա-
կան մասշտաբը և ճարտարապետական նոր կերպարը, որոնք չափանիշ դար-
ձան քաղաքի հետագա շինարարության համար և որի շնորհիվ գորշ, հետա-
մնաց, գավառական Երևանը դարձավ Սովետական Հայաստանի կենսուրախ
ու բազմերանգ նորաշեն մայրաքաղաքը։

Կառավարական տունը և ժողտունը (օպերայի թատրոնի շենքը) հանդի-
սացան այն անկյունաքարերը, որոնց վրա հիմնվեց նոր, սոցիալիստական
Երևանը։ Դա մի ստեղծագործական սխրագործություն էր, որը հաջողվում է
ճարտարապետության մեջ նոր խոսք ասող վարպետներին միայն և բախտորոշ
նշանակություն է ստանում տվյալ քաղաքի համար, ինչպես, օրինակ, ճար-
տարապետներ Ռաստրելլիի Ձմեռային պալատի և Զախարովի Ադմիրալ-
տեյստվոյի կառուցումները (XVIII դար) Պետերբուրգի (Լենինգրադի) համար,
կամ Կրեմլի կառուցվածքները (XV դար)՝ Մոսկվայի համար։ Թամանյանի նա-
խագծով Երևանում կառուցված են բազմաթիվ հասարակական, բնակելի և այլ
շենքեր, որոնցից են՝ ֆիզիոթերապևտիկ, անասնաբուժական և պոլիտեխնի-
կական ինստիտուտները, անատոմիկումը, պարտիական դպրոցը, աստղադի-
տարանը, հանրային գրադարանը և այլ շենքեր։ Առանձնապես գնահատելի է
այն, որ Թամանյանն իր բոլոր կառուցվածքներում ցուցաբերում է քաղաքաշի-
նարարական մեծ տակտ, բոլորովին չձգտելով, որ բոլոր շենքերն ունենան
արտահայտչականության հավասար ուժ։ Թե՛ տեղի ընտրության և շենքի դա-
սավորության ու դիրքի և թե նրանց հարդարանքի ու երեսպատման, շինա-
նյութերի ընտրության մեջ ցուցաբերում է չափի նուրբ զգացում, տալով ամեն
մի շենքին իր ֆունկցիային և կարևորությանը համապատասխան ձև ու դիրք.
ավելի շեշտելով գլխավոր, հասարակական շենքերը և համեմատաբար համեստ
ձև ու տեղ տալով շարքայիններին։

Հայաստան գալով որպես արդեն հասուն վարպետ՝ Թամանյանը, բնա-
կանաբար, իր առաջին կառուցվածքներում կրում էր նախկին գործունեության
ազդեցությունը։ Սակայն լինելով ազգային կուլտուրայի ժառանգության օգ-
տագործման կողմնակից և, ինչպես տեսանք, հաջողությամբ կենսագործելով
այդ սկզբունքը Ռուսաստանում իր կառուցած շենքերում, նա չէր կարող ան-

տարբեր մնալ հայրենի երկրի հոյակապ ճարտարապետական ժառանգության նկատմամբ։

«Իմ բոլոր աշխատանքներում,— գրում է Թամանյանը,— սկսած 1923 թվականից, ես փորձել եմ օգտագործել անցած դարերի ճարտարապետական ժառանգությունը։ Ես ձգտել եմ գտնել այնպիսի ձևեր, որոնք համապատասխանեին երկրի կլիմայական պայմաններին ու բնության առանձնահատկությանը, ինչպես և արտահայտեին Հայաստանի ժողովրդական ստեղծագործությունը։ Այդ աշխատանքներում ես ձգտել եմ գտնել այնպիսի լուծում, որի մեջ ազգային ձևը զուգակցվի սոցիալիստական բովանդակության հետ»։ Եվ նա, առաջին իսկ օրվանից, չնայած շատ զբաղված լինելուն, մեծ հետաքրքրությամբ սկսում է ուսումնասիրել հայկական հին ճարտարապետությունը։ Այդ գործում նրան սիրով օգնում է հայկական հին ճարտարապետության անվանավոր հետազոտող Թորոս Թորամանյանը՝ նրա մտերիմ բարեկամը։

Թամանյանի հետաքրքրասիրությունը դեպի հին հայկական ճարտարապետությունը, հնությունների երկրպագուի հետաքրքրասիրություն չէր լոկ, այլ նպատակ ուներ հնի խոր ուսումնասիրությամբ վեր հանել նրա պրոգրեսիվ կողմերը, կոնստրուկտիվ և գեղարվեստական պրոֆեսիոնալ «գաղտնիքները», որովհետև Թամանյանը համոզված էր, որ առանց հինն իմանալու հնարավոր չէր ստեղծել նորը։ Ահա Թամանյանի անդրանիկ գործի՝ առաջին հիդրոէլեկտրակայանի շենքը, որն իրավամբ համարվում է ամենալավ աշխատանքներից մեկը։ Այս նախագծում, ինչպես նրա շատ այլ գործերում, շենքի ճարտարապետությունը մեծ վարպետությամբ կապված է նրան շրջապատող միջավայրի հետ։ Շենքը կառուցելով Հրազդանի բազալտապատ ձորում, նա ընտրում է պարզ, ոչ սիմետրիկ կոմպոզիցիա, երեսպատելով շենքը բազալտի կոպիտ տաշված քարերով, որոնց շնորհիվ ստացվում է շենքի և բնության հարմոնիկ միասնություն։ Գլխավոր ճակատի կամարակապ, ապակեպատ բացվածքները թեթևակիորեն ակնարկում են որոշ ազգային գծեր. ընդհանուր հարդարանքը պարզ է, բայց խիստ ու առնական և զգացվում է, որ շենքն ունի արտադրական նշանակություն։

Այս ոչ մեծ, բայց Թամանյանի կարևոր ստեղծագործությունը նշանավոր է նրանով, որ այն հանդիսացավ սովետահայ ճարտարապետության մեջ ազգային ժառանգությունն օգտագործելու նրա առաջին և փայլուն քննությունը։

Սակայն Թամանյանի մեծ վարպետության ամբողջ ուժը երևան է գալիս նրա երկու խոշորագույն գործերում՝ կառավարական տան և օպերայի թատրոնի շենքերի նախագծերում։ Կառավարական տունը Հայաստանի վերածնված պետականության խորհրդանիշը լինելով, ավելի քան մի այլ շենք, հավակնություն ուներ ունենալու ազգային ինքնատիպ ճարտարապետություն։ Թամանյանը հասավ այդ բանին, չսահմանափակվելով սակայն ազգային ճարտարապետության ձևերով։ Թե՛ Լենինի հրապարակի հատակագծում և թե՛ շենքի կոմպոզիցիայում նա օգտագործել է նաև ռուսական ու համաշխարհային ճարտարապետության ժառանգության վերաբերյալ ունեցած իր խոր գիտելիքները։

Կառավարական տունն իր բազմապլան հակադիր, միաժամանակ հուժկու, մոնումենտալ և ժանյակի պես նուրբ ձևերով, կամարակապ լայն, հյուրընկալ մուտքերով և պատուհանների ռիթմիկ, լուսառատ շարքերով, հասա-



րակական նոր տիպի, ժողովրդայնության ոգով ստեղծված ճարտարապետական մի հոյակապ նմուշ է։

Կառավարական տունը չունի իր նախատիպը մեր հին ճարտարապետության մեջ. չի հիշեցնում մեր հին կոթողներից և ոչ մեկին. միևնույն ժամանակ, նրա մեջ մարմնացած են դրանց բոլորի լավագույն հատկանիշները։ Վերականգնելով մեր բնական քարերի կիրառման հազարամյա բարձր արվեստը, որը մոռացության էր տրվել շինարարական աշխատանքների երկարատև ընդհատման պատճառով, Թամանյանը կառավարական տան ճակատի հարդարանքում ստեղծեց քարի պլաստիկ մշակման՝ հայկական ճարտարապետությանը հատուկ՝ լույսի ու ստվերի հարուստ հակադրություններով քանդակների նոր, կատարյալ նմուշներ։ Աշխատանքային պրոցեսներ, Հայաստանի բնության և այլ մոտիվներ արտահայտող քանդակներն օրգանապես կապվելով շենքի բովանդակության հետ՝ նպաստեցին նրա ճարտարապետական կերպարի բացահայտմանը, ժողովրդին հասկանալի հանդիսավորություն տալով այդ կարևորագույն հասարակական շենքին։

Երեկոյան, երբ մայր մտնող արևի կարմրաբոսոր ճառագայթներն ավելի վարդագույն են դարձնում շենքի ճակատը, և թվում է թե կենդանանում են նրա քարերն ու ասես թե լույսը նրանց խորքից է բխում, դժվար է անտարբեր, առանց հուզմունքի անցնել արվեստի այդ բարձր հայտնագործության կողքով։ Թամանյանի այս երկը հայ ժողովրդի մշակույթի զարգացման մի ամբողջ ժամանակաշրջանի նշանաբանն է, ինչպես պատմական որոշ ժամանակաշրջաններ նշանավորել են Գառնիի հեթանոսական տաճարը, Երերույքը, Զվարթնոցը և Անիի մայր տաճարը։

Կառավարական տունը, որպես սովետական ճարտարապետության լավագույն նմուշներից մեկը, 1942 թվականին արժանացավ Ստալինյան մրցանակի։

Թամանյանի երկրորդ խոշորագույն ստեղծագործությունը օպերայի թատրոնի շենքն է (Ժողովրդական տունը)։ Ժողտան շենքի մտահղացումն իր հիմքում ունի Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո, առաջին տարիներին հատուկ, թատրոնի և դրամատուրգիայի ասպարեզում գերակշռող ռևոլյուցիոն ռոմանտիկան, երբ ձգտում էին ստեղծել հանդիսատեսային նոր տիպի շենք, ժողովրդական մեծ հանդեսներին, միտինգներին հարմար և միևնույն ժամանակ թատրոնի նոր շենք, որտեղ բեմի և դահլիճի, հանդիսատեսի ու դերակատարների փոխհարաբերությունը նոր ձևով պետք է դրսևորվեր։

Այդ իդեաներին համամիտ, Թամանյանն աշխատում էր դրանք մարմնավորել ճարտարապետական մտահղացման մեջ։ Այդ կարևորագույն մասսայական շենքի համար նա ընտրեց պարզ, մոնումենտալ ծավալային կոմպոզիցիա, օգտագործելով ազգային և կլասիկ ճարտարապետության հանդիսատեսային շենքերի լավագույն նմուշները։ Թամանյանը նախագծեց մի շարք օրիգինալ նորություններ, ինչպես՝ երկու դահլիճների դասավորությունը մի բեմի շուրջը, մեկը՝ ձմեռային, մյուսը՝ ամառային։ Այդ հնարավորություն կտար մասսայական հանդեսների ժամանակ համատեղ օգտագործել երկու դահլիճները։ Բեմի երկու կողմերի լայն պանտուսների (թեք հարթակներ) շնորհիվ կարելի էր բեմի վրայով անցկացնել ամեն տեսակի դեմոնստրացիաներ, անգամ տրանսպորտի միջոցով և, եթե իրականացվեր ամառային դահլիճի իդեան, ապա հնարավոր կլիներ դիտել բեմը երկու դահլիճներից միաժամանակ, վե-

բածելով այն յուրատեսակ կրկեսային արենայի։ Ձմեռային դահլիճի կողմից սովորական թատրոնների բեմի միակ «պորտալ»-ի (բացվածք դեպի դահլիճը) փոխարեն Թամանյանը դրեց լրացուցիչ երկու փոքր «պորտալներ» կողքերից, որոնք օրիգինալ հնարավորություններ են ստեղծում բեմադրության համար (այդ բացվածքներն այժմ անտեղի փակված են)։ Ելնելով շենքի կարևորությունից, Թամանյանը ժողտունը դասավորեց մայրուղիների հանգուցակետում, որտեղից ձգվելու էին «Հյուսիսային պողոտան» (դեռ չի կառուցված) և «Հյուսիսային կասկադը» (այժմ Թամանյանի անվան փողոց), ստեղծելով շենքի շուրջը կանաչի և հրապարակների գոտի։ Չնայած շենքի կառուցման ընթացքում կատարված որոշ փոփոխությունների ու նրա կիսավարտ երեսպատմանը, հսկայածավալ այդ շենքը հպարտորեն վեր է խոյանում, իշխելով քաղաքի վրա, իր առանցքով ուղղված դեպի ալեհեր Մասիսը, հաղորդելով նրան վերածնված հայ ժողովրդի ողջույնը։

Ժողտան նախագիծը 1936 թվականին Փարիզում կայացած համաշխարհային ցուցահանդեսում արժանացավ ոսկե մեդալի։ Հանդիսատեսային այդ բարդ կառուցվածքը Սովետական Միությունում այդ կարգի լավագույն շենքերից մեկն էր, ի տարբերություն նույն ժամանակաընթացքում կատարված բազմաթիվ փորձերի, որոնք, սակայն, սխեմատիկ և անկենսունակ բնույթ ունենալով, թղթի վրա մնացին։

Թամանյանը չի սահմանափակվել միայն նախագծումով. նա մեծ կարևորություն էր տալիս հեղինակի մասնակցությանը շինարարության իրականացման գործին և հետևում էր իր նախագծով կառուցվող շենքերին, իսկ գլխավոր կառուցվածքներում, անմիջականորեն ղեկավարելով աշխատանքը, ապահովում էր նախագծերի անթերի իրականացումը և այդ այն ժամանակ, երբ դեռ կառուցողական հնարավորությունները ցածր մակարդակ ունեին։ Պատասխանատվության մեծ զգացումով ու պահանջկոտությամբ կատարելով իր գործը՝ նա նույնքան խիստ և պահանջկոտ էր աշակերտների և աշխատակիցների նկատմամբ։

Նպաստելով հայկական կառուցողական արվեստի վերականգնմանը, Թամանյանը միևնույն ժամանակ զարկ էր տալիս շինարարական նոր պրոգրեսիվ մեթոդների զարգացմանը, շինարարության մեքենայացմանը, ռացիոնալիզացիային, էժանացմանը, նոր շինանյութերի օգտագործմանը։ Խոշոր է Թամանյանի դերը նաև Հայաստանի ճարտարապետական հուշարձանների պահպանման գործում։ 1923 թվականից գլխավորելով Հայաստանի հնությունների պահպանության կոմիտեն, մեծ խնամքով ու ջանասիրությամբ նա ձեռնարկեց հայ ժողովրդի կուլտուրական ժառանգության պահպանմանը և գիտական ուսումնասիրությունների ծավալմանը։

Անձնվեր ու բեղմնավոր աշխատանքով, մարդասիրությամբ ու համակրելի բնավորությամբ Թամանյանը վայելում էր իր շրջապատի և ժողովրդի հարգանքն ու սերը։ Նա արժանացավ Ժողովրդական ճարտարապետի պատվավոր կոչման և ընտրվեց Հայաստանի Կենտգործկոմի անդամ։

Ալեքսանդր Թամանյանը Սովետական Հայաստանի սոցիալիստական նոր կուլտուրայի հոյակապ շենքի հիմնական սյուներից մեկն է և հայ ժողովրդի հազարամյա շինարարական հանճարի արժանի ժառանգորդը։ Նրա ստեղծագործությունը մեծ ավանդ է սովետական բազմազգ ժողովուրդների սոցիալիստական կուլտուրայի հաստատման համար։



Թամանյանը մահացավ 1936 թվականին, տակավին երիտասարդ, իր ստեղծագործական հնարավորությունների ծաղկման շրջանում, դեռ չիրականացված հարուստ մտահղացումներով։ Նա պատրաստ էր ավելի մեծ ծառայություններ մատուցելու սիրելի հայրենիքին և ժողովրդին։ 1935 թվականին, Սովետական Հայաստանի 15-րդ տարեդարձի առթիվ «Խորհրդային Հայաստանի մայրաքաղաքը» իր հոդվածում, ոգեշնչված Երևանի վերակառուցման հաջողություններով, գրում էր. «...Խորհրդային իշխանությունը այս բոլոր նվաճումները Հայաստանում ունեցել է ազգամիջյան կռիվներից քարուքանդ եղած, ավերված, տնտեսապես քայքայված և ալան-թալանի ենթարկված ու սովի մատնված երկրում... Եթե այդպիսի դժվարագույն պայմաններում Խորհրդային իշխանությունն այնքան կարճ ժամանակամիջոցում այսպիսի հսկայական ու սքանչելի հաղթանակներ ու նվաճումներ է ունեցել, որ մարդ ապշում է, ապա ուրեմն պիտի էլ ավելին սպասել հետագա տարիներում, երբ արդեն կազմակերպչական շրջանն անցել է, երբ ավելի նպաստավոր և խաղաղ պայմաններ են ստեղծվել շինարարության համար...»։

Թամանյանի անժամանակ մահից հետո նրա կիսավարտ կառուցվածքները հաջողությամբ շարունակեց նրա ավագ որդին՝ ճարտարապետ Գևորգ Թամանյանը, հիմնականում հոր՝ արդեն ավարտված գծագրերով, որոշ լրացումներով, առանց էական փոփոխությունների, բացառությամբ օպերայի թատրոնի ամառային դահլիճը ֆիլհարմոնիայի ձմեռային դահլիճի վերածելուց։

Թամանյանն ունեցավ բազմաթիվ հետևորդներ. նրա արվեստանոցում սովորեցին և աճեցին Հայաստանի անվանի ճարտարապետներից շատերը։ Նրա աշխատանքները կենդանի օրինակ դարձան ճարտարապետների մի ամբողջ սերնդի համար, որը կարողացավ ճիշտ ըմբռնել մեծ վարպետի ստեղծագործական մեթոդը։ Սակայն Թամանյանի ստեղծագործությունը քսանական թվականներին չընդունվեց անվերապահորեն, երբ դասակարգային սուր հակասությունների պայմաններում ուժեղ պայքար էր մղվում ամեն «հնի» դեմ. շատերը փորձեցին Թամանյանի ստեղծագործությունը համարել էկլեկտիկ և «եկեղեցական» ճարտարապետության ռեստավրացիա։ Մինչդեռ Թամանյանի ստեղծագործությունը զերծ էր այդ արատավոր թերություններից։ Իրոք, հին հայկական ճարտարապետական ձևերի օգտագործման փորձեր արվել են Երևանում, Լենինականում, Էջմիածնում թե՛ սովետականացումից առաջ և թե հետո, բայց այդ փորձերը ոչ մի կապ չունեն Թամանյանի ստեղծագործական, նորարարական մեթոդի հետ և պատմական մեծ բարեբախտություն էր այն, որ այդ խնդրի լուծումը սովետահայ ճարտարապետության սկզբնավորման ժամանակ վիճակվեց նրան։

Թամանյանի համար ժառանգությունը ոչ թե ընդօրինակման աղբյուր էր, այլ ե լ ա կ ե տ, որը հնարավորություն էր տալիս նրան նորը ստեղծելու։ Եվ նա աննահանջ շարունակեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իր ստեղծագործությունը, հավատարիմ մնալով նոր, պրոլետարական կուլտուրա ստեղծելու մասին Վ. Ի. Լենինի հետևյալ ցուցումին. «Առանց պարզ ըմբռնելու այն, որ միայն մարդկային ամբողջ զարգացմամբ ստեղծված կուլտուրան ճշգրիտ գիտենալով, միայն նրա վերամշակմամբ կարելի է կառուցել պրոլետարական կուլտուրա — առանց այդպիսի ըմբռնման մենք այդ խնդիրը լուծել չենք կարող» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 348)։ Գեղեցիկը հարկավոր է պահպանել, վերցնել այն որպես օրինակ, մեկնել նրանից, եթե անգամ

այն «հին» է։ Իսկ ինչո՞ւ մենք պետք է երբևէ դարձնենք բուն գեղեցկից, հրաժարվենք նրանից, որպես հետագա զարգացման ելակետից, միայն այն բանի հիման վրա, որ այն հին է,— ասել է Վ. Ի. Լենինը Կ. Ցետկինին։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1932 թվականի՝ «Գրականության և արվեստի կազմակերպությունների վերակառուցման մասին» որոշումից հետո, երբ նշվեցին սոցիալիստական կուլտուրայի զարգացման նոր ուղիներ և Հայաստանի ճարտարապետները համախմբվեցին մի կազմակերպության մեջ, ազգային ժառանգության օգտագործման սկզբունքն ընդունվեց բոլորի կողմից, և Թամանյանը ճանաչվեց որպես սովետահայ նոր ճարտարապետության շարժումը գլխավորող վարպետ. Նրան սկսեցին աշակերտել բոլորը։

Սակայն եղան և այնպիսիները, որ չհասկանալով նրա մեթոդը, շարունակեցին պասսիվ ընդօրինակել ինչպես հին ճարտարապետության, այնպես էլ Թամանյանի ստեղծագործության նմուշները, որի հետևանքը եղան բազմաթիվ ոչ լիարժեք, արխաիկ գծերով, չպատճառաբանված ավելորդ պաճուճանքով ծանրաբեռնված գործեր։

Թամանյանի իսկական հետևորդն այն ճարտարապետը չէ, որը կրկնում է նրա ստեղծած մոտիվները և, անշուշտ, Թամանյանն էլ այսօր, երբ մեր ճարտարապետության առջև դրված են նոր խնդիրներ, չէր կրկնի իր անցած ուղին, այլ կստեղծագործեր նոր հնարներով ու ձևերով, օգտագործելով այն հնարավորությունները, որոնք դեռ չկային։

Անդրադառնալով ժառանգությունից օգտվելու, հին վարպետներից սովորելու խնդրին, մեր մեծ բանաստեղծ Ավետիք Իսահակյանը ճարտարապետների հետ ունեցած իր մի զրույցում ասել է. «Մոտենալով նրանց, հեռանանք նրանցից, հեռանալով նրանցից, մոտենանք նրանց»։ Մոտենանք նրանց, սովորենք նրանց ստեղծագործական գաղտնիքները, ազգային յուրահատկությունների իմաստը, նրանց ոգին, որպեսզի կարողանանք ստեղծել նորը, ժամանակակիցը և դրանով հեռանանք նրանցից, մնանք մեր ժամանակին հարազատ, և միայն այդ միջոցով մենք կմոտենանք նրանց, կդառնանք նրանց արժանի ժառանգները։

Այս սկզբունքով էր ղեկավարվում Թամանյանը, երբ ուսումնասիրում էր Տրդատի, Մանվելի և մեր անհայտ ժողովրդական վարպետների անմահ գործերը։

Սովետահայ ճարտարապետությունն ապրում է իր զարգացման նոր, ավելի բարձր փուլը։ Ստեղծվում են նոր, սոցիալիստական քաղաքներ ու ավաններ. վերակառուցվում և բարեկարգվում են հին բնակավայրերը։ Ծավալվում է բնակարանային և հասարակական շենքերի աննախընթաց մասսայական շինարարությունը։ Շինարարության մեջ արմատավորվում են ինդուստրիալ, առաջավոր նոր մեթոդներ, նոր շինանյութեր։ Վերակառուցվում է նախագծումը, հարթվում են ճարտարապետության զարգացման նոր ուղիներ, որոնվում արտահայտչականության պարզ ձևեր, նոր սկզբունքներ։

Մեծ դժվարություններ է հաղթահարել սովետահայ ճարտարապետությունը. ունեցել է սխալներ և մեծ հաջողություններ. Նրա լավագույն նվաճումներից է Ալեքսանդր Թամանյանի ստեղծագործությունը, մի մարդու, որին վիճակված էր վայելել ժողովրդական ճարտարապետի մեծ կոչումը։

Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ
Ճարտարապետ

---

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

1960 թվականի հունիսին ՍՄԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց սովետական մամուլում և ռադիոյում հասարակական հիմունքների հետագա զարգացման մասին։ Շուտով կբոլորի այդ որոշման մեկ տարին։ Անցած ժամանակաշրջանում կատարված աշխատանքը հնարավորություն է տալիս դատելու ձեռք բերված դրական փորձի և եղած թերությունների մասին։

Զարգացնել հասարակական հիմունքները, նշանակում է մեր կյանքի ներկա էտապում ավելի մեծ չափով իրագործել լենինյան ցուցումները մամուլի մասսայականության մասին։ Ռևոլյուցիայի մեծ առաջնորդը բազմիցս տարբեր առիթներով նշել է, որ մեր թերթերի ուժը մասսաների հետ նրանց ունեցած անքակտելի կապի մեջ է, որ մամուլը պետք է ծառայի լայն մասսաներին և այն ստեղծվի նրանց ամենաակտիվ մասնակցությամբ։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ յուրաքանչյուր հինգ ղեկավար և շարունակ գրող գրականագետների կողքին պիտի ունենալ հինգ հարյուր և հազար ոչ գրականագետ աշխատողներ. այդ դեպքում միայն տպագիր օրգանը կարող է լինել կենդանի ու կենսունակ։ Ներկայումս սովետական երկրի հինգ միլիոնից ավելի բանվորներ, կոլտնտեսականներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ ակտիվորեն մասնակցում են թերթերի, ամսագրերի, ռադիոյի ու հեռուստատեսության աշխատանքներին։ Սովետական Հայաստանի մամուլի օրգանների, ռադիոյի և հեռուստատեսության հետ սերտորեն կապված են շուրջ տասը հազար բանվոր և գյուղացի թղթակիցներ, հեղինակներ։ Այս թվերը վկայում են մեր մամուլի և մասսաների օրավուր ամրապնդվող փոխադարձ կապի մասին։ Իսկ կապը մասսաների հետ, կապը կյանքի հետ՝ սովետական մամուլի կենսատու զարկերակն է։

Բանգյուղթղթակցական շարժման աշխուժացումը տալիս է իր հիանալի պտուղները։ Մեծ չափով ավելացել է աշխատավորության նամակների թիվը։ Եթե, օրինակ, մի քանի տարի առաջ ռեսպուբլիկական «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը տարեկան ստանում էին երեքից չորս հազարական նամակ, ապա անցյալ տարի նրանցից յուրաքանչյուրն ստացավ մոտ վեց հազար նամակ։ Այդ նամակներում աշխատավորները բարձրացնում են պետական կարևոր նշանակություն ունեցող հարցեր, առաջարկություններ են անում, բացահայտում մեր աշխատանքի սուր կողմերը. դա արտահայտում է սովետական մարդկանց շահագրգռվածությունն արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ու գիտության հետագա զարգացման նկատմամբ։

Բանգյուղթղթակցական շարժման լայն բազայի վրա, Միութենական մամուլի օրինակով ռեսպուբլիկայի շատ թերթերի և ռադիոյի խմբագրություններում ստեղծվեցին արտահաստիքային բաժիններ, բանգյուղթղթակցային և հեղինակային խորհուրդներ։ Այս միջոցառումը մամուլում հասարակական հիմունքների զարգացման՝ օրվա պահանջներին համապատասխանող նոր ձև էր, նոր էտապը սովետական մամուլի զարգացման մեջ։ Այն ապահովում է բանվոր և գյուղացի թղթակիցների, հեղինակային հասարակայնության անմիջական մասնակցությունը մամուլի աշխատանքներին։

Արդեն մեկ տարի է, ինչ «Կոմունիստ» թերթում գործում է լեռնահանքային և գունավոր մետալուրգիայի արտահաստիքային բաժինը։ Նրա կազմում ընդգրկված են Ալավերդու մի քանի լեռնագործներ՝ երկրաբան Անդրեյ Տերյանը (բաժնի վարիչ), հանքագործ վարպետներ Հրաչիկ Աղաջանյանը և Սարգիս Եղիազարյանը, կոմբինատի կապիտալ շինարարության բաժնի պետ Հրաչիկ Թանդիլյանը։ Այս բաժնի ուժերով կազմակերպվել և լույս են ընծայվել մի քանի նպատակային էջեր, տպագրվել են տասնյակ թղթակցություններ, ինֆորմացիաներ և հոդվածներ։ Կարևորն այն է, որ բաժինն իր հերթին հենվում է բանվորական թղթակիցների լայն ակտիվի վրա, կազմակերպում է ռեյդեր, ընթերցողների հավաքներ, կոնսուլտացիաներ, աշխատավորների նամակների ստուգումներ։

Մամուլում հասարակական հիմունքները զար-

ղացնելու ուղղությամբ զգալի գործ է անում Արթիկի «Լեռնագործ» շրջանային թերթի խմբագրությունը։ Թերթը ստեղծել է պրոպագանդայի և ագիտացիայի արտահաստիքային բաժին, գրական ստուդիա, խմբագրությանը կից՝ բանգյուղթղթակցական խորհուրդ, ինչպես նաև հսկիչ պոստերի լայն ցանց շրջանի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում։ Թերթի շուրջն այժմ համախմբված են երկու հարյուրից ավելի բանվոր և գյուղացի թղթակիցներ։ Ուսանելին ոչ միայն արտահաստիքային բաժնի, խորհրդի, պոստերի և ստուդիայի կազմակերպումն է, այլև ամենից առաջ, բանվոր և գյուղացի թղթակիցների ժուռնալիստական-գրական վարպետությունը բարձրացնելու ուղղությամբ խմբագրության ձեռնարկած միջոցառումները։ Հաջող է գործում խմբագրությանը կից «Բանգյուղթղթակցի կաբինետը», որը հաճախ սեմինարներ, կոնսուլտացիաներ, դասախոսություններ, զրույցներ է կազմակերպում արտահաստիքային ակտիվի համար։ Թղթակիցներին օգնելու նպատակով ամիսը մեկ անգամ լույս է տեսնում «Բանգյուղթղթակից» պատի թերթը։

Ռադիոհաղորդումների և հեռուստատեսության պետական կոմիտեի բոլոր խմբագրություններին կից ստեղծված են հասարակական հիմունքներով գործող խմբագրական խորհուրդներ, որոնցում ընդգրկված են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների աշխատողներ, պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչներ։ Նրանք մեծ օգնություն են ցույց տալիս խմբագրություններին՝ թեմատիկ պլանները մշակելու, հաղորդումներում նոր հեղինակներ ներգրավելու գործում. խմբագրական խորհուրդների անդամները հանդես են գալիս իրենց հոդվածներով։ Արդյունաբերական հաղորդումների խմբագրությանը կից խմբագրական խորհրդի անդամներն առաջարկեցին լուսաբանել հասարակական կոնստրուկտորական բյուրոների կազմակերպման հարցը։ Հոդվածով հանդես եկավ խորհրդի անդամ ինժեներ-մեխանիկ Բ. Շատվորյանը։ Հաղորդումը լայն արձագանք գտավ տեղերում։ Մի շարք գործարաններում կազմակերպվեցին հասարակական կոնստրուկտորական բյուրոներ։ Վերջինների աշխատանքի փորձը ընդհանրացվեց հատկապես այդ նպատակով կազմակերպված ռադիոհաղորդումներում։ Ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կոմիտեն լայն կապեր ունի աշխատավորության հետ։ Ռեսպուբլիկայի 60 խոշոր արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծված են թղթակցական պոստեր, որոնց մեջ ընդգրկված 300 թղթակիցներն օպերատիվ կերպով հաղորդում են կարևոր իրադարձությունների մասին։

Մամուլում հասարակայնության ուժերն ակտիվորեն ներգրավելու որոշակի փորձ են ձեռք բերել նաև «Ավանգարդ», «Հայաստանի ֆիզկուլտուրնիկ», «Երևան», ինչպես և Արտաշատի, Ղափանի, Իջևանի և ուրիշ այլ թերթեր։ Արտահաստիքային բաժինների կազմակերպումը, բանգյուղթղթակցական և հեղինակային խորհուրդների ստեղծումն արդեն տալիս է լավ արդյունք։ Անհամեմատելիորեն հարստացել է մամուլի թեմատիկան, ընդլայնվել նրա ընդգրկման սահմանները։

Դրանք, սակայն, մամուլում հասարակական հիմունքների զարգացման առաջին քայլերն են։ Աշխատանքը հիմնականում գտնվում է իր կազմավորման էտապում։ Որոշ թերթեր, ամսագրերի մեծ մասը դեռևս, ինչպես հարկն է, չեն արձագանքել ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը։ Շատ խմբագրություններ հանդիպում են խոչընդոտների ու դժվարությունների, կան և չլուծված հարցեր։

Մամուլում հասարակական հիմունքների զարգացման հարցը լայնորեն կարելի է իրականացնել, եթե այդ գործին ակտիվ կերպով մասնակցեն պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները։ Չէ որ սկսված շարժումն իր էությամբ մամուլի միջոցով աշխատավորության լայն զանգվածների հետ պարտիայի անքակտելի կապերի է՛լ ավելի ամրապնդումն է նշանակում։ Փորձը ցույց է տալիս, որ միայն խմբագրությունները իրենց ուժերով ի վիճակի չեն ապահովելու աշխատավորության լայն խավերի ներգրավումը մամուլի աշխատանքում։ Ինչպես կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում, այնպես էլ այստեղ գործի հաջողության գրավականը պարտիական ղեկավարությունն է։ Ուստի անհրաժեշտ է, որ պարտիական կոմիտեները կոնկրետ զբաղվեն մամուլում հասարակական հիմունքների արմատավորման գործով, ամենօրյա ղեկավարություն և օգնություն ցույց տան խմբագրություններին, նպատակամղեն նրանց գործունեությունը։ Թերթերի արտահաստիքային աշխատողներին սկզբից ևեթ աջակցություն և պաշտպանություն ցույց տալու նպատակով վատ չէր լինի, եթե պարտիայի շրջանային և քաղաքային կոմիտեները հաստատեն արտահաստիքային բաժինների վարիչներին, բանգյուղթղթակցական և հեղինակային խորհուրդների ղեկավարներին։ Այդ միևնույն ժամանակ կբարձրացնի արտահաստիքային աշխատակիցների պատասխանատվությունը՝ հանձնարարված գործի նկատմամբ։

Ձեռնամուխ լինելով հասարակական հիմունքների արմատավորման գործին, խմբագրությունները կանգնում են այն հարցի առաջ, թե ի՞նչ



բաժիններ ստեղծել։ Չէ ո՞ր կազմակերպական այս առաջին ակտին հետևելու է կենդանի գործը, որի հաջողությունը մեծ մասամբ կախված է լինելու այն բանից, թե որքանով ճիշտ և տեղին է ստեղծել տվյալ բաժինը։

Որոշ շրջանային թերթերի խմբագրություններում տենդենց է նկատվում ընդօրինակել լայն պրոֆիլով հաստիքային բաժիններ ունեցող ռեսպուբլիկական թերթերին։ Եվ ահա այդ շրջանային թերթերը ստեղծում են բավականին լայն պրոֆիլով բաժիններ, որոնց վրա փաստորեն պարտավորություն է դրվում անել իրենց ուժերից վեր գործ՝ կատարել խմբագրության առջև դրված հիմնական խնդիրները։

Ի՞նչ խնդիրներ են դրվում արտահաստիքային բաժինների վրա։ Նրանց աշխատանքի հիմնական նպատակն է ավելի ամրապնդել թերթի կապը ընթերցող մասսաների հետ, մասնակցել և օգնել թեմատիկ պլաններ կազմելուն, առաջ քաշել կյանքից բխող թեմաներ, օգնել խմբագրություններին հոդվածների և նյութերի կազմակերպման ու նախապատրաստման, աշխատավորության նամակների ստուգման, ընթերցողների կոնֆերանսների, մասսայական ռեյդերի կազմակերպման գործում և այլն։ Այստեղից էլ պարզ է, որ արտահաստիքային բաժինների, խորհուրդների աշխատակիցները լրացնող, օժանդակ, բայց և միևնույն ժամանակ շատ կարևոր դեր ունեն խմբագրություններում։

Ուստի լայն պրոֆիլով բաժինը, ասենք, օրինակ՝ արդյունաբերության արտահաստիքային բաժինը, որն ընդգրկում է արդյունաբերության բազմապիսի ճյուղեր՝ և՛ տրանսպորտը, և՛ շինարարությունը, և՛ առաջավոր փորձի ու նոր տեխնիկայի պրոպագանդումը և այլն, արդյունավետ չի լինի թեկուզ այն պարզ պատճառով, որ նրա կազմում ընդգրկված մարդիկ չեն կարող տարբեր մասնագիտություններ ունենալ, ինչպես նաև մեծ չափով ազատ ժամանակ՝ բոլոր այդ հարցերն ուսումնասիրելու և լուսաբանելու համար։ Մի՞թե ավելի արդյունավետ չի լինի երեք-հինգ մարդուց բաղկացած նեղ պրոֆիլով բաժինը, ասենք, օրինակ, շինարարության բաժինը կամ, օրինակ, «Երևան» թերթի համար բնակարանային շինարարության բաժինը։ Չէ՞ որ այդ բաժնի կազմում կարելի է ընդգրկել միայն մասնագետների, որոնք ծանոթ են իրերի վիճակին, գիտեն թերությունների ու դրական կողմերը և միշտ էլ կկարողանան ամբողջ խորությամբ բարձրացնել կարևոր հարցեր։

«Դիլիջան» քաղաքային թերթը նախատեսել է ստեղծել հինգ արտահաստիքային բաժին։ Դրանք են՝ «Արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի», «Ժողովրդական կրթության և առողջապահության», «Պարտիական և կոմերիտական կյանքի», «Անտառի», «Կուլտուրայի, արվեստի և կենցաղի»։ Բացի «Անտառի» բաժնից մյուսները խիստ լայն պրոֆիլ ունեն և անկախ աշխատակիցների ցանկությունից ու կարողություններից, չեն կարող արդարացնել իրենց հետ կապված հույսերը։

Բաժինների պրոֆիլի նեղացումը, անշուշտ, տանում է դեպի դրանց թվի ավելացում։ Ամեն մի խմբագրության գործն է՝ որքան և ինչ բաժիններ ստեղծել։ Այս հարցում պետք է ելնել շրջանի պայմաններից ու անհրաժեշտությունից։ Հարցը ոչ թե բաժինների թվի, այլ դրանց կարևորության ու արդյունավետության մեջ է։ Օրինակ, մեր մի շարք թերթերում կարիք է զգացվում այնպիսի արտահաստիքային բաժինների, ինչպիսիք են՝ տեխնիկական պրոպագանդայի, գյուղատնտեսության առաջավոր փորձի տարածման, առևտրում հասարակական վերահսկողության, հակակրոնական պրոպագանդայի, կանանց շրջանում տարվող աշխատանքի, պարտիական պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր փորձի տարածման, բնակարանային շինարարության, դպրոցական շինարարության և այլն։

Մի շարք խմբագրություններում մեծ դժվարությամբ են ընտրում արտահաստիքային բաժինների և խորհուրդների աշխատակիցներ։ Հաճախ ընտրվում են ոչ թե արդեն ճանաչված բանվոր և գյուղացի թղթակիցների, մամուլի գործը սիրող և հաճախ նրա էջերում հանդես եկող պարտիական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական աշխատողների կազմից, այլ ըստ շրջանային կամ քաղաքային ղեկավար օրգաններում մարդկանց վարած պաշտոնի։ Եթե շրջանային թերթում ստեղծում են պարտիական կամ պրոպագանդայի բաժիններ, ապա դրանց վարիչներ առաջադրում են պարտշրջկոմի համապատասխան բաժինների վարիչներին, գյուղատնտեսության բաժնի վարիչ՝ շրջսովետի գործկոմի գյուղտեսչության պետին, երիտասարդության բաժնի վարիչ՝ ՀԼԿԵՄ շրջկոմի քարտուղարին և այսպես շարունակ։

Այսպես, Թալինի շրջանային «Կոմունիզմի դրոշով» թերթում ստեղծված են հինգ արտահաստիքային բաժիններ։ Պարտիական-պրոպագանդիստական բաժնի կազմում ընդգրկված են ինն ընկերներ. բաժնի վարիչն է պարտշրջկոմի քաղլուս կաբինետի վարիչը, աշխատակիցները, պարտշրջկոմի քարտուղարը, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչը, շրջկոմի հրահանգիչը։ Գյուղատնտեսության բաժնում ընդգրկված են նաև գյուղտեսչության գլխավոր ագրոնոմը (բաժնի վարիչ), գյուղտեսչության պետը, գլխավոր զոոտեխնիկը, գլխավոր անասնաբույժը, զոոտեխնիկը։ Երիտասարդական բաժնի վարիչն է ՀԼԿԵՄ շրջկոմի առաջին քարտու-

պի ականավոր գործիչների՝ Դիմիտրի Բլագոևի, Գեորգի Դիմիտրովի, Վասիլ Կոլարովի գաղափարական բարերար ազդեցության տակ աճեցին ու առնացան ռևոլյուցիոն շարժման այնպիսի վետերաններ, ինչպիսիք էին՝ Տիգրան Իսմիյանը, Ստեփան Շահբազյանը և նրանց մարտական զինակիցներ՝ Արտաշես Ասլանյանը, Գրիգոր Շիշմանյանը, Հարություն Մելքոնյանը և ուրիշներ, որոնք իրենց լուման մուծեցին բանվորական շարժման պատակտիչների, կեղծ ռևոլյուցիոներների, ազգային սահմանափակվածության ներկայացուցիչների դեմ մղած անհաշտ պայքարում, կոփելով հայ և բուլղար աշխատավորության ինտերնացիոնալ միասնությունը։ Հեղինակը ճիշտ է վարվել վերլուծելով ինչպես «Կարմիր լուրեր»-ի խմբագիր Ստեփան Շահբազյանի, այնպես էլ նրա մյուս ընկերների՝ հայ ժողովրդի լավագույն զավակների գործունեությունը, որոնք դաշնակցական տիրապետության դաժան օրերին բուլղարահայ աշխատավորներին ներշնչում էին Հայաստանում սովետական կարգերի մոտալուտ հաղթանակի անսասան հավատը։

Գրքույկի երկրորդ գլխում հեղինակին հաջողվել է տալ «Կարմիր լուրեր» թերթի համարների բովանդակության ճիշտ վերլուծությունը, ռևոլյուցիոն մարքսիզմի դիրքերից ազգայնական պարտիաների գաղափարախոսության դեմ նրա մղած անհաշտ պայքարի կենդանի պատկերը։ Հեղինակը ցույց է տվել, որ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գաղափարների բազմակողմանի պրոպագանդան եղել է թերթի աշխատանքի հիմքը. մերկացնելով արևմտյան դիվանագիտության ամբողջ դիմակախաղը և հակասովետական զրպարտությունը, թերթը հայ աշխատավորներին պարզաբանել է սովետական արտաքին քաղաքականության սկզբունքները։ «Կարմիր լուրեր»-ը բուլղարահայերին բացատրել է համաբուլղարական պրոլետարական շարժման, Բուլղարիայի Կոմպարտիայի պայքարի նշանակությունը և մոբիլիզացրել նրանց՝ ակտիվորեն մասնակցելու այդ պայքարին։

Աշխատության վերջում տրված է օգտագործված գրականության և աղբյուրների ցանկը, որն օգտավետ է սփյուռքահայ կոմունիստական մամուլի ուսումնասիրողների համար։ Գրքույկը ձևավորված է խնամքով, ռևոլյուցիոն առանձին գործիչների հազվագյուտ նկարներով, «Կարմիր լուրեր» թերթի մի քանի ֆոտոկլիշեներով։

Ռ. Խաչատրյանի ուսումնասիրությունը կշահեր, եթե հեղինակն ավելի մեծ ուշադրություն դարձներ բուլղարահայ գաղութի քաղաքացիական պատմության և քաղաքական հոսանքների պայքարի հարցերի վրա, որոնք առնչվում են բուլղարական կոմպարտիայի հայկական սեկցիայի սկզբնական շրջանի գործունեության և «Կարմիր լուրեր»-ի պատմական դերի լուսաբանման հետ։

Պատմության օբյեկտիվ ընթացքով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ բուլղարահայ կոմունիստները հանդիսացել են կոմունիզմի գաղափարների առաջին տարածողները բալկանյան հայ աշխատավորության մեջ։ Նրանց գործունեության բազմակողմանի ուսումնասիրությունը պատմական հետաքրքրություն է ներկայացնում։

Ռ. Խաչատրյանի սույն հաջողված գրքույկը կարևոր ներդրում է այդ հարցերի թե՛ ուսումնասիրման և թե՛ լուծման գործում։

Հեղինակի մտահղացումն արդյունավետ է։ Մնում է ցանկալ, որ նա շարունակի այն մինչև վերջ։

Գ. ԿՈԿԻՆՈՍ

---

# Մեզ գրում են

## ՕԳՆՈՒՄ ԵՆ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտի պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ կոլեկտիվի և ուսանողության շրջանում լայնորեն պրոպագանդվում են ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի նյութերը։ Այդ առթիվ կազմակերպված զեկուցումներից ու ագիտգրույցներից բացի գյուղատնտեսության էկոնոմիկան, քաղաքատնտեսությունն ու ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակներում ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի նյութերի ուսումնասիրությանը նվիրվել է 2 պարապմունք։

Պլենումի որոշումների կենսագործման ուղղությամբ կոլտնտեսություններին օգնելու նպատակով ինստիտուտի պրոֆեսորա-դասախոսական կազմի ուժերով ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում կազմակերպվում են գիտա-արտադրական կոնֆերանսներ։ Հունվար և փետրվար ամիսներին այդպիսի կոնֆերանսներ են տեղի ունեցել Արտաշատի շրջանի Լուսակերտ և Արևշատ, Վեդու շրջանի Ավշար և Այգեվան, Հոկտեմբերյանի շրջանի Այգեշատ, Կալինինոյի, Ախտայի և Իջևանի շրջանների մի շարք կոլտնտեսություններում։ Հաջող անցավ Վեդու շրջանում կազմակերպված գիտա-արտադրական կոնֆերանսը, ուր մի շարք հետաքրքրական դասախոսություններ կարդացվեցին։

Արարատյան դաշտավայրի կոլտնտեսություններում եգիպտացորենից տարեկան երկու, առվույտից ու բամբակից բարձր բերք ստանալու մասին հետաքրքիր հաղորդումներ է արել պրոֆեսոր Ա. Մաթևոսյանը։

Երկրագործության կուլտուրան բարձրացնելու և հողի մշակման առաջավոր մեթոդները արմատավորելու մասին զեկուցում է կարդացել դոցենտ Պ. Հակոբյանը։ Պլենումի որոշումների լույսի տակ դոցենտ Մ. Գևորգյանը զեկուցել է գյուղատնտեսական աշխատանքների ճիշտ կազմակերպման, վարձատրության ու նյութական շահագրգռվածության բարձրացման մասին։ Արարատյան դաշտավայրի պտղաբուծության հարցերին էր նվիրված դոցենտ Հ. Շահինյանի զեկուցումը։

Ինստիտուտի պարտիական կազմակերպությունը ՀԿՊ Հոկտեմբերյանի շրջկոմի հետ միասին շրջանի կոլտնտեսությունների դաշտավարական և տրակտորային բրիգադների բրիգադավարների և օղակավարների համար կազմակերպել է հնգօրյա սեմինար։

Ինստիտուտի պարտիական կազմակերպության ամբողջ գործունեությունն ուղղված է ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների կատարմանը։

Գ. ԴԱՎԹՅԱՆ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿՈՉՄԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐՈՂ ՍՈՎԽՈԶԸ

Նոյեմբերյանի շրջանի «Զեյթուն» սովխոզը մեծ պատմություն չունի. նա կազմակերպվել է ընդամենը 10 տարի առաջ։ Սովխոզի կոլեկտիվի ջանասեր աշխատանքի շնորհիվ այժմ սովխոզը դարձել է խոշոր պտղաբուծական տնտեսություն։ Սովխոզն ունի 800 հեկտարից ավելի պտղատու այգիներ, աճեցվել են ավելի քան 20 տեսակ պտղի տարբեր սորտեր, որոնց մեծ մասը մերձարևադարձային են։

Անցյալ տարի սովխոզը արտադրեց 1800 տոննայից ավելի բարձրորակ դեղձ, ծիրան, խնձոր, նուռ, սալոր, ճապոնական խուրմա, թուզ, նուշ և այլն։ Սովխոզն արդեն հինգ տարի է, ինչ աշխատում է օգուտով։ Միայն անցած տարվա օգուտը կազմել է 3 միլիոն 311 հազար ռուբլի (հին փողով)։ Տարեցտարի իջել է արտադրանքի ինքնարժեքը։

Սովխոզի կոլեկտիվը վերջերս իր ժողովում, ռեսպուբլիկայի սովխոզների մեջ առաջինը պարտավորություն վերցրեց պայքարել կոմունիստա-

գա բարելավման համար։ Նախատեսվում է ընդլայնել դասախոսությունների ու զեկուցումների թեմատիկան, նրանում ընդգրկելով կուլտուրային, սովետական երիտասարդության վարքագծին, ընկերականությանը, սովետական հայրենասիրությանն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմին, աշխատանքային դաստիարակությանը, գիտության ու տեխնիկայի նորություններին վերաբերող հարցեր։

Պարտշրջկոմը հանձնարարել է ՀԼԿԵՄ շրջկոմին՝ հաճախակի կազմակերպել թեմատիկ երեկոներ, երիտասարդական հավաքներ, հարց ու պատասխանի երեկոներ, հանդիպումներ հին բոլշևիկների, կուլտուրայի ու արվեստի գործիչների, ինչպես նաև արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորների հետ։

### ՍՏՈՐԻՆ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՐՑԸ ՇՐՋԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅՈՒՄ

Քննելով ստորին մամուլի աշխատանքները բարելավելու հարցը, ՀԿՊ Հոկտեմբերյանի շրջկոմի բյուրոն նշեց, որ շրջանի բազմատիրաժ և պատի թերթերի խմբկոլները և բանվորական ու գյուղացիական թղթակիցները զգալի աշխատանք են կատարել առաջավոր փորձի պրոպագանդման և վերցրած սոցիալիստական պարտավորությունների կատարման ուղղությամբ։ Բյուրոն միաժամանակ արձանագրեց, որ առանձին պարտկազմակերպություններ դեռևս լուրջ ուշադրություն չեն նվիրում ստորին մամուլին, որի հետևանքով շատ պատի թերթերում զետեղվում են ընդհանուր, ոչ կոնկրետ հոդվածներ, որոնցում չեն շոշափվում աշխատանքի կազմակերպման, կարգապահության բարձրացման հարցերը։ Քիչ է գրվում նաև հասարակական կարգը խախտող մարդկանց մասին։

Ստորին մամուլի գործունեությունը բարելավելու համար պարտիայի շրջկոմը սկզբնական պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց վերանայել խմբկոլների կազմը, նրանցում ընդգրկել արտադրության առաջավորներին, ակտիվիստներին, և հասնել այն բանին, որ ստորին մամուլը բազմակողմանիորեն լուսաբանի կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկությունների ու ձեռնարկությունների առօրյան, կազմակերպի աշխատանքի առաջավոր փորձի պրոպագանդան, սիստեմատիկորեն լուսաբանի վերցրած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը։ Պատի թերթերը օգտագործել նաև աշխատավորության կոմունիստական դաստիարակության և սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների ու պարազիտային կյանք վարող մարդկանց դեմ պայքարելու համար։

Շրջկոմի ագիտացիայի և պրոպագանդայի բաժնին, շրջանային թերթի խմբագրությանը հանձնարարվեց ուժեղացնել ղեկավարությունն ու օգնությունը ստորին մամուլին։




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ., ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս. (ի տ. գլխ. խմբագրի)

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66, 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—03—18, 2—56—92, 2—04—66, 2—02—24

ՎՖ 10339 Պատվեր 831 Տիրաժ 10 000

Ստորագրված է տպագրության 18/III 1961 թ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68 340 նիշ։

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### «ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ» ՆԱՎԹԱՄՈՒՂԸ

*Սկսված է աշխարհում խոշորագույն «բարեկամության» նավթամուղի շինարարությունը, որի ընդհանուր երկարությունը կկազմի մոտ հինգ հազար կիլոմետր։ Այն սկիզբ կառնի ՍՍՌՄ-ի Վոլգա-Ուրալյան նավթային շրջանից, կանցնի Չեխոսլովակիա, Լեհաստան, Հունգարիա, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա։*

*Եվրոպայի ժողովրդական դեմոկրատական երկրները, բացի Ռումինիայից, Սովետական Միությունից ամեն տարի ստանում են հարյուր հազարավոր տոննա նավթ. 1965 թվականին Հունգարիան, ԳԴՌ-ն, Լեհաստանը, Չեխոսլովակիան Սովետական Միությունից կստանան մոտ 15 միլիոն տոննա նավթ։ Երկաթուղային տրանսպորտով այդպիսի քանակությամբ նավթ փոխադրելու համար անհրաժեշտ կլիներ 25 տոննանոց 600 հազար ցիստեռն։ Բացի դրանից անհրաժեշտ կլիներ կառուցել լրացուցիչ երկաթուղագծեր, խոշոր նավթամբարտակներ և այլ լրացուցիչ կառույցներ։ Իսկ նավթամուղի կառուցմամբ 3—3,5 անգամ կիջնեն տեղափոխման ծախսերը։*

### ՄՈՄ ՏՈՐՖԻՑ

*Բելոռուսական ՍՍՌ-ի Գիտությունների ակադեմիայի տորֆի գիտա-հետազոտական ինստիտուտի կոլեկտիվը մշակել է տորֆից մոմ ստանալու տեխնոլոգիան։ Ինստիտուտի նախագծով Մինսկի մոտ կառուցվել է փորձնական գործարան։*

*Տորֆային մոմը թանկարժեք հումք է արդյունաբերության տարբեր ճյուղերի համար։ Այն օգտագործվում է ձայնասկավառակների, տպագրական մոմաթերթերի, ինչպես նաև փայլեցնող տարբեր նյութերի արտադրության մեջ։ Տորֆային մոմը վերջերս մեծ չափով կիրառվում է մետաղաձուլական արդյունաբերության մեջ՝ ձևավոր ճշգրիտ ձուլվածքներ ստանալու համար։*

### ՆՈՐ ՀԱՍՏՈՑ

*Մեքենաշինության և գործիքաշինության արդյունաբերության կարիքների համար Թբիլիսիի գործարանը իրացրել է նոր ճշգրիտ հաստոցների արտադրությունը։ Նոր հաստոցներով կարելի է մշակել մեկից մինչև մի քանի տասնյակ միկրոն ճշտության դետալներ։*

### ՔՍԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՕՐՈՒՄ

*Պլզեն քաղաքում (Չեխոսլովակիա) 20 աշխատանքային օրում հավաքվել է փորձնական հինգհարկանի շենք, որի կառուցման ընթացքում լայնորեն օգտագործվել են պլաստմասսայի և թերթավոր ապակու պանելներ։*

### ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՆՈՐ ԴԵՂԱՆՅՈՒԹԵՐ

*Բուլղարական դեղագործական արդյունաբերությունն այս տարի սկսելու է նոր դեղանյութի՝ «սիլերինիտ»-ի կլինիկական փորձարկումը։ «Սիլերինիտը» ոչ միայն իջեցնում է արյան բարձր ճնշումը, այլև բարեբար ազդեցություն է թողնում կենտրոնական ներվային համակարգության վրա։ Բուլղարական դեղագործները ստեղծել են նաև «ռուտասսերոլ» և «անտիսկլերոզան» նոր դեղանյութերը՝ արտերիոսկլերոզի բուժման համար։*

ԳԻՆԸ՝ 25 ԿՈՊ.

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հ. Հ. ԱԶԻԶԲԵԿՅԱՆ—«Հայաստանի աշխատավորների ավանդը ՍՍՌՄ հիդրոտեխնիկական կառուցումներում *(հետպատերազմյան տարիներ)*»: *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 200 էջ, տիրաժ 10000, գինը 44 կոպ.:*

Ա. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ—*«Տնտեսության պլանաչափ զարգացումը որպես սոցիալիստական երկրների ընդհանուր օրինաչափություն», Հայպետհրատ, 1961 թ., 174 էջ, տիրաժ 2000, գինը 37 կոպ.:*

Ռ. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ—«Արտասահմանի հայ կոմունիստական մամուլի պատմությունից»: *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 150 էջ, տիրաժ 1500, գինը 59 կոպ.:*

*С. МКРТЧЯН, Р. ШИРОЯН—«Они живут в наших сердцах», Հայպետհրատ, 1960 թ., 114 էջ, տիրաժ 2000, գինը 22 կոպ.:*

*Գրքում զետեղված են տասնմեկ ակնարկներ, որտեղ պատմվում է բոլշևիկներ՝ Ե. Մ. Ծամախյանի, Գ. Ա. Գրիգորյանի, Վ. Վ. Ալեքսեևի, Լ. Օ. Մխչյանի և ուրիշների կյանքի ու գործունեության առանձին դրվագները:*

Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ—«Սոցիալիզմի քաղաքատնտեսություն», *Հայպետուսմանկհրատ, 1960 թ., 584 էջ, տիրաժ 5000, գինը 82 կոպ.:*

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ—«Նրա՝ կյանքի ուղին»: *Գրքույկում պատմվում է անվանի հանքափոր Աշոտ Մելքոնյանի մասին, Հայպետհրատ, 1961 թ., 36 էջ, տիրաժ 1000, գինը 2 կոպ.:*

Ռ. Խ. ՓԱՇԻՆՅԱՆ—«Պատմական որոշումից հետո»: *Կիրովականի պարտիական կազմակերպության գաղափարական-քաղաքական աշխատանքի փորձից, Հայպետհրատ, 1961 թ., 84 էջ, տիրաժ 2000, գինը 6 կոպ.:*

Ս. ՕՀԱՆՅԱՆ—«Արևելահայ տնտեսագիտական մտքի պատմությունից *(XIX դարի երկրորդ կես)», Երևանի Պետ. համալս. հրատ., 1960 թ., 178 էջ, տիրաժ 1000, գինը 60 կոպ.:*

Ա. ՊՈՂՈՍՅԱՆ—«Սոցիալ-տնտեսական հարաբերությունները Կարսի մարզում 1878—1920 թթ.», *Հայպետհրատ, 1961 թ., 380 էջ, տիրաժ 3000, գինը 55 կոպ.:*

Ավ. ՏԵՐ-ՊՈՂՈՍՅԱՆ—«Բիոլոգիական մտքի զարգացումը Հայաստանում. հնագույն ժամանակներից մինչև XVIII դարը», *Երևանի Պետ. համալս. հրատ., 1960 թ., 571 էջ, տիրաժ 2000, գինը 2 ռ. 6 կոպ.:*

Ար. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ—«Պրելյուդիաներ. փիլիսոփայական գրականագիտական ուսումնասիրություններ», *Հայպետհրատ, 1960 թ., 645 էջ, տիրաժ 3000, գինը 84 կոպ.:*

Վ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ—«Ջեյրանի հերոսամարտերը», *Հայպետուսմանկհրատ, 1960 թ., 115 էջ, տիրաժ 12 000, գինը 16 կոպ.:*

Թ. Թ. ՎԱՐԴԱՆՅԱՆ—«Հայաստանի տորֆերը և նրանց կիրառումը գյուղատնտեսության մեջ», *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 60 էջ, տիրաժ 1000, գինը 10 կոպ.:*

Ռ. ԼԵՊՊ—«Ատոմներ և մարդիկ», *Հայպետհրատ, 1961 թ., 338 էջ, տիրաժ 3000, գինը 62 կոպ.:*

Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ—«Կոմիտաս: Կյանքը, գործունեությունը, ստեղծագործությունը», *Հայպետհրատ, 1961 թ., 236 էջ, տիրաժ 7000, գինը 74 կոպ.:*